ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԿԳ.

# ՏԱՐՕՆ-ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ ՎԱՆՔԵՐԸ

ԳՐԵՑ
ԴԿՏՐ. Հ. ՀԱՄԱԶԱՍՊ ՈՍԿԵԱՆ
Մխիթ. Ուխտէն

(24 ՊԱՏԿԵՐՈՎ.)



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1953

# DIE KLÖSTER VON TARON-TURUBERAN

DR. P. HAMAZASP OSKIAN
MECHITHARIST



WIEN
MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI
1953

# ՏԱՐՕՆ-ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ ՎԱՆՔԵՐԸ

ԳՐԵՑ

ԴԿՏՐ. Հ. ՀԱՄԱԶԱՍՊ ՈՍԿԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1953

PRINTED IN AUSTRIA

ՀԱՅՐԵՆԱՍԷՐ

ՀԱՅՐԵՆԱՏԵՆՉ

ՏԱՐՕՆ–ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆՑԻՆԵՐՈՒՆ

Հ. Հ. Ո.

## ԱԶԴ

Այս հատորին տիտղոսն ըլլալու էր «Տուրուբերան–Տարօնի վանքերը», զի Տարօն Տուրուբերան նահանգի մէկ գաւառն է։

Սակայն որովհետեւ Տուրուբերանի վանքերէն ոմանց մասին խօսած եմ «Վասպուրական–Վանի վանքերը» գրութեանս մէջ (տպ. Վիեննա 1940, 1942, 1947) լաւագոյն համարեցայ «Տարօն–Տուրուբերանի վանքերը» անունով կնքել զայն։ Անոր տպագրութեան ծախքերն ազնուօրէն ստանձնեց համանուն հայրենակցական Միութիւնը, ուստի եւ հրապարակաւ անկեղծ շնորհակալութիւնս կը յայտնեմ Տարօն–Տուրուբերանի Հայրենակցական Միութեան Կեդրոնական Վարչութեան եւ անոր բոլոր յարգելի Անդամներուն։

ՀԵՂԻՆԱԿԸ

## 1. ԱԹԱՆԱԳԻՆԷԻ ՎԱՆՔԸ

Մուշի հարաւային լեռնաշղթային վրայ (Լումայ), 1898, Բ., էջ 132): Տաճարը՝ քարուկիր, լուսաւորչաշէն, արդ՝ աւերակ (Մասիս, 1903, էջ 424): Հաւանականաբար ա՛յս է Հ. Սարգիսեանի ծանօթ Շատախի Աթանագինեայ կամ Անթանեայ վանքը, որ կը կործանի եւ մարդաթափուր կ՚ըլլայ, սակայն 1849ին Ս. Առաքելոց վանքի միաբան Պօղոս վարդապետը զայն կը վերաշինէ: Հոս է որ հաւանօրէն պահուած ըլլայ Ծիծառնէցոյ Ս. Խաչը (հմմտ. Տեղագրութիւնք, էջ 237, Արեւելք, 1888, Թ. 1271, հմմտ. Ոսկեան Հ. Հ., Վասպուրական-Վանի վանքերը, Գ., Վիեննա 1947, Գ., էջ 895):

Կը խորհիմ՝ թէ Գր. Դարանաղցիին հետեւեալ տողերը Ս. Աթանագինէի վանքին կրնային հայիլ՝ «Եւ վաղվաղակի կատարեցին՝ զկամս սրբոյն, զկէս ոսկերաց Մկրտիչին եւ զկէս Աթանագինէին եդին ի տապանին, որպէս յԻննակնին, ի տեղի դիցն եւ այժմ (բառ կը պակսի) եւ է գերահռչակ

մեծ վանս միաբանից, որ սուրբ Լուսաւորիչն է կարգեալ, որ եւ նա յառաջ է քան զԻննակնին» (Ժամանակագրութիւն, էջ 516):

Սասունցիները ամէնէն սիրած ուխտավայրն ու հաւաքատեղին էր (Ասպարէզ, Ժողովածու, Ֆրէզնօ, 1918, էջ 248—249):

## 2. ԱՂԲԵՐԿԱՅ ԿԱՄ ԱՂԲԻՒՐԻԿԻ ԿԱՄ ՎԱՆԴԻՐ ՎԱՆՔԸ

Տուրուբերանի Խութ գաւառին մէջ:

«Հիմնուած է ձորի մը մէջ, լերան մը կշտին, երեք կողմամբ շրջապատուած է Խաչատաղու բարձրաբերձ լերամբ, խակաջ կամ Հարաւային կողմն կը պարզուի Բրոնաշինու եւ Դուլթայ փոքր գաւառն» (Արեւելք, 1891, Թ. 2269, համմտ. անդ դեռ՝ 1888, Թ. 1271, 1894, Թ. 3176):

Շինուածքն է «բերդանման» (Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 190) եւ տաճարն է «գեղակերտ» (Մասիս, 1903, էջ 424):

Աղբերիկի կամ Վանդիր վանքի[1] եւ

---

[1] «Վանդիրն սուրբ Աղբերիկն է, որ կայ օծեալ խաչն …ն եղբօրէն Յակոբայ, ի գաւառէն Խութայ, անդ է

անոր եկեղեցւոյն նկարագրութիւնը Սաֆրաստեան այսպէս կ'ընէ՝

«Յոյժ աններդաշնակ եւ նախնական կառուցուածք է Աղբերիկի վանքը, ցածր ու մութ, խոնաւ, խորհրդաւոր եւ առաջին մուտքին ահարկու: Բայց ի սպիտակ եւ հայկական ճարտարապետութեան դասական ոճը ներկայացնող գմբեթէն, որ վեհօրէն կը տիրապետէ վանքին բովանդակ շրջափակին վրայ, մենաստանը չունի որեւէ արտաքին տեսք կամ նիւթական դրաւչութիւն: Բուն մատուռը եւ տաճարների չարքերը ունին ճիշդ միեւնոյն մակերեսն, ինչպէս վանականների խուցերն ու ուխտաւորներին վերապահուած 70ի չափ սենեակները, որոնց մեծ մասը այժմ խարխլած եւ անբնակելի դարձած է:

Մատուռի գլխաւոր դուռը կը բա-

---

սուրբ բեւեռն Քրիստոսի, ներկեալ արեամբն Քրիստոսի» Saint-Martin, Mémoires II, էջ 430): Իսկ Սիմ. Լեհացին կը գրէ «Երկրորդ սուրբ Աղբերն ուր կայ չիշոմ պատուական արիւնն Քրիստոսի, որ ի կողէն: Եւ սուրբ Առաքելոյն սորա լերինն, ուր կան բեւեռքն Քրիստոսի, որ բեւեռեցաւ, այլ եւ Գեղարդն եւ այլ մասն» (Ակինեան Հ. Ն., Սիմ. դպրի Լեհացւոյ Ուղեգրութիւն, Վիեննա 1936, էջ 201): — Զորդուանէլի մարմինը «բարձեալ տարան ի Հայրենի տապանատունն իւրեանց, յուխտին որ կոչի Վանոտեր, ի դուռն սուրբ կաթուղիկէին զոր շինեաց... Վիպէն՝ իննախորանեան եւ փոխեն զնա ի հանգիստ... ի Հայոց Թուականին ի ՌԺԴ» (Ալիշան, Հայապատում, էջ 394):

ցուի վանքի քառակուսի գաւիթին վրայ։ Մուտքի շէմք կազմող քարը կարծր որձաքարի կոպտօրէն յղկուած մի քառակուսի է։ Դուռը չինուած է ամուր փայտէ, հաւանաբար երբեմնաւէ· Թէեւ ոչ մի կերպով նման է Մշոյ Ս. Օհաննու վանքի դրան գեղարուեստական գործուածքին ու հնութեան։

Փոքրիկ ու ցածր է դուռը...։ Գմբէթի ապակւոյ նեղ պատուհաններէն դուրս թափանցող լոյսը հազիւ կը լուսաւորէ տաճարների կենդրոնական մթութեան մէջ։ Թեւերն ու մուտքի մասը թաղուած են յաւիտենական մթութեան մէջ...։ Երկու թեւերը կազմուած են երկու շարք կոշտօրէն կոփուած քարէ սիւներով, որոնք խառն ի խուռն կը յառաջանան մինչեւ տաճարների երկու շարքը։ Սիւների շարքերը թերհատաձեւ կը կոթնին հարաւային եւ հիւսիսային պատերին՝ կազմելով կամարակապ ուղիներ դէպի տաճարները։

Մուտքի դրան ճիշդ հակադիր արեւելեան պատին կը կանգնին երկու շարք տաճարներ։ Ներքին շարքը կը բաղկանայ երեք տաճարներէ նուիրուած՝ Ա. Ս. Փրկչին, Բ. Ս. Հոգւոյն եւ Գ. Ս. Աստուածածնին, իսկ արտաքին շարքը բաղկացած եր–

կու սաճարներէ, նուիրուած՝ Ս. Կարապետին եւ Ս. Ստեփաննոսին[2]: Միաձեւութիւն կամ համաչափութիւն գոյութիւն չունի: Մատուռը սալայատակուած է ամէն ձեւ ու չափ ներկայացնող սալերով» (Հանդէս Ամսօրեայ, 1934, էջ 70—71, հմմտ. դեռ՝ Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը, 1923, էջ 359, Արեւելք, 1891, Թ. 2269—70, Բիւզանդիոն, 1904, Թ. 2150):

Աղբիւրիկի վանքն ու եկեղեցիները դարերու ընթացքին տեսած են նորոգութիւն եւ բարձր պարիսպներով շրջապատուած (Բիւզանդիոն, 1907, Թ. 3128, 1904, 2258. Մասիս 1888, Թ. 3916, էջ 77):

Աղբերեկի պատմութիւնը մթապատ է: Անունը իբրեւ թէ առած ըլլայ իր մօտը գտնուած Ս. Թադէի «սրբաջուր եւ սքանչելաբուղխ» աղբիւրէն (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 239 եւ Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը, 1923, էջ 359), կամ Ս. Յակոբ եղբօր (աղբօր) Տեառնէ հոն պահուած օրհնած Ս. Խաչէն (Արեւելք,

---

[2] Հմմտ. Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 238՝ (եւ Մասիս, 1888, Թ. 3915, էջ 77) ունեցած է զոյգ եկեղեցի, մին կառուցուած Բանիկ իշխանէն եւ միւսը (գմբեթաչէն) հիմնուած Ս. Լուսաւորչէն:

1891, էջ 2270, հմմտ. Saint-Martin, Mémoires, II, էջ 430) եւ կամ անոր յորջորջումէն (հմմտ. վերը)։

Աւանդութիւնը Ագրիրիկի վանքի հիմնարկութիւնը կ'ընծայէ Ս. Թադէոսի եւ Գրիգոր Լուսաւորչի, մինչ Թ. դարուն հազիւ թէ շինուած ըլլայ։ Հոն գտնուած են բաւական թուով խաչքարեր եւ խորանի մը տակ երեւան եկած՝ երկու արքեպիսկոպոսի տապաններ (Արեւելք, 1891, Թ. 2269, Բիւզանդիոն, 1904, Թ. 2150, Հանդէս Ամսօրեայ, 1934, էջ 76 եւ Մասիս, 1903, էջ 423)։

Ագրերիկի վանքն[3] այ Հայաստանի հռչակաւոր եւ մատուռներով հարուստ մենաստաններէն է։ Հոն է որ Թադէոս Առաքեալը Բանիկ իշխանին գաւակը կը բուժէ եւ վանքին մէջ ամփոփուած Սուրբ Նշանի մատուռով մը թոնիր ինկած ածխացած (գործելի = ածուխ) տղայ մը կը վերակենդանանայ։ Սոյն Նշանը կ'անուանուի «Գործելյարոյց» կամ Ագրայրիկ եւ կամ Պայէ խաչ (Մասիս, 1888, Թ. 3915, էջ 77, Բիւզանդիոն, 1898, Թ. 508)։ Վերջին հրաշքը մանրամասնօրէն պատմուած

---

[3] 1802ին կը յիշուի՝ Անտոն եպ. Ագրերկայ» (Պէրպէրեան, Պատմ. Հայոց, Կ. Պ. 1871, էջ 44)։

է վանքին կոնդակին մէջ՝ «Պատմութիւն աստուածընկալ սուրբ Նշանին» (Արարատ, 1905, էջ 551—559, Բանբեր Հայաստանի գիտական ինստիտուտի, Գիրք Ա—Բ, էջ 137—140) եւ Յովսէփեան Գար. Կաթ. Յիշատակարանք Ձեռագրաց, Անթիլիաս 1951, Ա, էջ 180—190)։

Վանքի մասունքներն են՝ Ս. Նշան, Ս. Բեւեռ, Գեղարդ եւն (Համա. Ակինեան, Սիմ. դպ. Լեհացւոյ ուղեգրութիւնք, էջ 201, համա. վերը)։ Իսկ «Թեմ սորա են Խութ եւ Համօրէն Մայրակերտ... ի դիւօրէից Մշոյ չունի ինչ թեմ, բայց միայն տուրս սրբութեան ժողովէ ի նոցանէ» (Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 190, Լումայ, 1898, Բ., էջ 132, Մասիս, 1888, Թ. 3915, էջ 78)։

Վերոյիշեալ կոնդակէն ծաղկաքաղ կ՚ամփոփենք՝

«...Քանզի էր գաւառին Խութայ ի գլուխն անապատ մի նախադիր առաքելոյն Թադէոսի ի նմա, կայր այլ եւ խաչ մի ի չափ Վարագայ խաչին, անուանի սուրբ Աղբայրիկ, զոր Յակոբայ Տեառնեղբաւրէն ասեն աւրհնեալ, զոր եւ անունն յայտ

առնէ· *իսկ այլք թէ ի փրկչական խաչին մասն եղեալ ի նմա, զոր մեք զանցեալն ոչ գիտեմք պատմել, բայց զոր տեսաք աչաւք, ոչ կարեմք թաղուցանել...:*

*Քանզի յորժամ եկաք ի գեղաքաղաքս Մանազկերտ, եկն եւ հայր Վանդրին Եղիշէ, ունելով ընդ ինքեան զսուրբ խաչն Աղբարիկ եւ էր տուեալ պարգեւ սորայ խաչին Սմբատ Մամիկոնց չորս կուղպակ եւ երկու անկեանն Աստառանոց մի, որ Զիթահանք կոչի ի ցեստուաց դռան մուտն ի յաջակողմն որմակից սրբոյն Սարգսի եւ միւս եկեղեցին, որ մեր աւրի սուրբ Աստուածածին կոչի, մերձ ի դուռն ցեստուաց:*

*Եւ էր հաւրն Եղիշէի փանահայր մի աւագերեց քաղաքիս, անուն նմա Բարբիկ եւ սանամաւրն Զոյի եւ ունէին ի զաւրաց մերոյ իշխանս, եկն եւ հայրն եւ ի խնդութիւնէն զմիմեամբք խմբեցան եւ էր հաւրն սանն երկու ամաց աւելի կամ պակաս եւ անկանի ի թոնիրն եւ այրի եւ լինի որպէս գործելի: Եւ քաջահաւատ կինն ոչ յայտնեաց ումեք, բայց միայն երիցուն հաւրն տղային եւ նա եւս ծածկեաց զեղեալ գործն, յԱստուծոյ յուսալով, պատեալ եղ յօրօրոցն եւ խնդրեալ զսուրբ խաչն՝ տարեալ ի վերայ տղային...: Այս կարողութեամբն*

Յիսուսի Քրիստոսի... շրջեալ առաջին զօրարոցն եւ ընկէց զխաչն ի գետին եւ սկսաւ լալ շառագունեալ եւ քրտնեալ երեսաւք, որպէս ի բաղանեաց ելեալ։ Յայնժամ հայրն եւ մայրն զճիչ եւ զաղաղակ բարձեալ ի լուր ամենեցուն, թէ մեք զաղայդ խոշտեալ գործելի եղաք, յաւրո-բոյն... տեսին զմեծահրաշ սքանչելիսն, զի մազ մի ի գլխոյն ոչ էր կիզեալ...։

Եկաք եւ մեք Սմբատ Թագաւոր Հայոց եւ Թագուհին իմ Շահանդուխտ... տեսաք նոր սքանչելիք, զի մազ մի ի գլխոյն ոչ էր պակասեալ...։

Եւ մեք Թագաւորքս եւ կաթողիկոսն խորհեցաք զքաղաքս երկրով Խաչին ողր տալ... յետոյ ի միտս եղեալ... ոչ տեսաք պատեհ, այլ բաւանդակ համարեցաք զտուեալ պարգեւքն ի Սմբատայ Մամիկո-նեանցն անսղալ եւ մնայական։

Եւ մեք կաթողիկոս եւ Թագաւորքս տուաք զքաղաքս երկրովն վիճակ Խաչին եւ Վանդրին, եւ սահմանեցաք զԵղիշէ հայրն եպիսկոպոս Վանդրին եւ կարգեցաք ընդ դահագլուխ եպիսկոպոսն... վասն որոյ, որ տեսաք մեծ սքանչելիս եւ վասն որ Վան-դիրն Սենեքերիմայն առաջնատուն էր եւ ունէին զՍասունք իւրեանց վիճակ եւ զԿայթ

գաւառ, վասն այսորիկ ինքնագլուխ արարաք զՎանդրին եպիսկոպոսն, բայց մէռօն ի յԱթոռոյս առնու: Եւ տուաք զՄանազկերտ կարգեալ եպիսկոպոսքն Վանդրին, զի Մանազկերտայ եպիսկոպոսն տէր է ի Լծայ մինչ ի յազատուռն Աւրնայ երկրովն, Բակոց մինչեւ յԱրծկաշու խուռն, ուր Ջուր Թափի. մին այլ Կապուրն Տարապաճուկն Այծաբերդին երկրովն, Պաւլխուխովն, բայց Սագրանոյ եպիսկոպոս կայ, զնա այլ ի Հնազանդութիւն տուաք Վանդրին եւ զԱղերտ եւ զԲագէշ իւր երկրովն մինչեւ ի Բէլու եւ զԼծկան եւ զԱնթկան եւ զմիւս այլ զԿոթ ձորոյն եւ զՈղորմականն եւ զԽոյթ, որ իւրեանց կարգածն էր ցառաջն տուաք խաչին եւ եկեղեցւոյն ձիթագին՝ որ եկեղեցապանն ժողովէ: Եւ զՍասուն որ իւրեանց էր, տուաք Ղազարու պատ ի Թաղառաց գաւառէն, զի Վանդրին ի Սասնոյ հաշիւն է եւ գաւառն մինչեւ ի Կեցիր արաք եւ յԸռմդիրն եւ զՀօրանսք գաւառն մինչեւ յԵզնքարն եւ զԱրծրունեաց գաւառն իւր սինօրովն, զի Հայրն որ եպիսկոպոս օրհնեցաք Արհաւից էր...:

Գրեալ եղեւ գիրս ի Թվիս Հայոց չորս հարիւր ԽԴ»...: Ապա կը յիշատակուին այն հողերն ու կալուածները որոնք Վան-

գրին տրուած են Գրիգոր Լուսաւորիչէն եւ ուրիշներէ (Հմմտ. Յովսէփեան Գար. կաթ. Յիշատակարանք Ձեռագրաց, Ա, էջ 179—188):

Այս կոնդակը վաւերական պատմութիւն չի բովանդակեր եւ գրուած է յետնագոյն շրջաններուն՝ պարզապէս վանքին ճոխութիւնը եւ ստացուածքները աճեցնելու դիտաւորութեամբ (Հմմտ. անդ էջ 188 մինչ 190), Հմմտ. նաեւ Ակինեան Հ. Ն.՝ Մատենագրական Հետազօտութիւններ. Ա. Վիեննա 1922, էջ 224—225):

Աղբերկոյ վանքի կրնան հայիլ Վարդանի սա տողերը՝ «Սա (Ելտկուզն) էառ զԱմուկ ի Խետենկոյ եւ զՍասունք ի Վիգենայ ամենայն վանօրէիւքն» (Պատմ. Հյց., Վենետիկ 1865, էջ 124):

Աղբերիկի վանքը Սասունցիներու ապաստանարանն եղած է եւ անկէ գրոհ տուած ու աւերած են Ալլատտին պէյի գիւղերն ու հողերը: Եւ նա վրէժխնդիր 1741ին վանքը քակել կը հրամայէ եւ անոր մէջ գտնուած գրքերն ու թանկարժէք իրեղէնները կը կողոպտէ, սակայն յետագային հաշտուելով՝ թոյլատու կ՚ըլլայ վանքին վերաշինութեան (Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 190):

Ղուկաս Կաթողիկոսը 1794ին կը գրէ «Թուղթ առ Մշեցիս ի պատասխանի թըղթոյ նոցին յաղագս առաջնորդութեան Անտոն վարդապետին ի վերայ սուրբ Աղբերկայ վանիցն եւ Թիմից նորին...» (Դիւան, Գ., էջ 632)։

Բեմին վրայ գերեզմանաքարի մը վրայ կայ՝ «Գրիգոր եպիսկոպոս Ռ·ՀԾԳ Թուին (?) Հայոց» (Մասիս, 1888, թ. 3916, էջ 76)։

Իսկ խալտիական–ուրարտական բեւեռագիր քարի մը վրայ կայ հայերէն՝ «Իգնատիոս Վ. ՅԾԲ» (Հանդ. Ամս. 1934, էջ 74)։

Նոր շրջաններու վանահայրերէն են՝ Գաբրիէլ Վ. Ճուշտակ, Ղազար Տէր Ղազարեան, Ղ. Մարտիրոսեան, Սիմէոն Վ. «ծաղկեալ ի սպիս», Զաք. Վ. Աւարայեան (Փունջ, 1891, թ. 2274. Արեւելք, 1884, թ. 214. Սրուանձտեանց, Հնոց եւ Նորոց, էջ 184—186. Հանդ. Ամս. 1939, էջ 620)։ Իսկ Մեծ Եղեռնի ատեն կը սպաննուի միաբան Խաչատուր աբեղան (Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը, 1916—1920, էջ 125)։ Ենթարկուած է կողոպուտի (Հմմտ. Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, Ա., էջ 99) եւ կանխաւ՝ «խաֆեր»ներու տուրք տալու

ստիպուած (Սրուանձտեանց, Հնոց եւ Նորոց, էջ 157):

Բոնիկ իշխանը եւ ուրիշներ Աղբերկայ վանքին տուած են առատ նուէր ու սպաս: Հարուստ էր կալուածով եւ թեմով (հմմտ. վերը): Ունեցած է վարժարան (Փունջ, 1891, Թ. 2274, հմմտ. եւ վերը):

### 3. ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՎԱՆՔԸ

Մուշի վանքերէն, գիւղի մը սարալանջին վրայ: Աւերակ (Մասիս, 1903, էջ 424):

### 4. ԱՊԱՀՈՒՆԵԱՑ (ԿԱՄ) Ս. ՆԻԿՈՂԱՅՈՍԻ ՎԱՆՔԸ

«Ապահունիք Մշոյ մէջ վերին Պուլանըխն[4] է կ՚ըսուի եւ կը կարծուի թէ այս Ապահունեաց վանքն ալ Պուլանըխի մէջ ըլլայ: Շինութեան թուականն յայտնի չէ մեզի» (Բիւզանդիոն, 1900, Թ. 1083):

Ծանօթ է ինծի Ապահունիքի մէջ Ս. Նիկողայոս անուն վանք մը՝ «Եւ եղաք ի

---

[4] Պուլանըխի վանքերու մասին՝ այլուր եւս:

սուրբ ուխտն ի վանքն Ապահունեաց ի սուրբն Նիկողայոս...: Գրեցաւ գիրս Հայոց թվականին ՊԺՁ Մարտի ԻԲ» (Արարատ, 1872, էջ 150):

Իսկ Ապահունիք վանքը կը յիշուի սա յիշատակագրութեան մէջ՝ «Զվերջին ստացող Աստուածաշնչիս զԿարապետ վարդապետն եւ զհայրն զՄկրտիչ քահանայն ...եւ զՅակոբ վարդապետն իւր եւ զաշակերտսն զՅովանէս եւ զՅակոբ եւ զՍիմէոն հայրապետն եւ զամենայն միաբանք սուրբ ուխտիս Ապահունիք կոչեցեալ: ԶՍարգիս եւ զԹորոս եւ զՍողոմոն, զՅովհաննէս եւ զՊետրոս եւ զմիւս Յովհաննէս սուրբ քահանայն եւ զԳրիգոր անտեսն յիշեսջիք...» (Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Բ., էջ 296. հմմտ. Էփրիկեան, Բնաշխ. Բառարան., Ա., էջ 234):

## 5. ԱՌԱՔԵԼՈՑ ԿԱՄ ՂԱԶԱՐՈՒ ՎԱՆՔԸ

### ա. Նկարագրութիւն Առաքելոց վանքի

*«Այն հռչակաւոր մենաստան — Առաքելոց վանքը — Մուշէն երկուքուկէս ժամ հեռու՝ մասամբ մը նորա յԱրեւելահարաւ, կը գտնուի Տօրոս լերանց մասնաւոր երկու կատարներու միջեւ գեղեցիկ եւ լաւ տեսարան ունեցող տեղւոյ մը վրայ, կառուցեալ կոփածոյ քարերէ, ունի մի եկեղեցի տաճարով, որոյ վրայ կաթուղիկէն շինուած է ճաշակաւոր եւ ճարտարարուեստ» (Միրախորեան, Ուղեւորութիւն, Ա., էջ 43. հմմտ. Սարգիսեան, Տեղագր., էջ 231 եւ Ինճիճեան, Նոր Հայաս., էջ 188):*

*Առաքելոց վանքը շինուած է Տիրինկատար կամ Ծիրնկատար սարին կանաչազեղ ստորոտը՝ ուր «քաղցրաբոյր օդոյ փչմունք, սեղանէտ տեղիք ուռենեօք շըրջապատեալ ի հարաւային խորշակէ պատսպարեն զվայրն» (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 231. հմմտ. եւ Բիւզանդիոն, 1908, Թ. 3500):*

*Մուշի միւս վանքերու նման Առաքելոց վանքն ալ բազմանուն եղած է (հմմտ. Պայքար, 1924 Յուլ. 1): Ընդհանրապէս կոչուած է՝ Առաքելոց վանք, բայց համա-*

նաեւ ուրիշ վանքերէ զանազանելու համար անուանուած է Մշոյ Ս. Առաքեալք կամ Երկոտասան Առաքելոց վանք: Աւանդութեան համեմատ Գրիգոր Լուսաւորիչ 312ին զայն հիմնելով՝ Երկոտասան առաքեալներէ ոմանց նշխարներով կ'օծէ:

Անուանուած է՝ Թարգմանչաց վանք, որովհետեւ հոս կը ցուցուին քանի մը թարգմանիչներու գերեզմաններն ու հանգստավայրերը (հմմտ. վարը):

Յորջորջուած է Ղազարու, բայց նաեւ ցանցառօրէն՝ Եղիազարու, վանք, վասն զի իբրեւ թէ անոր առաջին առաջնորդը կարգուած ըլլայ Եղիազար: Ժողովուրդը Եղիազարը աղաւաղած փոխած է Ղազար (Արեւելք, 1890, թ. 1954. հմմտ. եւ վարը):

Գտնուած վայրէն ստացած է՝ անունը Արեգնածագ Տիրինկատարի վանք (Արեւելք, 1889, թ. 3957):

Վանքին մերձաւոր Ս. Թադէի մատուռին վրայէն հաւանօրէն Առաքելոց վանքը Թադէի վանք եւս կոչուեր է (Տաշեան, Մայր Ցուց. Հայ. Ձեռ. Մխիթ. Մատ. Վիեննա, էջ 205. հմմտ. Koch, Reise im Pont. Gebirge, էջ 415):

Սակայն զանազան աւանդութիւններ առաքեալներու անունները եւ մասունք-

ները խառնաշփոթեր են։ Կը տրուին ա-
նունները Պետրոսի եւ Պօղոսի, Մարկոսի
եւ Ղուկասի, Անդրէասի եւ դարձեալ լոկ՝
Ղուկասի եւ կը յիշուին անոնց նշխարները
(Բիւզանդիոն, 1900, թ. 3500. Արեւելք,
1899, թ. 3994)։

Գր. Դարանաղցին կը գրէ՝ «Այլ եւ
Առաքելոց վանքն, ուր աջ ձեռն է Անդրէի
եւ այլ մասանց առաքելոյն, զոր Լուսա-
ւորիչն եբեր, որ եւ Ղազարու վանք կոչի»
(Ժամանակագրութիւն, էջ 516)։ Վար-
դան Աշխարհագիր կ'արտայայտուի՝ «Ս.
Առաքեալքն Մշու է, ուր կայ ձախ աջն
Պետրոսի եւ Պօղոսի» (Saint-Martin, Mé-
moires, II, էջ 430, հմմտ. գեր Ինճիճեան,
Ստորագրութիւն, էջ 102—103. Ջենոբ
Գլակ, էջ 14. Կիրակոս Գանձակեցի,
էջ 7. Ուխտանէս, էջ 108 եւ վարը)։

«Մենաստանն Առաքելոց կոչի եւ Գլա-
ձորոյ վանք, վասն խորանդունդ ձորոյն,
որ է յաջմէ մենաստանին, իսկ ստուգու-
թիւն անուանակոչութեանն է ի յիշատա-
կարանի գրոց այսպէս. «Գրեցաւ սուրբ
Աւետարանս ի թուականութեանս Հայոց
ՋՀ. ի գաւառս Տարօնոյ ի վանս Գլաձորոյ,
ի դրունս սուրբ Առաքելոյն յառաջնոր-
դութեան սուրբ ուխտիս Թադէոս եպիս-

կողոսի։ Այլ է ի սմանէ Գլաձոր վանք ի Վայոց ձոր գաւառի յաշխարհին Սիւնեաց» (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 236․ հմմտ․ վարը՝ Ներսէս ի Գլաձորոյ, որ է Ներսէս Մշեցի կամ Տարօնցի)։

Նկարագրենք Առաքելոց վանքը։

«Մեծանիստ է վանս, կը գրէ Սարգիսեան, քան զՄատնավանք, թէպէտ փոքր քան զսուրբ Կարապետ» (Տեղագրութիւնք, էջ 231)։ Եկեղեցին եւ բոլոր շէնքերը սրբատաշ քարաշէն են, բերդանման պարիսպով շրջապատուած եւ երկաթի դռներով ամրացուած (Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 188—189)։

Նեղ դռնէ մը կարելի է մտնել սալայատակուած գաւիթը, որուն վրայ բարձրացած է սիւնազարդ եւ ճաշակաւոր զանգակատունը։ Այժմեան զանգակատունն իր կառուցուածքովը կը ցուցնէ թէ հին գործ չէ։ Անոր վրայ դրոշմուած արձանագրութիւնը արդէն կը հաստատէ՝ թէ այն շինուած է 1791ին «ձեռամբ ձայնեղ գիտին Տէր Օհաննէս վարդապետին»։ Սակայն կարելի չէ ենթադրել թէ Ս․ Ղազարի եկեղեցին յառաջագոյն առանց զանգակատան եղած ըլլայ։ Հաւանօրէն ան կործա-

նած է եւ անոր փոխան նորը շինուած՝ հետեւեալ արձանագրութեամբ օժտուած՝

«Ի ծայր թուոյս քառեակ տասին (40)
Կայան էր ծնեալ ի նոյն ամին.
Բառ յարեւլեան էր մայր սորին (200)
Եւ գհոյքն ամեմ տասն յարեւլեանին
(1000 = 1240 = 1791)
Զարմանագան կրկնապատկին.
Եղեւ շինումն գանգակատան
Եւ իւր գաւթին
Բարր իւցից շորեքկուսին
Որ ձեռամբ ձայնեց դխտին
Տ. Օհաննէս վարդապետին»
(Արարատ, 1909, էջ 983—984):

Գաւիթէն երկու աստիճան ցած իջնալով՝ կարելի է մտնել ժամատունը կամ ժամատունը, որ չորս քառակուսի սիւներու վրայ կանգնած է եւ բաւական ընդարձակ ու կամարակապ է, բայց բարձրութիւն եւ լոյս չունի: Աջակողմեան բարձր սիւնին վրայ գրուած է՝ «Ի թվկ. Հ. ՌԳ. շինեցաւ ժամատունս ձեռամբ տէր Կարապետ արհեպիսկոպոսին յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց» (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 231—232): Դասը ատեանէն յենարաններով բաժնուած է: Երկու դասերու մէջ տեղը կը բացուի սուրբ Աւետարանիչներու

գերեզմանի դուռը, որ երկփեղկեայ է եւ եղենուէ (ոմանց համաձայն՝ ընկոյզէ) շինուած թանկագին հնութիւն է եւ որուն համար կ՚աւանդեն՝ «լինել դուռն Զոր-տուանելոյ Մամիկոնենոյ» (Անդ., էջ 232):

Առաքելոց վանքին «Լուսաւորչաշէն խորանի երկփեղկեան սեւաներկի, գեղաքանդակ ընկուզեայ դուռը ստուգիւ նկատողութեան առարկայ ըլլալու արժանի է: Իւրաքանչիւր փեղկի տարածութիւնն է՝ 1·77 մ· երկայն, 0·77 լայն եւ 0·08 թանձր: Ճակատնոցին մեծութիւնն է՝ 1·30 × 0·37 մ·: Իւրաքանչիւր կշտանոցին մեծութիւնն է՝ 1·25 × 0·23 մ·: Փեղկերու վերի կողմը կը գտնուի սա հակիրճ յիշատակագիրը՝ Ի· Թ· Հ· ՇՁԳ (1134) Ես Տէր Թորոս եւ Գրիգոր եւ Ղուկաս գծ·»:

Ճակատնոցի առաջին պատկերն է աղաւնի մը· երկրորդ՝ վահանաւոր լախտաւոր ձիաւոր մը, երրորդը՝ նորէն ձիաւոր մը, որ տէգով զարկեր ծակեր է չորրորդ պատկերը՝ վիշապ մը, որ զինքն ու ձին պատած է· հինգերորդը՝ փողահար մըն է հալաւով, գտակով եւ սանտալներով· վեցերորդն ու եօթներորդը՝ դարձեալ ձիաւոր, իսկ ութերորդը՝ այրադէմ հաւարիք:

Աջ կչտանոցը կը ներկայացնէ (ա.) կնադէմ թռչուն մը. (բ) խոշոր կենդանի մը սուր ու թեկ կտուցով, (գ.) փիղ մը, (դ.) կենդանի մը հիւսկէն եղջիւրով եւ ձիագլխիկ տատունով, (ե.) ցլանման կենդանի մը ուղղաձիգ կտուցով, (զ.) գոմէշ մը, (է.) կապիկ մը, որուն գլխուն եռաձիւղ թագ մը կայ:

Ձախ կչտանոցին վրայ կան այծեամ մը, էշ մը, վագր մը, խնձ մը. ձի մը. աղուէս մը. շնագայլ մը եւ կեռակտուց կենդանի մը (Արարատ, 1909, էջ 983, Հմմտ. նաեւ Արեւելք, 1887, Թ. 1113, 1890, Թ. 1957. 1899, Թ. 3994. Մուհանդակ, 1901, Թ. 693. Արաքս, 1890, Ա., էջ 27, Թէոդիկ. Ամէնուն Տարեցոյցը, 1909, էջ 237, 1921, էջ 193, ուր կ'րսուի սխալմամբ թէ այն գաւաթ մեծ եղեռնին Գերմանիա փոխադրուած է. Հմմտ. կարեւոր գրութիւններ՝ Գար. Կաթ. Յովսեփեանէ ի «Տարօն», Տարեգիրք, Հալէպ. 1949, էջ 121—132. Ձուարթնոց, Տարեգիրք, 1937, էջ 148, Փարիզ եւ Արմ. Սաքըզեանէ, Pages d'Art Arménien, Paris 1940, էջ 51—58):

Գարեգին Կաթ. Յովսէփեան կը գրէ՝ «Այս արձանագրութենէն (հմմտ. քիչ մը վերը) պատերով պէտք է կարծել թէ Տէր

թորոս, Գրիգոր եւ Ղուկաս երեքը միասին գծագրել կամ քանդակել են դուռը. «Տէր» տիտղոսը ԺԲ. դարում միայն եպիսկոպոս նշանակութեամբ կարելի է հասկնալ: Եպիսկոպոս արուեստագէտի գոյութիւնը հազուագիւտ չէ հնում...: Արձանագրութիւնն այլ կերպ հասկանալ, այսինքն միայն Ղուկասին քանդակագործ համարել կարելի չէ, որովհետեւ «ես» դերանունը կապուած է «գծ.» (գծեցաք, գծագրեցաք) բայի եւ երեք անուններին հետ իբրեւ ամբողջական մի նախադասութիւն, թէեւ կանոնաւորը յոգնակի «մեք» պիտի լինէր:

Դրան ծագման ժամանակն (Զարաուանէյլի ատեն) ու արուեստագէտները մեզ յայտնի լինելով. աշխատենք հնագիտական–գեղարուեստական ծագումն ու արժէքը պարզել: Մեր նկարագրութիւնից արդեն տեսանք, որ դռնակների միջին մակերեւոյթի երկրաչափական քանդակները արաբական ոճի ազդեցութիւն են կրում. աւելի դժուար է աջ ու ձախ կողերի թեւաւոր կենդանիների ծագումն ու նշանակութիւնը բացատրել: Նրանց ծագումը արաբական չէ, այլ սասանեան. թէեւ թռչունի մարմնով եւ աղջկայ

թաղաղարդ գլխով մասը կրկնուում է եւ արաբական–սելջուկեան արուեստների մէջ...» (Տարօն, Տարեգիրք, 1949, Հալէպ, էջ 129):

Ժամատունը կամ փոքր եկեղեցին Ս. Գրիգորի նուիրուած է եւ աւանդութեան համեմատ՝ Լուսաւորչաշէն: Իսկ երկրորդ եկեղեցին կամ մայր տաճարը՝ մեծ է եւ գմբեթաւոր: Տանիքը քարով գոցուած: Այս քարերուն վրայ կան գրութիւններ, որոնք կարդացուած չեն: Տաճարը տասնու–երկու խորան ունի: Աւագ խորանը ԺԲ. առաքելոց ընծայուած է: Կ՚ըսուի թէ վէ–մին տակը Պետրոս Առաքեալի նշխարնե–րէն դրուած ըլլան: Այս տաճարին մէջ կը ցուցուին միւս առաքեալներու, յատկա–պէս Մարկոսի եւ Ղուկասի մասունքները, Յակոբ Մծբնացիի գաղաթը եւ ուրիշ շատ մը երանելիներու նշխարները (Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 189, Արեւելք, 1890, թ. 1957 եւ Բիւզանդիոն, 1908, թ. 3500): Եկեղեցւոյն աջ ու ձախ կողմեր կան մա–տուռներ՝ նուիրուած Ս. Ստեփանոսի եւ Ս. Գէորգի: Վերջինին մէջ իբրեւ թէ ամ–փոփուած ըլլայ Ճորաավէլ թաղաւորի ա–ճիւնը (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 233):

Վանքին հարաւային դռնէն դուրս ելլելով՝ կը մտնենք Թարգմանիչներու գերեզմանատունը, ուր կան՝ «Խաչաթոռ ասացեալքն... չարեալ կարգաւ... եւ են գոքա մեծամեծ խաչաքարք, կանգուն, ագուցեալք ի վերայ ստուար վիմի, իբրեւ բազմեալք ի վերայ աթոռոյ. բազմաքանդակ են խաչաքարքդ՝ ունելով իւրաքանչիւր արձանագիրս յանուանէ եւ կոչեն զնոսա յանուն Թարգմանչացն, յորոց ծանօթ մեզ Դաւիթ Անյաղթն է, որ եւ բազում ամօք յետոյ կանգնեալ է ըստ ցուցանելոյ թուականին» (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 232):

Ահա արձանագրութիւնները՝

1. «Ի թուին Հայոց ԾՂԳ կանգնեցաւ խաչս ի Քրիստոս, ի բարեխօսութիւն Ստեփան Ծոնկան ննջեցելոյ ի Քրիստոս, յիշել աղաչեմք»:

2. «Ի թուին Հայոց ԾՂԳ կանգնեցաւ խաչս ի բարեխօսութիւն Տեառն Դաւթի անյաղթ փիլիսոփայի, յիշեցէք ի Քրիստոս, զիս զմեղուցեալ Գէորգ Ծոնակեցի, յիշեցէք»:

3. «Պօղոս վարդապետ հանգուցեալ ի Քրիստոս Յիսուս»:

4. «Տէր Ղազարու եւ տէր Ստեփանոսի
ի թվ. ՇՀԴ կանգնեցաւ խաչս եւ նորոգե-
ցաւ սուրբ Առաքեալքս: Աստուած ողորմի
աշխատողաց սորա»:

5. «Ի թուին Հայոց ՌԺԱ Թումայ վար-
դապետ հանգուցեալ ի Քրիստոս Յիսուս,
ի Տէր մեր»:

6. «(Ի) թուականութեան Հայոց ՇՂ
կանգնեցաւ»:

7. «Այս է տապանս Պետրոսի քահա-
նայի եւ Կոստանդի(է), յիշեսջիք ի Քրիս-
տոս աղաչեմ զգծողս (եւ զգործողս) ...ի
սու... ինկարի ժ... կա...»:

8. «Թուին ՈԼԱ, ես Խաչիկ, որ զխաչս
կանգնեցի ի փրկութիւն հոգւոյ իմոյ եւ
ծնողաց իմոց, յիշեսջիք ի Քրիստոս, ա-
ղաչեմ»:

9. «Եւ պատուական Պետրոս քահա-
նայ, որ կանգնեաց զխաչս զայս ի բարե-
խօսութիւն... ՇՀԲ. զՅեսու գծողս» (Սար-
գսեան, Տեղագրութիւնք, էջ 232—233.
Խաչատուրեան Գ. եպ., Տարօնաշունչ,
Պուէնոս-Այրէս, 1945, էջ 174—195. Արեւ-
ելք, 1887, Թ. 1114, ուր գիտողութիւն
կ՚ընէ թէ Մ. Խորենացիի խաչքարը կը
պակսի: Կրնայ ըլլալ որ Քերթողահօր

նշխարներու հետ Եփրատ նետուած ըլլայ (Հմմտ. անդ, դեռ 1890, թ. 1927)։

Թարգմանչաց գերեզմաններու հիւսիսային կողմը դրուած են Սահակ ու Համազասպ Արծրունիներու շիրիմները (Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 189)։

Մխարաններու սենեակները սեւ եւ կլորակ քարերով շինուած են (Սուրհանդակ, 1901, թ. 689)։ Այս սենեակներէն եւ յարակից շէնքերէն բաւական թիւով յատկացուած են վարժարանի, որբանոցի եւ արհեստանոցի (Մասիս, 1892, թ. 12—57· Բիւզանդիոն, 1901, թ. 1449, 1904, թ. 2258, 1899, թ. 687· Արեւելք, 1900, թ. 4379· Սուրհանդակ, 1901, թ. 693· Հմմտ. նաեւ Առաքելոց վանքի կռիւը, պատմեց Զօր. Անդրանիկ, Պոսթըն, 1924, էջ 15—17 եւ Պայքար, 1924· Յուլիս 1)։ Մխարաններու եւ ուրիշներու ջուր հայթայթած են մշտահոս չորս աղբիւրներ, որոնք մենաստանին դուրսն ու ներսը կը գտնուին (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 233)։ Մենաստանէն քառորդ մը հեռու բարձրացած է մեծ մատուռ մը «վայելչաձեւ սադաշէն, հանդերձ կաթողիկէիւ, նուիրեալ յանուն Աստուածածնի» (անդ, էջ 233)։

## բ. Առաքելոց հիմնարկութիւններ վանքի եւ անոր առաջնորդներն ու միաբանները

*Բերանացի եւ գրաւոր աւանդութիւնները Ս. Ղազարի վանքի հիմնադիրը՝ Գրիգոր Լուսաւորիչ եւ անոր առաջին առաջնորդը՝ Զենոբ Գլակի եղբայրը Եղիազար կամ Ղազար եպիսկոպոսը կը ճանչնան եւ այնպէս կը կարծուէր թէ Ղազարու կամ Առաքելոց վանքը նոյն ըլլայ Զենոբի յիշատակած «Առաքելարանք»ի հետ (Զենոբ Գլակ, Պատմ. Տարօնոյ, էջ* 16. *Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ* 102—103. *Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ* 235 *եւ Չամչեան, Պատմ. Հայոց, Ա., էջ* 412)։ *Գր. Խալաթեանց Ղազարու վանքի հիմնարկութիւնը «Գ. դարից բաւական յետոյ» պէտք է դնել կ՚ըսէ ճշդօրէն (Զենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն, Վիեննա* 1893, *էջ* 70—73)։ *Սակայն չէ կարելի ստուգապէս ըսել՝ թէ ո՛ր դարուն եւ անոր ո՛ր տարւոյն։*

*«Արեւելք»ի մէջ Եղիազարի յաջորդները կը նշանակուին Մովսէս Խորենացի* (461), *Մամբրէ (Վերծանող,* 463), *Դաւիթ փիլիսոփայ* (465), *Ստեփանոս Ասողիկ եւ Թումայ* (1899, *էջ* 3994), *որով այդ*

ժամանակներուն Ղազարու վանքի գոյութիւնը կ'ընդունուի: Այսօր երբեք կարելի չէ մոռնալ՝ թէ վերյիշեալները նշանակուած ժամանակներուն ապրած եւ այն վանքին առաջնորդութիւնը վարած ըլլան:

Յայսմաւուրքի մէջ Ղազարու վանքին գոյութիւնը Վարդանանց շրջանին կը յիշատակուի՝ «Եւ նա ինքն սուրբն Տուշան յուրացութեան ասն իւրոյ ջանաց զսուրբ խաչն Նունեայ Վրաց առաջնորդի՝ յղել ի բուն գաւառն իւր ի Տարօն: Եւ եկեալ առ նա աբեղայ մի Անդրէաս անուն ի Ղազարու վանացն, որ է սուրբ Առաքեալքն Մշոյ եւ սուրբ Տուշան օգնականութեամբ այգերն իւրոյ Զոջկայ... նա զսուրբ խաչն յԱնդրէաս աբեղայն տանել ի սուրբ Առաքեալքն ի Ղազարու վանսն...: Եւ էր Անդրէասն այն յաշակերտաց սրբոյն Սահակայ պապուն Տուշանայ» (Սոփերք, Թ., էջ 59. Հմմտ. Զամչեան, Պատմ. Հայոց,, Բ., էջ 87 եւ Յովսէփեան, Յիշատ. Ձեռ. Ա., էջ 11):

Բայց դառնանք Լուսաւորչին: Մեծ հայրապետը ոչ թէ միայն Ղազարու վանքը կը հիմնէ, այլ եւ անոր բարգաւաճումին եւ շարունակութեանը հետամուտ է: Մեր ձեռքը հասած է՝ «Սահմանաց գիր» մը,



Առաքելոց վանքի դուռը (Երեւանի Պետ. Թանգարան)։

որով Ս. Գրիգոր Առաքելոց հողեր կը կապէ։ Այս «Սահմանագիր»ը իր ոճէն ու բովանդակութենէն դատելով յետնագարեան է եւ անոր անուանը կնքուած՝ վանքին հողերն ապահովելու համար։ Իր բովանդակութեամբը կը յիշեցնէ Զենոբի Տարօնոյ պատմութեան (տպ. Վենետիկ 1889) 37—38 էջերը, իսկ անոր Զորտուանէյեան յաւելուածին՝ «գրեալ հելլէն եւ յոյն գրով» (հմմ. վարը) կը յիշեցնէ նոյն հեղինակին «զայս գրեցին ասորի եւ հելլենացի եւ յոյն գրով» (անդ, էջ 31, ծն. 1)։

Սակայն հետաքրքրական է սահմանագրին ընթերցումը, վասն զի Առաքելոց վանքի հողերու պատկերը կը ներկայացնէ։

«Ես Գրիգորիոս պաշտօնեայ որդի Անակա(յ) յազգէ Արշակունեաց, յետ բազում չարչարանաց եւ վտանգից, զոր կրեցի վասն անուան Քրիստոսի։ Խնամօք եւ տեսչութեամբ, կոչմամբ ամենատուր Հոգւոյն կայցի յաթոռ եպիսկոպոսութեան տանս Թորգոմա(յ) եւ Ասքանազեան ազինս։ ...Իսկ զկնի դառնալոյն մեր յաշխարհս Հայոց ի ժամ բաժանման պատվեալ եղաք ի նոցանէ վասն մեծամեծ եւ անթիւ պարգեւաց։ Զոր ամենայնի կատարեալ հաւատով եւ ջերմեռանդ սի-

բով խնդրեցաք մեք ի նոցանէ կապ սիրոյ եւ հաստատութեան դաշանց, զոր եդաք ի նշխարաց սուրբ եւ գլխաւոր առաքելոցն Պետրոսի եւ Պաւղոսի: Եւ նոցա շարժեալ ի սիրոյ, մանաւանդ թէ ի վերին խնամոցն տուին զահիկ բազուկն Պետրոսի եւ Պաւղոսի, եւ զաջ ձեռն առաքելոյն Անդրէի հանդերձ այլ բազում նշխարհաւք պարգեւ Հայաստանեայց, զանձ անկողոպտելի եւ պատճառ փրկութեան ազգի մարդկան: Մեք ընգալեալ մեծաւ ուրախութեամբ բերաք յաշխարհս Հայաստանեայց, եկեալք ի գաւառս Տարաւնոյ, ի տեղւոջն, յորում հանգուցեալ էր նշխարք սրբոյ Կարապետին եւ Յովհաննու Մկրտչին, ժողովեալ զամենայն եպիսկոպոսունս եւ զվարդապետս եւ զբոլոր դասս պաշտաւնէից, բազում պաղատանաւք խնդրեցաք ի Քրիստոսէ յայտնել տեղի արժանաւոր հանգստեան նշխարաց սրբոց առաքելոցն ի Հայաստան աշխարհիս: Զոր լուաւ Աստուած... եւ յայտնեաց ի ձեռն հրեշտակի իւրոյ առաքելով յերկնից զտեղի արժանաւոր առ ստորոտով լերինն Տաւրոսի յարեւելից կողմանէ ի տեղւոջն որ կոչի Արեգակնածաղ. ոչ ի ներքնադուրն եւ ոչ ի վերնադուրն, այլ ի միջնադուրն, ուր բե-

բեալ ամփոփեցին զնշխարս սրբոցն առաքելոցն, զոր հիմնարկեցաք ի վերայ մեծ եւ երկնանման խորան եկեղեցի, յաւրհնեալ զտեղի բնակութեան մաքուր միանձանց եւ աստուածահաճոյ ճգնաւորաց, առաջնորդ կարգեալ նոցա զոմն ի հանճարեղ եւ մաքուր կրաւնաւորաց Եղիազար անուն, ազգաւ ասորական, բայց հաւատով ճշմարիտ քրիստոնեայ, յաստիճան քահանայութեան կարգել մերով ձեռնադրութեամբ: Յորում ժամանակի աստուածակէր եւ բարեպաշտ արքայս մեր Տրդատ վարթամացոյց զսուրբ ուխտս պայծառ սպասուք եւ բազում չինանիա գեղերաւք յամենայն գաւառս իշխանութեան իւրոյ եւ հաստատեաց սահման վանից ի Դ. գիհաց յարեւելից կողմանէն: Աւգտոյ հողվայրքն գոյ ձորովն յԵրիցգոմայն աղբիւրն եւ երանէ քաղաքագիւղովն եւ մայրաբերանովն գոյ ի միջին ճանապարհն, որ երթայ ի... Գաւթայ եւ Գողաց աղբիւրն, երանէ ի Մոկաց խաչն ի հարաւոյ կողմանէ անցանէ յետե. Մկնաբերդոյ, յանդիման այրին գոյ ի Մոկաց ձորոյն ճանապարհն վերեւ. Ջրաանն կարէ զնշանաքարն եւ անցանէ զխմոց Սաթոսեանց, որ զնա(ր) ի Ջրհորոյն իջանէ

ճանապարհովն ի Գավիլանք ու անցանէ ի Չկնախուց եւ ելանէ ի Ջրաող եւ երթա(յ) ներքեւ Վանամարգա դիմաց Ըռապատուն զոր կարէ Կաքվուց աղբիւրաձորն ընդ Կախմխաւան ի վայր մինչ ի մեծ ձորն եւ երթա(յ) ձորովն ներքեւ Քաւշմեռին ի մեծ ճանապարհն, որ գնա ի բերդն, դառնա ճանապարհին հատովն երթա(յ) ի Զոկերն անցանէ յետեւ եւ իջանէ ի Հորձոր յառուն, ելանէ յԱնջրդեայ խաղն գնա(յ) սարովն ծծմակին գլխովն ի Կրճելանց խաղն Զախուց ճանապարհաւն եւ Հովասվորուցն խաղովն իջանէ Կարմիր փլովն ի Ջրաղաց ...նէ յեղր դաշտակին ի Խալն եւ երթա(յ) ճանապարհաւն ի Հողվոյրքն: Այս է ստուգաւթեամբ սահման վանացն, որ էր յառաջ մեծ գղեկին Տիրինկատար կոչեցեալ. զի էր նա տեղի Անահիտ պատկերի, զոր մեք զօրութեամբն Քրիստոսի խորտակեցաք եւ ավաք զբերդն Տիրինկատարի իւր քաղաքովն եւ ամենայն սահմանաւքն ընձա սուրբ առաքելոցն եւ զբեկ կնքեցաք հայրապետական մեծ դրաւսրական մատանեաւ, զի անխախտելի լիցի մինչեւ ի կատարած աշխարհի: Արդ յետ անցման որ տիրեն այսմ աշխարհիս, թագաւորք կամ իշխանք ի մերոց կամ յա-

տարաց մի իշխեսցեն հանել զդա ի սուրբ ուխտէն յափշտակելով կամ խաբելով կամ զինչ եւ իցէ պատճառանաւք եւ եթէ ոք յանդգնեսցի զայս դարձել անէծս առցէ ընդ Կայենի եւ ընդ այլ չարագործացն եւ յամենայն լեզվէ նալաթ լիցի: — Ես Զոր-գուանէլ Մամիկոնեան որդի Տաճատա(յ) մեծի իշխան Տարաւնոյ եւ ամենայն աշխարհիս Հայոց տեսի զայս գիր սահմանաց գրեալ հեյլէն եւ յայն գրով ի Լուսաւորչէն մերմէ սրբոյն Գրիգորէ Պարթեւէ եւ թարգմանեցի ի հայ գիրս եւ հաստատեցի, զի ժառանգական հայրենիս լիցի սուրբ Առաքելոյն եւ յինէն յաւելեալ ի հայրենիս նորա զիմ ծննդեան գեղն զՔերդակն կայսրայն եւ իւր ամենայն սահմանովն այգեստանաւքն եւ բուրաստանաւքն:

Ի Թվ. Հայոց ՇԻԸ եւ գեղկելի գրի: յիշէ տէր Թադէոս, Աստուած ողորմի ինձ եւ նորա (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 234—235):

Զորաւանէլ Մամիկոնեանի անունը Գրիգորի սահմանագրին մէջ չէ՛ միայն՝ որ կը յիշատակուի: Առաքելոց վանքին համբաւաւոր ճառընտիրին մէջ կը գտնուի անոր մէկ ընդարձակ հրամանագիրը, որով Քերդակ իր սահմանագծերով այն վանքին

կը կատակուի: Այսպէս՝ այս երկու գրութիւններն իրարու հետ յարաբերութեան մէջ կը մտնեն: Զորտուանէլի հրամանագիրը կրնայ իր էական կէտերովը հաստատուած ըլլալ: Ինչպէս ուրիշ իշխանազուններ, նաեւ անիկա բարձրագոյն նպատակի համար հօրինական ժառանգութենէն կրնար Աստուծոյ նուիրել: Գուցէ Գրիգորեան սահմանագրին վերջի մասը Զորտուանէլեան յաւելուած ըլլայ՝ նուիրատուութեան պահպանութիւնն աւելի խստացնելու համար եւ կամ օտար ձեռքէ ներմուծուած՝ Գրիգորեան սահմանագրին կեղծիքը բարեքելու դիտումով:

Ահա Զորտուանէլ Մամիկոնեանի կտակը կամ հրամանագիրը՝

«Այս մեր բարձր հրամանաց է գիր եւ մեծի տէրութեան իշխանի Տարաւնոյ եւ ամենայն Հայոց Զորտուանէլի որդւոյ Տաճատայ քաջի Մամիկոնոյ... զմտաւ ածի զաւր մահուան իմոյ եւ զյետին եւս իմ յաշխարհէս գնացի ի սուրբ ուխտն Առաքելոցն Ղազարու վանաց առ ծերունի եւ մեծ հռետորն Հայոց Պաւղոս, խնդրեցի ինձ գերեզման ի դուռն սուրբ ուխտին... եւ (նա) շնորհեաց ինձ զհայցուածս իմ... վասն որոյ եւ ես Զորտուանէլ զուարթ մտաւք...

նաւ զաս... պատկերաս զՀայրենի... Ջաղացովն եւ բուրաստանօք եւ այգեստանօք այս սինոտովս արեւելեանն ընդ Մզուն Սպխտքարերն եւ իջանէ ի Տանձի-ձորն կարմիր փոսովն ի վայր մինչ ի յԱստոնն եւ երթա յԱստոնն, ուր խաչն է Դուլթին եւ անտի ի Սեղնքարն եւ անտի յՈսկեծամին Կունտխաչն եւ երթա ի Սնձնին վերեւ Նորշինի գերեզմանոցն եւ յարեւ-մտեան ձորն Առուոյ եւ հարաւային Խաղն-գոմ դրին դաշտն: Մնացական հայրենիս՝ սուրբ Առաքելոցն Ղազարու վանիցն ի յի-շատակ ինձ եւ ծնողաց իմոց Տաճատա Մամիկոնոյ, եւ մաւրն իմոյ Զարմանդխտոյ եւ նախնեացն իմոց քաջարանցն Վեսենա եւ Պեհերա, որք յառաջ քան զմեզ տիրէին այսմ աշխարհիս, քանզի այս Բերդակ գեղս տեղիք են զաւարճանալոյ բուսաւք ծառոց եւ մրգաւք անուշիւք՝ նախնեաց իմոց իշ-խանաց Մամիկոնէից եւ մայրն իմ Զար-մանդուխտ ի նոյն գեղի էր երկնել զիս յաշխարհ եւ էր տեղիք ծննդեան իմոյ: Թէպէտ եւ բազում տեղեաց ունէաք իշ-խանութիւն. այլ սեպհական զայս համա-րեցաք զտեղի ծննդեան իմոյ տալ գին մե-ղաց իմոց եւ հող փոխանակ հողոյ ծածկել զհողացեալ մարմինս իմ, զի որով ծնա

ի յոյս գեղ Բերդակ մարմնով մահկանացու, դարձեալ լիցի սոյ ի պատճառ վերստին ծննդեան իմոյ ի կեանս անմահականս: Վասն այնր աղաչականեցի զսայ ընդ իմ լինել ծառայ կենդանի եւ սատարիչ սուրբ անդեացն մինչեւ յաւիտեան՝ սակս թաւչակի մերձաւորաց, զսոյ եդի ինձ վարչամակ սեղանոյ ընծել սոսկա զգագիր թարախ մեղաց իմոց...: Նոյնպէս եւ յարգար սաացուածոց յուծո վեցից, որ են եզինս երկաստասան եւ երիս կենսագրաստս եւ մաքիս ԵԾ եւ Ծ ի նոյն հանդէսատրան որբոց Առաքելոյն ի սպաս պիտոյից հիւրաստանն»: Այս կը խնդրուի եղած նուիրատուութիւնները վանքին չհասցնել: Անստատոյներուն անէծքն ու դժբախտութեան սպառնալիք կ'ըլլայ (համմտ. ամբողջութեամբ՝ Սարգիսեան Հ. Բ., Մայր Ցուց., Բ., էջ 473—476. Ալիշան, Հայապատում, Բ., էջ 365—369 եւ Յովսէփեան, Յիշատ. Ձեռ. Ա., էջ 289—292)[5]:

Զորաւանէջեան շրջանին Առաքելոց վանքին մէջ ապրած է Պօղոս Տարօնեցին,

---

[5] Մեծ ձեռագրին մէջ կան գեւ՝ «Ի Թուին ՇԾԳ. ձեռատանէլ Մամիկոնեան, որդի Տաճատայ Մամիկոնէի, իշխան գաւառին Տարօնոյ բազում աշխատութեամբ եւ զաւարս բազումս պարապեալ յաջողութեամբ Աստուծոյ ի գլուխ եհան» (Արեւելք, 1887, Թ. 1114):



Լուսանցազարդ Առաքելոց վանքի Տօնականէն, գրուած 1204ին
(Երեւանի Պետ. Մատենադարան Թիւ 78)

որ գրուեր կրօնական վէճի կը բռնուի Թէոփիստէ յոյն իմաստասէրին հետ եւ շատ բուռն եւ արհամարհոտ ոճով անոր գրութեան կը պատասխանէ[6] (Զամչեան, Պատմ. Հայոց, Գ., էջ 21): Զորաւանէյի եւ Պօղոսի[7] անուններուն ու խնամքներով Առաքելոց վանքը մեծ համբաւ կ'ունենայ եւ կը բարգաւաճի (հմմտ. վերը՝ Առաքելոց վանքի դուռը եւ դայն քանդակել տուող անձերը, որոնցմէ մին կամ միւսը կրնայ եւ առաջնորդ եղած ըլլալ):

Հեռաւոր Կիլիկիայէն հոն կը ղրկուի Թորոս փիլիսոփայէն գրուած Աւետարան մը, որուն վրայէն դարերու ընթացքին բաւական թիւով արտագրութիւններ եղած են: «Գտի ընտիր եւ ստոյգ աւրինակ (Աւետարանի), զոր գրեալ էր Թորոս փիլիսոփայն ի Դրազարկն եւ յուղարկեալ Հռչա-

---

[6] «Արդ եւ... յետինս ի վարդապետս Պօղոս (Տարօնեցի) զԹուղթս զոր գրեցէք առեալ ընթերցայ եւ հաւան եղէ ամենայն գրելոցդ, զոր առաքեցիք յառաջնմէ եւ բերաւ առ իշխանն Հայոց առ Նովերախմուս Զօրաւանէյ, եւ նոյն ժամայն առ մեզ հասուցին զգիրքս յամսեանն Աւգոստոսի եօթն եւ ի թուականութեանն Հայոց ՆԾ եւ բերաւ ի վանս Ղազարու: Պատասխանի Պօղոսի Տարօնեցւոյ առ Թէոփիստէ» (Տաշեան, Մայր Ցուցակ, էջ 190—191 եւ հմմտ. նաեւ անդ էջ 767—769):

[7] Թարգմանչաց գերեզմանատան մէջ կայ խաչքար մը՝ «Թվին ՆԾ (1001) Տէր Պօղոս Վրդ. Տարօնեցի հանգուցեալ ի Քրիստոս (Ակինեան, Հատք. Յիշատ. Ձեռ. Գեղամէն, հմմտ. վերը):

կուոր ուխտին սուրբ Առաքելոցն Տարօնոյ, որ կոչի Ղազարու վանք» (Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Բ., էջ 445):

Սակայն այն աւետարանէն աւելի արժէքաւոր Ջեռագրի տէր կը դառնայ Ղազարու վանքը — տէր Եսայիի ջանքերով: Այդ՝ հսկա՛յ Ճառընտիր մըն է, որուն յիշատակարանը թէեւ քանի մը անգամ տպուած է, սակայն կ'արժէ դեռ հրատարակութեան տալ կարեւոր բովանդակութեանը համար: Կարդա՛նք՝

«Փառք... Արդ գկայ այցէ բանս թէ զիարդ եւ ուստի զայս աստուածային գանձս (Ճառընտիր) ստացաւ այր մի Թոյիս Բաբերդոյ անուն յարջարջի Աստուածատուր... որ եւ սա խիկ ցանկացող եղեալ այսմ սուրբ մատենիս... եւ ապա հոգ տանելով թէ ով արդեօք կարող իցէ հասուցանել զիս ի փափագ բաղձանացս... եւ ապա խնդիր արարեալ յոգնախմաստ գրչի եւ գտեալ քահանայ մի ի գաւառէն Կարնոյ, որում Վարդան կոչեցեալ հմուտ եւ վարժ ամենայն արհեստի գրչութեան եւ նա յանձին կալեալ եւ աւգնականութեամբն Աստուծոյ սկիզբն արարեալ եւ ապա զկնի երից ամաց եհաս յաւարտ բանիս:

Եւ ի կատարման գրոցս Սուլտան Սե-

ւստալից ժողով արարեալ անհուն բազմութեամբ նմանեալ ամբարշտին Յուլիանեա փութացեալ լեռնացեալ եհաս ի Թէոդուպօլիս եւ անդի կամեցեալ անցանել յաշխարհն Հայոց եւ Վրաց:

Եւ ամենեւին մոռացաւ զԱստուած եւ յուսացաւ ի նանրութիւն իւր, կամէր յաւարի առնուլ զամենայն աշխարհս: Իսկ աւգնականութեամբ Աստուծոյ եկին հասին զաւրքն Վրաց եւ մեծն Զաքարիէ հանդերձ Իւանէւ հարազատաւն իւր եւ այլ աստուածասէր իշխանաւք եւ նախարարաւք եւ յաղթախմբաւք խառնիճաղանջ բազմութեամբ հասին ի վերայ անաւրէն զաւրացն Տաճկաց եւ յանխնայ կոտորեցին զնոսա, զոմանս ձերբակալ արարին եւ ոմանք ի փախուստ դարձան· բայց սուլտանն անվրէպ մնաց, սակայն զաւարայն զթիւ ո՛ կարէ գիտել զոսկւոյ եւ զարծաթոյ եւ զմետաքսի, զերամակս ուղտուց, ձիոց եւ ջորւոց: Եւ յայսմ ամի ի սադրելոյ չարին ըմբռնեցաւ այրս Աստուածատուր ի ձեռն ամիրային իւրոյ Ալախին կոչեցեալ, որ եւ ի ձեռն այնմ գազանի Աստուածատուրն այն ընկալաւ զվախճան եւ յափշտակեցին զստացուածս նորա եւ ոչ մնաց իւր եւ ոչ մի ինչ, բայց այս գիրքս: Ապա զա-

տուարք քաղաքին ձեռն յառաջ տարեալ զուր պատճառանաւք բանս ի վերայ եդեալ թէ հինգ հարիւր պատուաստ մնաց ինձ առ Աստուածատուրն եւ իբրեւ այս այսպէս եղեւ ապա այնուհետեւ չու արարեալ գա-տուարին եկն բնակեցաւ ի հռչակաւոր քա-ղաքն Խլաթ եւ Բ. ամ կայր ի պահեստի եւ ոչ ոք գիտաց. եւ ապա կամեցաւ վա-ճառել եւ ոչ ոք կարէր գամագիւս լինել, զի բազմագին կամէր վաճառել: Ապա հա-րազատ եղբարք անձինք գ. քահանայք գեղջն Դանջան կոչեցեալ որ է առ դուրս քաղաքին եւ են անուանք նոցա միումն Ստեփանոս, իսկ միւսոյն Վարդապետ եւ երրորդին Յոհաննէս, որ եւ նոքա ազդ-արարին մեզ, զի էին միաբանք սուրբ Առա-քելոյս, նամակ արձակելով թէ գանձ պա-տուական կայ ի քաղաքիս եւ մեր լուեալ զայս եւ նոսափափագ սիրով շարժեցաք ի սէր սմին, ապա հոգելից եպիսկոպոսա-պետս մեր տէր Եսայի... եղեալ գ. քահա-նայիւք փոյթ ընդ փոյթ գնաց ի Խլաթ յա-ղագս խնդրոյս այսորիկ եւ ոչ կարաց հա-ւանել ի փափ(ագ.) բաղձանացն, քանզի ժամանակն ձմերային, եւ այլ եւս սպառա-ւորք սուրբ ուխտին Արծկէոյ վանք եւ նո-քա եւս քան զեւս վառեցան բորբոքեցան



Լուսանցազարդ Առաքելոց վանքի Տօնականէն. գրուած 1204ին
(Երեւանի Պետ. Մատենադարան Թիւ 78)

ի սէր սուրբ կտակիս: Իսկ Բոծորն այն... իբրեւ ետես զջերմեռանդ սէրն մեր եւս առաւել զԱրծկէցի սուտ քահանայից, ապա եւ զգինն եւս առաւել աճեցոյց եւ իբրեւ այս այսպէս եղեւ, յայնժամ սուրբ եպիսկոպոս մեր թոյլ տուեալ վայր մի եւ եկն ի վանքս. ապա նոյնպէս եւ Արծկէցի քահանայքն դարձեալ գնացին: Եւ մի ամ այլ մնաց գիրքս առ Բոծորն այն, ապա ի գալ միւս ամին, խնդիր արարեալ թէ գիրքս Գլաձորայ վանիցն է, զի առաջին գնողն մեծ եպիսկոպոսն է, ապա յառաջ ասացեալքն գ. հարազատքն որ ի Դանջան, դարձեալ գրով ազդ արարին մեզ:

Սակայն թէպէտ եւ սէր ամին ստիպէր զմեզ, բայց զնոյն անկարող եաք: Ապա քահանայ ոմն անուն նորա Յովանէս ի Միջնադրերայ էր եւ միաբանեցաւ սուրբ Առաքելոցս եւ իբրեւ լուաւ զերկչատ բարս մեր, ապա յառաջ կացեալ քաջալերեաց զմեզ եւ հաստատեաց ասելով թէ ես աւգնական եմ, որչափ իմ կարն է, ապա ըստ բանից նորա սժ տուաք ի զաւրութենէն Աստուծոյ:

Յայնժամ Սարգիս վարդապետն Ե. փիլիսոփայիւք, որոց անուանքն... Յուսիկ եւ Ռոստագէս, Աւետիս եւ Ստեփանոս եւ

Ներսէս յարուցեալ… հասին, ուր գանձս աստուածային եւ յոյժ աշխատեցան զի ժամանակն ձմերային էր եւ աւդն դառնաշունչ եւ ձիւն բազում եւ իբրեւ մերձեցան ի մեծահռչակն Ուլաթ եւ մտին կացին ի մէջ մեծահարկի տանուտէրացն եւ աստուածահարկ ի քահանայիցն Ուլաթայ եւ Դանչնայ, եւ նոքա մեծաւ ուրախութեամբ յանձին կալան եւ աւգնական եղեն բանիւք եւ արդեամբք — եւ զաւրութեամբն Քրիստոսի առաք զղձալիս մեր եւ դարձաք… յերկնագումար եղբայրանոցս մեր, որ յորջորջի Ղազարու վանս եւ եկաք զատ առ գրանն սուրբ Առաքելոցս եւ ոչ եւս կարէաք գնել, զի Ե. հազար դրամ խնդրէր Բոծորն, այն որ է Տաճիկ եւ դարձեալ մեծաւ հազիւ կարացաք գնել ի Դ. հազար դրամ եւ փառք… Թագաւորին… ի Թուարերութեան ապարչութեանն որ լինի յիսկզբանէ լինելութեանն մինչեւ ցայժմ ամք վեցհազարերորդ վեցհարիւրերորդ երեսներորդ: Եւ ի ծննդենէն Բանին Աստուծոյ լինին ամք հազարերկերիւր եւ չորս: Եւ բստ հայկազեան տամարի, որ լինի վեցհարիւր յիսներորդ եւ չորրորդ: Ակաս(յ) կազմել… ի նահանգիս, որ կոչի Ղազարու վանք, ընդ հովանեաւ սուրբ

Առաքելոցս ի մէջ աստուածատես... ա-
րանց: Արդ ի գնացելումն ամին չինեցաւ ժամատունն, իսկ յայսմ ամի, որ գիրքս կազմեցաւ կռանեցաւ գումբեթն Աստուածածնի...: Վասիլ հիւրատեան յիշեսջիք ի Տէր... (Թղ. 323բ). «Զառաջնորդքս ուխտիս զՅովհաննէս պատուական ծեր եւ զՄարգիս եւ զԱստուածատուր, որ ի գիրս աւժանդակեաց, յիշեցէք ի Քրիստոս» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. հայ. Ձեռ. Երեւան, Ճառընտիր, Թ. 78. Ալիշան, Հայապատում, Բ., էջ 475—482. Սարգիսեան Հ. Բ., Մայր ցուց. Բ., էջ 468—478 եւ Յովսէփեան, Յիշատ. Ձեռ. Ա., էջ 699—726):

Ճառընտիրին գնումին բարոյապէս եւ նիւթապէս օժանդակողներ կ'ըլլան՝ 1. «ամենագովելի եպիսկոպոսն մեր տէր Եսայի», 2. Յակոբ եւ 3. Ստեփանոս աթոռակիցներ, մեծանուն 4. Տէր Բարսեղ, 5. հայրն մեր Աբրահամ, 6. Խաչատուր փիլիսոփայն, 7. Յովհաննէս Միջնաբերդցի, 8. Սրապիոն, 9. Խաչատուր, 10. Ստեփանոս Ճոնի եւ 11. Աւետիս Յրուանցի:

Ճառընտիրին կամ Տօնականին մէկ մասը Առաքելոց վանքի մէջ գրուած է:

Յառաջ բերուած Յիշատակարանին չա-

բանակութեանը մէջ կայ՝ «Արդ Յովհաննէս Միջնաղբերցի եմ ի գլխս գրոցս Ռ. եւ հարիւր դրամ, իսկ ի կատարման յայտնութեան ութուրէիցն ի Տնաւրինեցաւ սուր գրեցաք երկրորդ պատարագ Յովանիսի, հրամանաւ տէր Եսայեա: Եւ փիլիսոփայիցս եւ համօրէն ուխտիս: Եւ գերապայծառ առաջնորդին մերոյ Աբրահամու եւ սուրբ բեմբակաց Բ. պատարագ անխափան, ամ յամէ կատարել» (Սարգիսեան, Մայր Ցուց., էջ 473):

Ամբողջ յիշատակագրութենէն պայծառ կը տեսնուի՝ որ Ղազարու վանքը՝ «երկնագումար եղբայրանոց» էր եւ ունէր համակիրներու խումբ մը: Եսայի եպիսկոպոսապետին հետ, զոր Ն. Լամբրոնացին «իմաստուն» կը կոչէ (Տաշեան, Մայր Ցուցակ, էջ 334) Աբրահամ առաջնորդը գլխացեր են միաբաններու եւ ուրիշներու սիրաշահիլ եւ զանոնք գլխութեան առաջնորդել, մանաւանդ, երբ անուն եւ հռչակ ունէր «վարժապետն Թէոդորոս» (անդ, էջ 334):

Նոյն ճառընտիրին մէջ կը յիշուի դեռ՝ «Այր մի բարեպաշտօն ի քաղաքէն Մշոյ, անուն Աւրիկ եկն յերկրպագութիւն սուրբ Առաքելոցս եւ միաբանեցաւ հաւատով ընդ

սուրբ Առաքեալքս եւ ես բազում ինչս այս սուրբ տաճարիս, ընծայս եւ ետուն եպիս–կոպոսունքն եւ այլ միաբան եղբարքս իւրեան ժամուն զերկու աւրն զՊետրոսին եւ զՊաւղոսին եւ զՈրդւոցն Որոտմանց» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Ձեռ. Ճառ–ընտիր 78, Երեւան) :

Ուխտաւորին համաձայն վերյիշեալ Ճառընտիրին մէջ նշանակուած է թէ ՉԹ թուականին Առաքելոց վանքին մէջ ա–ռաջնորդ եղած է Գասպար վարդապետը (Արեւելք, 1899, թ. 3994) : Նոյն շրջան–ներուն վանքին մէջ ծաղկած է Ներսէս Տարօնեցի : Յայսմաւուրքի մէջ կայ՝ «Սա էր ի Մշոյ, ի գաւառէն Տարօնոյ, մնեալ ի հռչակաւոր վանսն Ղազարու, որ է սուրբ Առաքեալքն» (Հմմտ. Յայսմաւուրք Վիենն. Մխիթ. Մատ. ի թ. 10, թղ. 302ա, Հմմտ. Զամչեան, Պատմ. Հայոց, Գ., էջ 274) :

Տէր Աբրահամի ձեռքն է 1306ին Ս. Ղազարի առաջնորդութիւնը (Առ. Դուրի–ժեցի, Պատմ., էջ 625) : Անոր օրով՝ 1320ին Յովհաննէս անարհեստ գրիչը՝ «յարգար եւ յընտիր աւրինակէ սուրբ ուխ–տին Առաքելոյն Տարօնոյ» կը գրէ Ճաշոց մը (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Երեւան, թ. 69) : Դարձեալ՝ «Առաքե–

ցաւ... «Մաշտոցս... յարեգնածագ եւ հրեշտակացոյց սուրբ ուխտին Ղազարու որ ի լեառն Տիրինկատար ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցն ի թուականութեան ՉԿԹ (1320) ձեռամբ Բարսեղ կրօնաւորի ի՛ հայրապետութեան Տէր Կոստանդին կաթողիկոսի եւ ի թագաւորութեան Աւշնին, յառաջնորդութեան սուրբ ուխտիս Տեառն Աբրահամու գլխաւորի եւ երջանիկ րաբունապետի, ի տիրապետութեան Սուլթան Մանգունդունին Պուսայխտին, յաւուրն իշխանութեան սորա առաւ ամուրն Թարձէնք, որ ի կողմանս Մշու եւ բազում այլազգիք կոտորեցան» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէ):

Այնպէս կը թուի՝ թէ Աբրահամ կամ ժամանակաւորապէս առաջնորդութենէ հրաժարած ըլլայ եւ կամ օգնական ունեցած ըլլայ Տէր Թադէոս, որ 1314ին իբրեւ առաջնորդ կը յիշուի՝ «...Դ. թուին Հայոց ՉԿԳ. գրեցաւ սուրբ Աւետարանս այս ի գաւառիս Տարաւնոյ, ի հռչակաւոր ուխտս Ղազարու վանք կոչեցեալ ընդ հովանեաւ սուրբ Առաքելոց, ի հայրապետութեան Տեառն Կոստանդեայ եւ ի թագաւորութեան Կիլիկեցւոյ Նահանդին Աւշինին եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս

մերոյ տէր Թադէոսի, ձեռամբ անիմաստ գրչի եւ բազմամեղ կրօնաւորի Առաքելի, ի խնդրոյ սրբասէր եւ աստուածասէր քահանայի Թումայի, որ ստացաւ զսա» (Ակինեան, անդ, Տէր Աւետիսեանի Նոր Ջուղայի Հայ. Ձեռ. Ցուցակէն Թ. 41):

Աբրահամի առեն կը յիշուին նաեւ Ներսէս եւ Թումայ եպիսկոպոսները եւ Թադէոսէն վերջ՝ Դանիէլ կրօնաւորը (ՊԺ թուին), տէր Դաւիթ եպիսկոպոս (ՊԾԷ թուին), տէր Մանուէլ (ՊՀԱ թուին) եւ սոյն՝ Աստուածատուր (Արեւելք, 1899, Թ. 3994) «Գրեցաւ (Աւետարանս)... ի վանս սուրբ Ղազարու Տարօնոյ ի հայրապետութեան Տեառն Կոստանդինեայ, յառաջնորդութեան սուրբ ուխտիս Տեառն Աստուածատրոյ րաբունպետի, որ այսմ ամի (1324) փոխեցաւ առ Քրիստոս, յիշեցէք զմեղսամած գրիչս Յովհաննէս, որ բազում աշխատութեամբ յաւարտ էած, ի խնդրոյ տեառն Խաչիկ քահանայի: Թվ. ՉԿԳ» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէ):

Ժամանակագրականի մը մէջ վերյիշեալ Աբրահամի մասին կայ՝ «Ի թուին ՉԾԵ (թէ՝ է՞, 1306—1308) ի գաւառիս Տարօնոյ ի հրեշտակացոյց ուխտիս եւ ի սուրբ

մենաստանիս Ղազարու վանք[8] կոչեցեալ ընդ հովանեաւ սուրբ Առաքելոյն... եւ եպիսկոպոսութեան սուրբ ուխտիս Ղազարու վանից տէր յԱբրահամու...» (Ակինեան, Համ նիւթեր հայ մատենագրութեան պատմութեան կամ Բազուածք Զեռագրաց, էջ 18):

Դարձեալ՝ վերոյիշեալ Առաքելի գրչէն են հետեւեալ տողերը՝

Փառք՝ «Արդ այսմ անմահական ըմպելեաց եւ մարգարտեա եւ ամենագորով աւրինակիս փափագող եղեալ սրբազէր կրաւնաւոր եւ աստուածահաճոյ քահանայն Ներսէս եւ ետ գաղափարել զսա ի ձեռն Առաքելի անարժան կրաւնաւորի եւ վանաքի գրչի ի ժամանակս վերջինս ի թուականութեան Հայոց ՉԿԱ, ի գաւառիս Տարաւնո՛յ ի հայակաց եւ ի հռչակաւոր ուխտիս եւ ի հրեշտակացս. մենաստանիս Ղազարու վանք կոչեցեալ ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցս...: Արդ յիշեսջիք աղաւթիւք զստացող սորա զյառաջասացեալ զՆերսէս քահանայն... եւ զբազմամեղ գրիչս Առաքել...: Գրեցաւ սա... ի դառն եւ յանբարի ժամանակիս, յորում էր ար-

---

[8] Սիմ. Լեհացին վանքիս մասին յիշատակութիւն՝ տեսնել Ակրիբիկ վանքը:

դարութեան կողմն հակեալ եւ անկարգու-
թեան ամենայն ուրեք զաւրացեալ...: Այլ
ես Ներսէս նուաստ կրաւնաւոր... սաստ-
ցայ զատ... եւ ետու զատ նուէր սուրբ ուխ-
տին Առաքելոց սուրբ նշխարացն ի յիշա-
տակ ինձ եւ ծնողաց իմոց՝ հաւրն իմ
Շահինշահին եւ մաւրն իմ Տիկնացին եւ
վարդեանին իմոյ Թադէոս քահանային...:
Եւ զՎարդավառի աւրն յայս արարեցին
զմեզ սուրբ պատարագաւ անխափան...:

Դարձեալ աղաչեմ յիշել յաղաւթս
զվարդեան իմ զորբանէր քահանայն զՍտե-
փաննոս փիլիփոսեան զՀամբրդեացին, որ
սիրով ընկալաւ զմեզ եւ զաղատաւորք
սուրբ ուխտին նշխարացն զընարեալ քա-
հանայ զՎարդան եւ զՍարգիս եւ զՅով-
հաննէս...:

Եւ զեզկելի գրիչս զՆերսէս աղաչեմ
յիշել: Քրիստոս Աստուած պահեա զՍար-
գիս քահանայ, որ զաւետարանչերն ետ
նկարել ի Կիլիկէ եւ յղարկեաց: Եւ զբե-
րող պատկերացս զԿարապետ Վանական
քահանայ. ամէն:

Սարգիս քահանայ յանձնեալ ձեռամբս:

Զաւկաւ աշխատող զՅովհաննէս որ
զգլխագիրս գրեցի. աղաչեմ յիշեցէք»
(Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ.

Խապայեանի Երուսաղէմի Հայ. Ձեռ. Ցուցակէն Թ. 1949:

Իսկ Աստուածատուրի յաջորդին անունը կը մնայ անծանօթ: Թէեւ 1327ին Յովհաննէս քահանան Ղազարու վանքին մէջ Աւետարան մը կ՚արտագրէ, սակայն յիշատակագրութեանը մէջ առաջնորդին անունը կը լռէ (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Երեւան, 95): Քանի մը տարի յետոյ (1332) վանքի միաբան Ներսէս վարդապետը կը հանդիպի Քաների մէջ Բարդուղիմէոս եպիսկոպոսին (Ալիշան, Սիսական, էջ 375):

Կրնայ ըլլալ՝ որ վերյիշեալ Յովհաննէս գրչագիրը յետագային Ս. Ղազարի առաջնորդն ու արքեպիսկոպոսն եղած ըլլայ: Յովհաննէսի օրով՝ 1339ին «ի հռչակաւոր ուխտիս Ղազարու վանք» Ստեփանոս Աւետարան մը կ՚արտագրէ (Լալայեանց, Ցուց. Հայ. Ձեռ. Վասպ., էջ 202), իսկ անկէ յառաջ (1330—1332) Աստուածաշունչի մը ցանկացող կ՚ըլլայ եւ զայն կը ստանայ Ներսէս վարդապետը (Ալիշան, Հայապատում, Գ., էջ 161—165 եւ Սարգիսեան, Մայր Ցուց., էջ 126—127):

Յովհաննէսի առաջնորդութիւնը կարճատեւ չէ: Նա ցաւոտ սրտով կը տեսնէ

*Տարօնի, ընդհանրապէս, եւ Ս. Ղազարի, մասնաւորապէս, աւերումը եւ միաբաններու ցրումը եւ 1378էն յառաջ մշտապէս կը փակէ իր աչքերը՝*

*«Ի թուին Հայոց Տոմարի ՊԻ (1371) կոչի ի յառաջմանէ չարին վասն ծովացեալ մեղաց մերոց եւ ի հարկապահանջութենէ այլասեռիցն աւերեցաւ. երկիրս Տարօնո, նաեւ սուրբ ուխտս Ղազարու, զոր եւ կրօնաւորք սուրբ Առաքելոյս առաջնորդհիկ լինէին՝ անցանելով յայլ գաւառ եւ կացեալ սուրբ սոսա Աստուածաշունչ ի պահեստի ի բազում աւուրս՝ եղծեալ այլ եւս բազում սուրբ գրեանք եւ Աղեստիք՝ եւ եղեւ յայժմարդութիւն վանացս: Զոր յետ աւուրց ինչ յորում էր թվ. ՊԻԷ (1378), ամին աշնաւական առհմէ բարեմիտ եւ սրբասէր կրօնաւոր Պօղոս անուն եղբօրորդի գոլով երջանիկ րաբունւոյն Յովհաննիսի փոխեցելոյն յաստեացս առ Քրիստոս, զոր սոսացեալ ունէր զայս Աստուածաշունչս: Վասն որոյ Պօղոս եւս առեալ հոգք յանձին կալեալ վերստին եւ նորոգել զգիրքս զայս բազում աշխատութեամբ անձին եւ ընչիւք իւրովք»* (*Ալիշան*, *Հայապատում*, Գ., էջ 166. *Սարգիսեան*, *Մայր Ցուց.*, էջ 127—128):

Լանկթիմուրեան ասպատակութիւններու ժամանակ Մուշի դաշտի եւ հարեւան տեղերու Հայութիւնը կ՚ապաստանի նաեւ Առաքելոց վանքը եւ Աստուծոյ օգնութիւնը կը հայցէ՝ «Եւ ի սուրբ ուխտարանն Ղազարու բերեալ եզն մի պէմ յանդիման սպասաւորաց մատուցին յանուն սուրբ Առաքելոցն, որ կայ ի մասանց սուրբ Աւետարանչին Ղուկասու եւ Անդրէի առաքելոյն եւ երկու այլ առաքելոյն Պետրոսի եւ Պօղոսի[9]» (Թովմ. Մեծոփ. Պատմ., էջ 23—24): Դժբախտաբար Հայութեան ախոփանքի խօսքեր հաւանօրէն կրցաւ ազդել Բարթողիմէոս ճգնաւորը՝ «Ս. Առաքելոցն Ղազարու վանացն» (անդ, էջ 27):

Այս տառապաշատ օրերուն ալ երախտագէտ Հայը իր կրցած օգնութիւնը չի զլանար Առաքելոց վանքին, այսպէս 1401ին Դանիէլ կրօնաւորը՝ վանքին 1298ին գրուած Մաշտոց մը եւ Դաւիթ՝ 1408ին[10] ՁՀԴ թուականին արտագրուած համբաւաւոր Աւետարանը գնելով յիշատակ կը թողուն (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ.

---

[9] Կը յիշուին նմանապէս Յակոբ Տեառնեղբօր նշխարներէն (անդ, էջ 23):

[10] Բարսեղ 1418ին կը գրէ Մեկնութիւն առաքելոց եւ կը դնէ յիշատակ ի Ս. Ղազար (Հայաստան, 1851, թ. 98):

Ձեռ. Գեղամէն, Արարատ, 1909, էջ 982. Բիւզանդիոն, 1900, Թ. 3500)։

Ահա Դաւիթի խօսքերը՝ «Փառք... որդ ես մեղուցեալ յամենայնի Դաւիթ եպիսկոպոս Դլիճ կոչեցեալ, մինչդեռ սարկաւագ էի յերկրիս Տարաւնոյ ի սուրբ ուխտս... վանիցն Ղազարու կոչեցեալ, եկեալ գնացի ի յերկիրն Կիլիկիոյ ի քաղաքս Սիս... եկեալ գտի զԱւետարանս... ի Տարաւգայ ի գիւղն Աշտափ առ աշխարհակաց երէց մի եւ ԺԶ անգամ երթեւեկ առնելով առ նա եւ հազիւ կարացի գնել ի նմանէ... եւ ապա եկի ի Հայրենի տեղիքն իմ յերկիրս Տարաւնոյ ի սուրբ Առաքելոցս Ղազարու վանք կոչեցեալ ի մենաստանս արեւածագ... եւ եդի զԱւետարանս առ յիշատակ հոգւոյ իմոյ եւ նախնեաց իմոց...։

Այդ գրեցաւ յիշատակարանս գրոց սուրբ Աւետարանիս ի Թվ. Հայոց ՊՀԱ (1422)...։ Այլ եւ զառաջնորդ սուրբ Առաքելոցս զտէր Մանուէլ, եպիսկոպոս, զազգականն իմ զհայրապետ Աստուածատուր յիշեցէք...» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Գեղամէն, հմմտ. Արարատ, 1909, էջ 982)։

Յովհաննէսի յաջորդներէն է Մանուէլ (հմմտ. վերը) եւ ապա կը տեսնենք՝ Պօղոս, որ նմանապէս երկարատեւ կը վարէ Ս. Ղազարի առաջնորդութիւնը եւ դըժբախտ իրարադարձութիւններու ականատես կ'ըլլայ, բայց գոնէ պատեհութիւնը կ'ունենայ Թովմաս բարունապետը տեսնելու՝ «Յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զառաջնորդ սուրբ ուխտիս զտէր Պօղոս եպիսկոպոս, զի ի ժամանակիս այսմիկ, որ էր թիւս Հայոց ՊՁԸ (1439), էր սա առաջնորդ սուրբ ուխտիս Առաքելոց եւ ի սորին աւուրքս չքահանայ ոմն անուն Վարդան եղեւ գործակն Յուդայի եւ մատնեաց զամենայն սրբութիւնք եկեղեցւոյն անօրինաց զխաչ եւ զսկի... այսմ ամի տեղեբալցս եւ քաջ բարունապետն Թովմա փախստական էր եղեալ յազգէն Նետողաց ի գաւառէն Արճիշոյ եւ եկեալ հանդիպեցաւ ի սուրբ ուխտն Առաքելոց երկու վարդապետօք եւ բազում դրոց աշակերտօք եւ եսես զպատուհաս ցասման, զի պիղծ ամիրայն Մարաց, որ ի Մուշ նստէր, յաւուր միում բազում զօրօք եկն ի վանքն եւ սուտ քահանայն Վարդան ընդ նմա եւ ըմբռնեցին զքահանայքն, զոմն տանջեցին եւ զոմն ահարեկ առնէին. մտին յեկեղեցին

եւ քակեցին զմի կողմի շեղ եւ հանին բազում խաչ եւ ոսկի եւ սրբոց նշխարք եւ տարան ի քաղաքն...: Եւ ի վաղիւն եկեալ երէց ոմն Մելքսեդ անուն եւ եբեր մասն ինչ ի խաչերոյն եւ բազում խաչ եւ ոսկի կորեաւ» (Ալիշան, Հայապատում, Գ., էջ 168—169 եւ Սարգիսեան, Մայր Ցուց., Ա., էջ 128, հմմտ. անդ եւ էջ 127՝ Պօղոս կրօնաւոր):

Պօղոսի օրով Ստեփանոս հնարաւորութիւն կ'ունենայ դրագարկեան Աւետարանի վրայէն արտագրութիւն մ'ընելու (հմմտ. վերը) եւ անոր վրայէն ալ 1450ին ուրիշ արտագրութիւն մը կ'ըլլայ (Նօտարք, էջ 165, անկէ առաջ 1422ին Առաքել կը գրէ՝ Ճառ Տաղկազարդի. հմմտ. Պալեան, Ցուց. Հայ. Ձեռ. Կեսարիայի Ս. Աստուածածնի. էջ 70):

Պօղոս իր դրաւոր մասնակցութիւնը կը բերէ — Զաքարիա եպիսկոպոսին հետ — Կիրակոս Վիրապեցիին կաթողիկոսական ընտրութեանը (Թովմ. Յիշատակարան, էջ 53): Կը յիշուի դեռ 1451ին, սակայն ծերութեանը պատճառաւ օգնական կ'ունենայ իր պաշտօնին մէջ տէր Կարապետ, որ ապա իրեն կը յաջորդէ (Նօտարք, էջ 172): Այս ժամանակ Անդրէաս քահա-

նամ՝ «Ի դաշտս Տարաւնոյ ի վանքս Ղազարու» ձեռագրի մը արտագրութեամբ կը գրագի (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէ, ա. 1464) : Իսկ Կարապետ Բաղիշեցին — միաբան Առաքելոց վանքի — կը վերակազմէ 1325ին գրուած Աւետարան մը եւ յիշատակագրութեան մէջ կը յաւելու՝ «յորում է թվականութիւն մեր ՋԽԵ (1496) առաջնորդք սուրբ ուխտիս Ղազարու վանացս տէր Եղիայ արհիեպիսկոպոս եւ տէր Թորոս արհիեպիսկոպոս եւ տէր Ղազար վարդապետն» (Հանդ. Ամս., 1937, էջ 320) :

Ասոնցմէ յառաջ եւ Աստուածատուրէն յետոյ Ուխտաւորը կու տայ Ս. Ղազարի առաջնորդներու եւ միաբաններու անունները՝ Պօղոս եպ. ՊՂԱ. Կարապետ եպ. ՁԺԳ., Յովհաննէս արքեպ. եւ Մարտիրոս եպ. ՋԽԱ. եւ այլն (Եղիայէն եւ Թորոսէն վերջ) Ղազար վարդապետ, Ստեփան վարդապետ, Թադէոս եպիսկոպոս (Արեւելք, 1899, թ. 3994. Լուսարարեան, Գաւազանագիրք, էջ 80) :

Ղազարի վանքը այս շրջաններուն չքաւորութեան կը մատնուի եւ Թադէոս եպիսկոպոսը դրամաժողովի կը ձեռնարկէ «Ի



Առաքելոց վանքի վանահայրը :

թուականիս Հայոց ՋԿԶ (1517)[11] գնացի ես Թադէոս եպիսկոպոս ի Համիթ քաղաքն վանիցն համար ժողովք առնելոյ, վասն պակասութեան վանիցս, յայնժամ ժողովեցան քահանայքն եւ խոճանայքն... մեծ եւ փոքր Թէմիւք սուրբ երկոտասան Առաքելոցն, որ է վանք Ղազարու Թէմ եւ վիճակ կու լինինք եւ տուաք ձեռագիր միմեանց եւ նզով գրինք, որ ոչ մեք ի վանից Թեմէն ելնու(ն)ք եւ ոչ վանից եպիսկոպոսն մեր առաջնորդութենէն մինչեւ ի կատարած աշխարհիս...» (Ստորագրութիւններ, հմմտ. Սարգիսեան Հ. Բ., Մայր Ցուց., Բ., էջ 480—481)։

Կարապետ Բաղիշեցին Յայսմաւուրքի մը յիշատակարանին մէջ 1526ին կը մաղթէ յիշել՝ «Զառաջնորդ սուրբ ուխտին զԹադէոս եպիսկոպոսն եւ զերջանիկ րաբունապետն մեր զԹորոս եւ զաէր Հայրապետն եւ զայլքն ամենայն» (Հանդ. Ամսօրեայ, 1937, էջ 322)։

Անկէ յառաջ (1521ին) «Գրեցաւ սուրբ Աւետարանս ի Թուականութեան Հայոց ՋՀ ի գաւառս Տարօնոյ ի վանս Գլաձորոյ ի

[11] 1505ին Աւետարան մը կը տրուի «յիշատակ ի դուռն սուրբ Առաքելոցն» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէն)։

դրունս սուրբ Առաքելոցն յառաջնորդու-
թեան սուրբ ուխտիս Թադէոս եպիսկո-
պոսի» (Սարգիսեան Հ. Ն., Տեղագրու-
թիւնք, էջ 236)։

Թադէոսի գործունէութեան մասին Առ-
տուածատուր կ՚արտայայտուի՝ «Գրեցաւ
սաղմոսարանս (ՋՂԹ=1540)... ձեռամբ
...եղկելի Աստուածատուր աբեղի...։
Գրեցաւ սա ի մեծ եւ հռչակաւոր եւ յաս-
տուածաբնակ սուրբ ուխտս Ղազարու ընդ
հովանեաւ սուրբ Առաքելոցս եւ սուրբ Տի-
րամայր Աստուածածնին եւ սուրբ Գրիգոր
Լուսաւորչին ի հայրապետութեան Տեառն
Գրիգորի եւ յառաջնորդութեան սուրբ
ուխտիս տէր Թադէոս արհիեպիսկոպոսին
եւ տէր Կարապետին...։ Եւ արդ գրեցաւ
Բ. կանոն ի մայրաքաղաքն յԱմիթ ընդ հո-
վանեաւ սուրբ Սարգսի։ Մեծ եւ արհի
եպիսկոպոսն Թադէոս... զիս երեր ի
վանքս Ղազարի, ինքն ձեռնարկեաց մեծ
գումբեթին եւ ես նստայ ի վեր Սաղմոսիս
եւ բազում վիշտս կրեաց, ողորմութեամբն
Աստուծոյ նորոգեաց զգումբէթն սուրբ
Առաքելոցն եւ զայլ բազում | խախտեալ
տեղիսն...» (Թորոս Աղբար, Բ., էջ 421—
422. Հանդ. Ամս., 1915, էջ 34. Համմտ.
Ակինեան, Մատենագր. Հետազօտութիւն-

ներ, Դ., Վիեննա 1938, էջ 315—317)։ Իսկ Կարապետ, որ Առաքելոց վանքի ոչ անկարեւոր դէմքերէն է եւ ըստ Հ. Ակինեանի Կարապետ Բաղիշեցիին հետ նոյն է (անդ, էջ 314—350), կը շինէ Առաքելոց վանքի ժամատունը 1555ին։ Անոր հետ ի միասին 1547ին Ս. Ղազարի մէջ կը յիշուին տէր Սարգիս, տէր Հայրապետ եւ տէր Առաքել (Հանդ. Ամս., 1937, էջ 323)։ Բայց առանցմէ վերջ հոյակապ կը հանդիսանայ մեծ հռետորն Ղազար Վ. առաջնորդը, որ Աւետարան մը յիշատակ կը տանոյ[12] (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Գեղամէ)։ Իսկ Ղազար գրիչը Գանձատետր մը կը գրէ՝ «Գրեցաւ... ի մեծ եւ ի հռչակաւոր եւ յաստուածաբնակ սուրբ ուխտս Ղազարու ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցս... ի հայրապետութեան Տեառն Եղիշէի եւ առաջնորդութեան սուրբ ուխտիս մեծ հռետորի եւ բաբունապետի տէր Ղազար վարդապետի... եւ արհիեպիսկոպոսացն տէր Թումային եւ տէր Ներսէսին եւ Յովհաննու Կարապետին... ի թվին ՌԳ.»

---

[12] Ղազարի հայրն է՝ Սարգիս եպիսկոպոս եւ մայրը՝ Սուլթան, ինչպէս սոյն Աւետարանին յիշատակարանը կը դեկուցանէ։

(Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէ):

Ղազարի պաշտօնավարութեան վերջին տարին չենք գիտեր: Անոր կենդանութեանը եւ մահէն վերջ Ս. Առաքելոց վանքի մէջ կ՚ապրին՝ «Տէր Թումայ Վ., տէր Ներսէս եւ տէր Յովհաննէս, տէր Կարապետ (ՌԴ), Յովհաննէս Վ. (ՌԺԹ), Խաչատուր եպ. (ՌԼԴ)[13], Գրիգոր եպ. (ՌԼԵ), Դաւիթ եպ. ՌԽԴ, Բարսեղ վարդապետ» (Արեւելք, 1899, Թ. 3994):

ՌԼԹ (1590) թուականէն կայ սա կարեւոր յիշատակագրութիւնը՝ «... ցանկացող եղեւ տէր Դաւիթ արհեպիսկոպոսն եւ ետ գրել զսուրբ Աւետարանս եւ զարդարել ետ զսա ոսկւով ու լաճւարտով եւ ակամբք պատուականօք զներքոյ եւ զարտաքոյ, որպէս զվայելչակերտ դրախտ եւ զպատուալի այգի եւ զծաղկալի բուրաստան երանգ երանգ գոյնզգոյն զսուրբ Աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ եւ իւր ծնողացն հօրն Աստուրին եւ մօրն Մանտրատին...:

Արդ յանկ ելեալ աւարտեցաւ... Աւետարանս... ի թվ. ՌԼԹ ամի ի մայրաքա-

13 1573ին Աւետարանի մաս մը գրուի Առաքելոց վանքի մէջ (Լալայեան, Ցուց. հայ. Ձեռ. Վասպ., էջ 678):

դաքս Համիթ ձեռամբ... Աստուածատուրս յանձն առի գրել եւ ծաղկել զսուրբ Աւետարանս բազում աշխատութեամբ եւ ակար մարմնով, այսր անդր շրջելով, զոր իմաստուն ընթերցողք եւ հմտական մասռուքդ եւ ճանաչէք զարուեստ եւ զիմաստութիւն, որ ի սմա դանձեալ կայ: Եւ կատարումն եղեւ ի դուռն Ս. Կիրակոսի եւ մօր նորա Աւղիտայի եւ սուրբ Թէոդորոս զինաւորին եւ այլ սրբոցն, որ աստ կան հաւաքեալ: Եւ ի յառաջնորդութեան մայրաքաղաքիս Ամթայ Ղուկաս քաջ րաբունապետին եւ աստուածաբան վարդապետին, որ դերիվեր իմաստութեամբ իւրով փայլէր որպէս զջահ արփիափայլ ի կամարս կաթողիկէ եկեղեցւոյ, զոր Տէր Աստուած պահեսցէ անշիջանելի պայծառութեամբ սուրբ եկեղեցւոյ եւ պարծանս հայկազեան սեռից...: Այլ եւ ի կաթողիկոսութեան սուրբ աթոռոյն Էջմիածնի ճգնազգեաց եւ խարազնազգեստ Առաքելի եւ ի պատրիարքութեան Կոստանդնու տէր Սարգիս արհիեպիսկոպոսի, որ յայսմ ամի եկին ի մայրաքաղաքն Համիթ եւ ի թագաւորութեան Իսմայելացւոց Սուլթան Մուրատ Խոնթքարին... զի այս ԲԺ·ան ամ որ զօրս բազում ժողովէ եւ զօրագլուխ կա-

ցուցանէ խուր փոխանորդ եւ առաքէ ի վերայ կարմիր գլխայ եւ ի վերայ աշխարհին... եւ առաջին ամի էառ զՓայտակարան քաղաքն, որ է Տփխիս եւ այլ բազում քաղաքս՝ զԿարս, զԾրուան եւ զՇամախի եւ զայլ ամրոցս եւ յամենայն ամի յառաջանայ եւ ոչ ոք կարէ ի կարմիր գլխացն կամ ի Վրացն ի դիմի կալ...։

Այլ ի Թվականութեանս մերում ՌԼԵ. ամին եւ զօրագլուխ մի հրամանաւ Թագաւորին Աւսման փաշայ անուն բազում խլրամամբ եւ եկն ի յարեւելս ի վերայ Թաւրէզ շահաստանին եւ էառ զնա եւ աւերեաց, բայց ոչ ժամանեաց յետս դառնալ, այլ անդէն մեռաւ, ապա խաղաղութիւն ոչ եղեւ։ Եւ ի միւս տարւոյն այլ զօրագլուխ գնացեալ ի վերայ աշխարհին եւ էառ զԿանձայ եւ զայլ բազում ամրոցս Վրաց ... եւ դեռ եւս աշխարհս ի տագնապի է։

...Այլ եւ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՏէր Դաւիթ արհիեպիսկոպոսն, որ է ի գաւառէն Ացունայ, ի գեղջէն Աւկօղոյ, որ ետ գրել զսուրբ Աւետարանս... յիշատակ ի վանս Ղազարու, որ է ի Տարաւն ի լեառն Տիւրոսի, որ է Մշու սուրբ Առաքեալք· յերեսս անկեալ աղաչեմ զմիաբան եղբայրք սուրբ ուխտիս,

նախ եւ առաջ Գրիգոր րաբունապետն եւ զտէր Խաչատուր եպիսկոպոսն ծերունի, սրբասէր եւ աստուածահաճոյ կրօնաւորն զտէր Կիրակոս հէրպէտն եւ զտէր Դաւիթ Լուսարարն եւ զայլ միաբանք սուրբ ուխտիս...», ապա կը յիշուին Դաւիթի ծնողքն ու ազգականները եւ Աստուածատուր ծաղկողը կը մաղթէ յիշել իր արինակիցները (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէ, յիշատակարան «Դաւթի աւետարան»ի):

Բարսեղ վարդապետի մասին մեր ծանօթութիւնները բարեբաստօրէն շատ են: Յիշատակագրութիւններու համաձայն մեծ արդիւնք ունի Ս. Ղազարի վանքի վրայ: Լսե՛նք.

«Թուին ՌԽԶ (1597) ես Բարսեղ վարդապետս ի ժամանակս Կոպպա խանին Բերդակցիք եւ Նորշէնցիք զաւեցին անուլ զջուր. ԵՃ զրուց խարճեցի եւ սուրբ Առաքելոց աւգնականութեամբ յաղթեցի նոցա եւ զաւթ արի եւ ամենեքեան հնազանդեցան բանիս...:

Ի ժամանակս յետինս վասն ծովացեալ մեղաց բարձեալ էր սէր եւ խաղաղութիւն յամենայն երկրէ եւ տիրեալ բռնութիւն եւ հարկապահանջութիւն եւ ոչ ուստեք

դտանի ողորմութիւն, բայց ի տեղիս տեղիս չարժլին ի սէրն Քրիստոսի, ոմն պատարագ եւ ընծայ նուիրելով, ոմն կնճակ հաստատ պահելով, ոմն յիշատակ դնելով յամենայնէ, եթէ խաչ է կամ աւետարան եւ թէ այլ ինչ արդիւնք եւ ոմն ոիփ առնելով, եթէ ագարակ կամ ջրաղաց եւ այլ ոք գութան, որպէս որ այս բարի եւ հաւատարիմ քրիստոնեայն Աւետիսն, որ ի գեղջէն Մուշեղշինայ, չարժեցաւ ի սէրն սուրբ Առաքելոցն եւ ետ զջրաղացն... ի թուականութեան Հայոց ՌԿԳ.[14] յառաջնորդութեան տէր Բարսեղ քաջ րաբունապետին, որ ՌԾԸ ամին նորոգեաց զերկոտասան Առաքեալքն: Վասն մեղաց իմոց ի նոյն ամն եկն ազգն Պարսից ի վերայ Տարօնոյ, բազում արիւն հեղին եւ գերի վարեցին եւ կրօնաւոր մի Կիրակոս անուն ի յայս վանացս նահատակեցին» (Սարգիսեան, Մայր Ցուց., Բ., էջ 476. հմմտ. եւ էջ 480):

Բարսեղի առաջնորդութեան շրջանին (եւ անկէ յետոյ) եւ նաեւ անոր հրամա-

[14] Բարսեղ 1615ին կը ստանայ Կիւրղի Պարապմունք եւ Գանձք ու զայն կը նուիրէ Առաքելոց վանքին (Ակինեան, Հուսաք. Յիշատ. Ձեռ. Հ. Պատուրեանէ. հմմտ. Բարսեղի մասին նաեւ Պօտուրեան Հ. Մ., Հանրագիտակ, Բ., էջ 387):

նոյնը շատ մը արտագրութիւններ եւ նուիրումներ կ'ըլլան Ս. Ղազարի մէջ եւ Ս. Ղազարի համար։ 1621ին Գրիգոր Նչեցին կը գրէ Վարդանի Ս. Տեղեաց Աղօթագիրքը (Աղաւնունի, Հայ Երուսաղէմ, էջ 50. հմմտ. եւ անդ Բարսեղի մասին. նաեւ՝ Հայ Խօսնակ, 1928, Թ. 1, էջ 8, գրուած է 1691)։ Նոյն թուականին Գրիգոր կը գրէ Հաւաքածոյ մը (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Խապայեանի Երուսաղէմի Ձեռագրաց Ցուցակէն, Թ. 939)։ Բարսեղ ինքնին կ'արտայայտուի՝ թէ 1621ին Եղիազարու վանքին կը նուիրէ «Յոբայ եւ Յովհաննու քաղուածոյ գիրքս» (Ակինեան, անդ, Գեղամէն. հմմտ. կարեւոր յիշատակագրութիւն մը Հ. Բ. Սարգիսեան, Մայր Ցուց., Ա., էջ 1138)։ — Կարապետ Բարսեղի հրամանով կը գրէ՝ «Աստուածախօս մեկնութիւնս Պաւղոսի առաքելոյն ի թուին Հայոց Ռ եւ ՀԵ ամին յերկիրն Տարօնոյ ի վանքն Եղիազարու...» (Հայաստան, 1851, Թ. 51)։ Այս տեղեկութիւններ կը տրուին եւ կը պատմուի՝ թէ Բարսեղ կը նորոգէ վանքը[15], պա-

[15] Յիշատակագրութեան մը համաձայն 1614ին Մարտիրոս վարդապետը «նորոգել է Ղազարու վանքը (Քնն. հրտ. Մ. Խորենացւոյ պատմութեան, Թիֆլիս 1913, էջ ԻԲ)։

րխպը կը բարձրացնէ եւ նուէրներ կ'ընէ (անդ, Թ. 51)։ Իսկ Կարապետ 1632ին «ի դուռն Ս. Առաքելոցն» Նարեկ մը կը նորոգէ (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէն)։

Բարսեղ ՌԿէ Թուին (այսպէս սրբագրելի՝ ՊԿէ) Գործոց մեկնութիւն մը գրել կու տայ՝ «ի դուռն ԺԲ. սուրբ Առաքելոց Եղիազարու վանացն...։ Գծագրեցաւ ձեռամբ Կարապետ եպիսկոպոսի եւ ծաղկեալ կազմեցաւ ձեռամբ մեղապարտ Յովհաննէսի» (Հայաստան, 1851, Թ. 98)։

Յիշատակագրութեան մը համեմատ Բարսեղ ՌԻԲ. Թուին կը մեռնի (Սարգիսեան, Մայր Ցուց., Բ., էջ 480, ուր եւ անոր գործունէութեան մասին)։ Սակայն այդ սխալ է, ինչպէս վերոյիշեալ յիշատակագրութիւններէն կը տեսնուի։ Նաեւ չէ կարելի անոր մահը ՌՀ. Թուին դնել. ինչպէս Ուխտատուրը կը միտի ընդունիլ (Արեւելք, 1899, Թ. 3994) եւ այն՝ միեւնոյն պատճառով։

---

Իսկ Ակինեանի Յիշատակարաններու Հաւաքումին մէջ կայ թէ 1634ին՝ «Մարտիրոս Վ. Նորոգէ զվանքս... երեք զմրեթ բոլորովին իւսեաց, տաշեր ի միասին, եւ ժամատունն Յարութեան, այլ եւ տաճար Աստուածածնին, յորում թաղեալ է Ստեփաննոս Մանկիկ վարդապետ» (Հ. Պօտուրեանէ)։

Ուխտաւորը Բարսեղի յաջորդներու շարքը կը հիւսէ՝ «Յովհաննէս բարունի եւ Յովհաննէս Վ․ ՌՂԳ, Կարապետ եպիսկոպոս ՌՂԴ, Ղազար եպ․ ՌՂՁ, Յովհ․ Վ․ եւ Յովհաննէս Վ․ ՌՃԴ, Մարգար եպ․ Մեսրոպ Վ․ ՌՃԺԳ, Յովհաննէս Վ․ ՌՃԺԴ եւ Վարդան ՌՃԻ (Արեւելք, 1899, Թ․ 3994)։ Ասոնց ամէնուն համար կարելի չէ ըսել թէ՝ առաջնորդութիւն ըրած ըլլան։ Անոնցմէ ոմանց անունները վերյիշեալ յիշատակագրութիւններու մէջ եկան։ 1647—1648ին «Տէր Յովհաննէս բարունին, վերատեսուչ իւր վիճակին, որ եւ Տարօնոյ դաշտ ասեն եւ Ղազարու վանք յորջորջեն», սոյն վանքին համար Աստուածաշունչ մը արտագրել կու տայ[16] (Ակինեան Հ. Ն․, Հաւաք․ Յիշատ․ Ձեռ․ Գեղամէ)։

Ձեռագրի մը յիշատակագրութիւնը կը ծանուցանէ՝ «Ի Թվ. Հայոց ՌՁՁ (1637) որպէս եւ այս սուրբ ուխտս Ղազարու վանաց ԺԲ․ սուրբ Առաքելոց առաջնորդ Յո-

---

[16] Ղլիճ Աւետարանի մէջ կը գրուի՝ «Յիշեցէք զնորընծայ կրօնաւոր տէր Դաւիթն, որ վերստին նորոգել ետ զսեգիրն, զի յոյժ թռուցեալ էր, որ ի կարդալ չէր գար, վասն որոյ ետուր ինձ մեղաւոր Դանիէլիս, գրեցի ի թուականին Հայոց ՌՂէ» (անդ, Գեղամէ)։

վանքէս վարդապետն, որ ի յայս հարկա-
պահանջութեան ժամանակիս տիրէ եւ կա-
ռավարէ եւ ազգի ազգի փորձանաց համ-
բերէ վասն սիրոյ սուրբ ուխտիս: Զոր եւ
տեսեալ բազում գրեանս եղծեալս եւ ա-
պականեալ եւ ես վերստին նորոգել
զԳործս առաքելոց, թէ զԱռակաց բնա-
բանս, թէ զԵրգ Երգոցի մեկնիչն ու քանի
տարւոյ գիրքն եւ Աւետարան ես նորոգել
... համդերձ աշակերտին իւր տէր Մար-
գարիւ, որ կապեաց զսուրբ գրեանքս»
(Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ.
Գեղամէ):

Մեսրոպ աբեղան իր մասին կ'արտա-
յայտուի՝ «Ես տէր Մեսրոպ աբեղայ հէր-
պէտ եւ մեղաւոր ծառայ սուրբ Առաքե-
լոցս Ղազարու վանացս ի գեղջէն Բերդա-
կայ ի Թուին Հայոց ՌՃԺԳ (1664) գնեցի
ի յԱռզա քրդերուց խարապա ջաղաց մի
ի վեր կոյս գեղջին ի ձորամէջն եւ արարի
ոխփ սուրբ Առաքելոցն...: Վերստին նո-
րոգեցաւ ձիթաղացս ի Բերդակ գեօղն ձե-
ռամբ յոգնամեղ տէր Մեսրոպ հաբե-
ղայի, ի Թուին Հայոց ՌՃԺԶ ամին, ոխփ
էր սուրբ Առաքելոց եւ ես նորոգեցի ի հի-
մանէ եւ կրկին ոխփ արարի» (Սարգի-
սեան, Մայր Ցուց., Բ., էջ 476—478):

Իսկ 1668ին Պետրոս կրօնաւոր կը գրէ իր մասին՝ «Եկի ի սուրբ ուխտս որ կոչի Ղազարու վանք, որ եւ յազգմանէ չարին մատնեցին զիս ի Բոնաշէն ի ձեռս անաւրինաց եւ ես գիշերն փախեայ եւ եկի աստ, զոր Տէր Աստուած անխորձ եւ անդրդուելի պահէ Յովանէս վարդապետն եւ զիւր միաբանքն, զտէր Մեսրոպն եւ զտէր Ստեփանոսն, որ ինձ քան զչափ հարկիս արարին» (Ալիշան, Հայապատում ,Գ., էջ 170)։

Վարդան Բաղիշեցին Ղազարու վանքին մէջ Դաւիթ առաջնորդի օրով դպրութեան եւ շինարարութեան եւ վերանորոգութեան ուժեղ զարկ կու տայ։ Ջեռներէց է։ Ուր ըլլայ՝ արդիւնաւոր կ՚ըլլայ։

«Զգերազանցեալն բանիւ իմաստութեան զԲաղիշեցի Վարդան բաբունապետն յիշեսջիք. հանդերձ հարազատիւն իւրով Դաւիթ վարդապետիւ, նաեւ... զԱբրահամ բանի սպասաւորս եւ աշակերտն Տեառն Վարդանայ...։ Կազմեցաւ սուրբ տառս ի թուաբերութեան հայկազեան տոմարիս ՌՃԻ (1671) ի վանս Եղիազարու ի հայրապետութեան Տեառն Յակոբայ կաթուղիկոսի եւ յառաջնորդութեան սրբոյ ուխտիս տէր Դաւիթ ճգնազգեաց վար-

դասպետի ձեռամբ անարհեստ Սահակայ Վանեցւոյ» (Դիւան, Ժ., էջ ԼԹ)։

Վարդան «Խ. հին փտեալ գիրք» նորոգել կու տայ «եւ զեկեղեցւոյ սադերն եւ զգումբէթն վերստին նորոգեաց եւ զեկեղեցի սրբոյն Ստեփաննոսի ի հարաւոյ կուսէ վերստին ի հիմանց շինեաց եւ պայծառացոյց զսուրբ մենաստանս ժամակարգութեամբ, թվ. ՌՃԻԲ» (Դիւան, Ժ., էջ ԼԹ, հմմտ. եւ Քնն. հրտ. Մ. Խորենացւոյ պատմութեան, էջ ԻԳ եւ վերը)։ Վարդան նաեւ պարտքեր կը հատուցանէ (Բիւզանդիոն, 1908, թ. 3500. հմմտ. եւ անդ, 1907, թ. 3128)։ Իգնատիոս վարդապետի Ղուկասի մեկնութեան արտագրութեան յիշատակարանին մէջ կը ծանուցուի՝ «Յաւել (Վարդան) զբարեգործութիւնս զայս ի վերայ ամենայնի զոր ունէր եւ չու արարեալ ի տեղւոյ խւրմէ սակս աղաչանաց եղբարց եւ եկեալ ի սուրբ մենաստանս Առաքելոցն որ յանուն Եղիազարու առձայնի, զի եթէ հնար է զերծումն արասցէ եւ ազատութիւն շնորհեսցէ վանացն, որ անկեալ դնի ի ներքոյ ծանրաբեռն պարտուց, որ եւ իսկ եւ իսկ ի գործ արկեալ... վճարեաց զանտանելի պարտսն, մինչ գրեթէ երկուց հազարաց

եւ այլ աւելի եւ զամենայն գրեանս եւ արդիւնս վանացն ազատեաց եւ Լ. գիրք վերստին նորոգեալ կազմեաց ի ձեռն Սահակայ կազմարարին Վանեցւոյ եւ զեկեղեցւոյ սպասս նորոգեաց եւ ի Հարաւոյ կուսէ զեկեղեցի սրբոյն Ստեփաննոսի, որ ի Լանդթամուր բռնաւորէն քակեալ եւ հիմն ի վեր տապալեալ, սա վերստին շինեալ՝ հաստատեաց առաջնորդ եւ սպասաւոր Առաքելոցն զԴաւիթ վարդապետն զհոգեւոր հարազատն իւր եւ ինքն վերակացու եւ խնամատար գոլով ամենեցուն օրըստօրէ զեւս քան զեւս աւելաւ ի շինումն սուրբ եկեղեցւոյ եւ բարեձեւութիւն ազգիս... մաղթեմ յիշել զՎարդան բաբունայեան եւ զաշակերտն իւր զԱբրահամ բանասէրն... կոչեցաւ (կազմեցաւ) մեկնիչս Ղուկասու Աւետարանչի ի Թուաբերութիւն հայկազեան տոմարիս ՌՃԻ (1671) ի վանս Ղազարու յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Դաւիթ ճգնազգեաց վարդապետի եւ տէր Ստեփանոս կրօնաւոր հէրապետի» (Երեւակ, 1858, Դ., էջ 203)։ 1673ին գրուած Աւետարանի մը մէջ եւս Վարդանի այս գործունէութիւնը կը շեշտուի (Բիւզանդիոն, 1900, Թ. 1200)։ Հետեւաբար Առաքելոց վանքը շատ մեծ

երախտագիտութիւն կը պարտի Վարդանի, որ ստուգիւ մեծ բարերարի սիրտ եւ նկարագրի տէր անձի ուժեղ կամք յայտ բերած է (Վարդանի արդիւնաւոր գործունէութեան մասին հմմտ. Հանդ. Ամս. 1952, էջ 17—66):

Դաւիթ առաջնորդի թեւ թիկունք կ'ըլլայ Ստեփանոս (հմմտ. վերը): Անոր օրով 1671ին կը գրուի ճաշոց մը (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէ) եւ 1687ին Մարգարէ կը գրէ Ձենոք Պատմագիրը (անդ, Հ. Պատուրեանէ):

Դաւիթի յաջորդն է Աբրահամ վարդապետը, որուն ատեն Յակոբ քահանան Մաշտոց մը կ'արտագրէ՝ «Ի թվ. ՌՃԿԳ (1714) յառաջնորդութեան սուրբ Առաքելոցն Տեառն Աբրահամ վարդապետին... ի վայելումն Յովհաննէս վարդապետի» (անդ, Գեղամէ):

Դաւիթէն յետոյ Ղազարի վանքին մէջ կ'երեւան՝ Սահակ կրօնաւոր, Յովհաննէս վարդապետ, Ղազար Վ. Ղօլէեան, որ վանքին Մուշի մէջ ունեցած ջրաղացքը Հաճի Սինօյի գրաւ կը դնէ՝ փոխան 250 ղոլոթայի (Արեւելք, 1899, Թ. 3994):

Հայկական ՌՄԻԳ Թուականին վանքին առաջնորդն էր Գասպար վարդապետը,



Առաքելոց վանքի աջ անկիւնը՝ Դաւիթ Անյաղթի դամ-բարանին քով կանգնած է վանքին վանահայրը՝ Յով-հաննէս վ. Մուրատեան, նահատակուած վանքին սեամքին վրայ 1915ին:

որուն Սիմէոն կաթողիկոսը Պաղտասար վարդապետին համար յանձնարարական մը կը գրէ (Դիւան, Ը., էջ 286)։ Անոր յաջորդներն ըլլալու են Ղազար եւ Աստուածատուր (Արեւելք, 1899, Թ. 3994) եւ վերջնոյս թափուր գահը կը բարձրանայ՝ Յովհաննէս եպ. Աւրանցին, որ եկեղեցւոյ գանձանակատունը կը շինէ, վանքին պարտքերը կը վճարէ եւ համակիր էր Դանիէլ Կաթ.ի (Հայաստան, 1851,, Թ. 51. Արարատ, 1909, էջ 983—984. Դիւան, Ե., էջ 234 եւ Պէրպէրեան, Պատմ. Հյց. Կ. Պ. 1871, էջ 44)։ Այս վանահայրութեան կը կոչուին կամ անոր կը ձգտին ու կը հասնին, նաեւ անկէ կը հեռանան՝ Մարտիրոս (ՌՄԾԶ), Յովհաննէս եպ. (ՌՄԿԵ), Առաքել Վ. (ՌՄՂԹ), Պօղոս Մեղրեցի (ՌՅԲ), Մկրտիչ Գրիկեան (ՌՅԲ), Մկրտիչ Գրիկեան (ՌՅԳ), Յովհաննէս եպ. (ՌՅԶ), Յօհնէ (ՌՅԹ), Պետրոս Երեւանցի (ՌՅԺԱ), Մկրտիչ Գրիկեան (վերստին՝ ՌՅԺԲ), Զաքարիա (ՌՅԺԳ) եւ Յովհաննէս Վ. Մուրատեան (ՌՅԺԳ. հմմտ. Արեւելք, 1899, Թ. 3994) որ երկարատեւ պաշտօնավարութիւն կ'ունենայ եւ կը նահատակուի (Արեւելք, 1884, Թ. 214, 1888, Թ. 1271, 1904, Թ. 2258.

Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը, 1916—1920, էջ 135) — բնական է ասոնցմով առաջնորդներու շարքը չամբողջանար:

Ասոնցմէ Զաքարիա եպիսկոպոսը, որ Ս. Կարապետի առաջնորդ էր, մէկ երկու տարիէն իր աթոռը կը դառնայ, բայց իր կարճ պաշտօնավարութեանն ընթացքին վանքին պարտքերը կը վճարէ: Իրմէ յառաջ Առաքելոց վանքի մէջ ապրած ու մեռած էր Ս. Կարապետի ուրիշ առաջնորդ մը, որ նոյն վանքէն հոն կ'ապաստանէր — Պետրոս Կուրուցին (Դիւան, Ժ., էջ 540, 512, 533. Արեւելք, 1899, Թ. 3994):

Ցաւ է որ Առաքելոց վանքի առաջնորդներու պատկերը կարելի չեղաւ ճշդիւ դտակաւ գծել: Աւելի մեծ ցաւ է՝ որ այնքան առաջնորդներու եւ միաբաններու շարքին մէջ երեւան չի գար հոյակապ մատենագիր մը կամ անուանի գործող մը: Մեզի համար կասկածէ դուրս է թէ անոր առաջնորդ չեն՝ Եղիազար կամ Ղազար, Մ. Խորենացի, Մ. Վերծանող, Դաւիթ փիլիսոփայ, Ստ. Ասողիկ եւ Թումայ վարդապետը, զորոնք Ուխտաւորը իբրեւ այն վանքի առաջնորդ կը յիշէ (Արեւելք, 1899, Թ. 3994, հմմտ. վերը):

գ. Զանազան տեղեկութիւններ

*Վերջին տարիները Ղազարու վանքի մէջ նախակրթարան մը բացուած էր (Արեւելք, 1888, Թ. 1271)։*

*Մուշի ամէնէն շատ ու ընդարձակ Թեմ ունեցող վանքերէն է այս՝ «Թեմ վանացս են գիւղօրէք հարաւային կողման Մեղրագետոյ, սկսեալ ի Մշոյ, յարեւելս կոյս մինչեւ ցանդ, ուր աւարտի դաշտավայրն» (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 236) կամ «Ի Թեմի սորա են գիւղօրայք, որ անկանին ի հարաւակողմն Մեղրագետոյ, սկսեալ ի Մշոյ մինչեւ ի գիւղն Աւզուտ, նաեւ վիճակք Սասուն եւ Ծառախ» (Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 189. հմմտ. եւ վերը)։ Մատին Առաքելոյ վանքն ալ Ս. Ղազարի ենԹարկուած էր (Սարգիսեան, Մայր Ցուց., էջ 480)։ Կը տրամադրէր վարելահողերու, հերկ ու խոզանի, այգիներու, անտառներու, ջրաղացներու, նաեւ վակեահի եւ անտեսատան վրայ (Արեւելք, 1887, Թ. 1113)։ Հարուստ էր եւ ձեռագիրներով (Սրուանձտեանց, Հնոց Նորոց, Կ. Պ. 1874, էջ 27—28. Արեւելք, 1887, Թ. 1114, 1890, Թ. 1957. Սուրհանդակ, 1901, Թ. 693. Բիւզանդիոն, 1908,*

Թ. 3500· Արեւել. Մամուլ, 1884, էջ 65· Սարգիսեան, Մայր Ցուց., Բ., էջ 435, 468, 477· Արշալոյս Արարատեան, 1868, էջ 863)։

Ղազարու վանքը ըլլալով նաեւ սիրուած ուխտատեղի այցելուներէն շատ նուէրներ կը ստանայ (Արեւելք, 1887, Թ. 1113· Արաքս, 1893, Ա., էջ 39—40), եւ անոնց կը ցանկայ, վասն զի ստէպ նեղ կացութեան կը մատնուի, ծանր տուրքերու եւ պարտքերու տակ կը հեծէ։ Նմանապէս ոստիկանական խուզարկութեան ենթարկուած է (Արաքս, 1890, էջ 278· Արմէնիա, 1888, Թ. 58 եւ 63· Հմմտ. եւ Բիւզանդիոն, 1900, Թ. 989, ուր Մուշի միւս վանքերու անձուկ դրութիւնը կը ներկայացուի)։ Մեծ Եղեռնի ատեն անոր եկեղեցական եւ ուրիշ շարժուն հարստութենէն մաս մը Մուշի մէջ ի պահ կը դրուին, սակայն յափշտակող ձեռքերու մէջ կ'իյնան, իսկ վանքը կողոպտուած եւ գրեթէ քարուքանդ եղած է (Արարատ, 1916, էջ 571—572 եւ 581 եւ Պայքար, 1924, Յուլ. 1)։ Գեղակերտ դուռը տարուած է Երեւանի Թանգարանը։

Առաքելոց վանքը ազատագրական շարժումով հռչակուած է (Հմմտ. Առաքելոց վանքի կռիւը, պատմեց Զօրավար Անդրա-

*նիկ, Պօսթըն, 1924. Հմմտ. եւ Տէր–Պարսամեան Եղիշէ քհ., Տարօնոյ ինքնապաշտպանութիւնն ու ջարդը, Ֆրէզնօ 1920)։*

## 6. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԵՐԸ

*Մուշի գաւառին սահմաններուն մէջ են Խոծոծվանք, Աւզուտ եւ (Մանազկերտի) Գառաճա գիւղերու Ս. Աստուածածին վանքերը, որոնք ամէնքն ալ աւերակի կոյտերու վերածուած են շատոնց (Մասիս, 1903, էջ 441)։*

## 7. ԱՐԱԳԱՅ ՎԱՆՔԸ ԿԱՄ ԱՐՔԱՎԱՆՔԸ

*«Արագայ վանք կամ Արքավանք անուն վանքն ալ եկեղեցին եղած է այժմ համանուն Արքաւանք գիւղին» (Լումայ, 1898, Բ., էջ 132)։ Մշոյ դաշտի մէջ (Հմմտ. Էփրիկեան, Բնաշխ. Բառն. Ա., էջ 344)։*

## 8. Ս. ԱՐԻՍՏԱԿԷՍԻ ՎԱՆՔԸ

*Տարօնի Թիլ աւանէն կէս ժամ հեռու լերան մը բարձունքին կանգնած է Սուրբ*

Արխատակէսի վանքը, ուր պեղումներով 1911ին երեւան հանուած են անոր եկեղեցւոյն խորանը, երկու ոսկեայ խաչ, վակաս մը եւ ուրիշ հնութիւններ (Արեւելք, 1911, թ. 7633—7636)։

## 9. ԳԱՍՊԱՐԻ ՎԱՆՔԸ

Մուշի արեւելեան կողմը եւ անկէ կէս ժամ հեռու։ Կ՚աւանդուի՝ թէ հոն թաղուած ըլլայ Գասպար մոգը։ Ամայի (Մասիս, 1903, էջ 424, Լուսարարեան, Գաւազանագիրք, էջ 121—124)։

## 10. ԴՈՆԵՎԱՆՔ

Տուրուբերանի Հարք գաւառին մէջ կայ Դոնեվանք անուն գիւղ մը, ուր «ընդ հովանեաւ սրբուհու Աստուածածնիս ի հայրապետութեան սրբասնեալ... տէր Աբրահամու» 1316ին Աւետարան մը կը գրուի (Սարգիսեան Հ. Բ., Մայր Ցուց., Ա., էջ 465. հմմտ. եւ Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Ա., էջ 609)։ Սակայն կարելի չէ ստուգօրէն ըսել թէ այն գիւղին մէջ վանք եղած ըլլայ, վասն զի

«վանք» վերջաւորութեամբ Հայաստանի մէջ քիչ գիւղ չկայ։

## 11․ Ս․ ԳԷՈՐԳԻ ՎԱՆՔԵՐԸ

Ս․ Սարգիսի նման՝ «ատենահաս» ու «արագահաս», Ս․ Գէորգին Տարօնի մէջ քանի մը վանքեր նուիրուած են․

ա․ Ս․ Գէորգի վանք․ — Մուշի դաշտին Ապըլպար գիւղին արեւելեան կողմը, օժտուած ընդարձակ հողերով, բայց անշքացած (Մասիս, 1903, էջ 424)։

բ․ Ս․ Գէորգի վանք․ — Հունուտի մէջ, կոչուած նաեւ Քարավանք (անդ, էջ 441)։

գ․ Ս․ Գէորգի վանք․ — Մշոյ դաշտին Պաղլու կամ Պարեխ գիւղի կշտին, արեւմտեան կողմը։ Աւերակ։ Պարիսպը նորոգուած ՌՄԹ թուին (անդ, էջ 424)։

դ․ Ս․ Գէորգի վանք․ — Մանազկերտի Պօստանխանէ գիւղին մերձ (անդ՝ էջ 441)։

ե․ Ս․ Գէորգ անունով մատուռ մը եւ ուխտատեղի մը կայ Մուշէն 2½ ժամ հեռու Սուլուխ գիւղի եւ Արածանիի մօտ, բայց չեմ կարծեր որ մենաստան կամ վանք եղած ըլլայ (Արեւելք, 1901, Թ․ 4691)։

## 12. ԳՐՍԱՅ Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍԻ ՎԱՆՔԸ

*Նազուկայ լճի հիւսիսային ափին, Գիլս գիւղի դիմաց աւերակ վանք, որուն ծառերը սրբազան կը համարուին (Ազգր. Հանդ.* 1899, 1, *է, էջ* 32)*. հմմտ. եւ Բուլանըխ կամ Հարք գաւառ, հաւաքեց Բենսէ եւ Հրա. Լալայեանց, Ե., Թիֆլիս* 1901, *էջ* 30)։

## 13. Ս. ԴԱՆԻԷԼԻ ՎԱՆՔԵՐԸ

*Դանիէլ մարգարէի անունովը Տարօնի մէջ քանի մը վանք կառուցուած է։*

*Անոնչան վանքեր եղած են Արծուիք գիւղի (նաեւ Մար Դանիէլի վանք կոչուած) եւ Մանազկերտ աւանի մերձ գըտնուած Ս. Դանիէլի վանքերը (Մասիս,* 1903, *էջ* 441)։ *Բայց անուանի վանք հանդիսացած է Մուշի հիւսիսային կողմի Պուլանըղ կամ Պուլանուխ վիճակի*[17] *Կոփ գիւղի Ս. Դանիէլի սիրուն վանքը, որ պարզապէս անուանուած է Կոփի վանք (Ալիշան, Տեղագիր Հայոց Մեծաց, պր.*

[17] *Տարուբերանի «Հարք գաւառը, այժմ Բուլանըխ, սահմանակից Մանազկերտի, Խլաթի, Տարօնի եւ Խնուսի» (Ազգր. Հանդ.* 1899, *էջ* 11. *Սրուանձտեանց, Համով Հոտով, էջ* 99—100)։

51, էջ 45· Նոր Հայաստան, էջ 200· Մեղու Հայաստանի, 1883, Թ. 112· Միրախորեան, Ուղեւորութիւն, Գ., Կ. Պ. 1885, էջ 71—72): Շինուած է «Յանուն սրբոյ ծերոյն Դանիէլի...[18] եւ գերեզման նորա ի մէջ եկեղեցւոյն» (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 223): Իբրեւ թէ Դ. դարուն հիմնուած եւ այն՝ Լուսաւորչաչէն: Բարձրադիր: Եկեղեցին փոքր եւ առանց զանգակատան (Ազգր. Հանդ. 1899, Ե., էջ 29): Միաբաններու եւ ուխտաւորներու համար բաւական թուով սենեակներ կառուցուած: Պարսպապատ:

Ս. Դանիէլի վանք — եկեղեցին վերանորոգուած է ՌՃԾ թուականին՝ «Վերստին նորոգեցաւ եկեղեցիս կաթողիկէ ձեռամբ Զխարացի Մկրտիչ վարդապետին եւ ճարտարապետութեամբ Բաղէշցի Սիմոնին թվ. ՌՃԾ» (Յառաջ, 1911, Թ. 31):

Հոս թաղուած է Բագրեւանդի Ս. Յովհաննէս վանքի առաջնորդը: Անոր տապանագիրն է՝ «Այս է տապան Խաչատուրի, քաջաքարոզ վարդապետի, միա–

---

[18] «Ի Մանազկերտ մաւտ ի գիւղն Կոփ, ուր Ս. Դանիէլի կեցոյց էր» (Արարատ, 1905, էջ 558): — «Կոփ գիւղի հարաւային կողմը աղբիւրակի մը քով շինուած է փոքրիկ վանք մը» (Գործք, օրաթերթ, 1900, էջ 114):

*բանին Ուչ–քիլիսի, ի Թիլին Հայոց...» եղծուած* (*Ազգր· Հանդ·* 1899, *Ե·*, 31, *կամ Բենակ, Բուլանըխ կամ Հարք գաւառ, Թիֆլիս* 1901, *էջ* 29)։

*Միաբաններէն եղած են՝ Վարդան վարդապետ, Յարութիւն Շահինեան, Պետրոս Պլէճ* (*Պէրպէրեան, Պատմութիւն Հայոց, Կ· Պ·* 1871, *էջ* 45· *Արարատ*, 1903, *էջ* 166· *Արեւելք*, 1884, *Թ·* 214 *եւ Բիւզանդիոն*, 1904, *Թ·* 2258, 1908, *Թ·* 3507)։

*Ունեցած է վարժարան եւ չատ կալուած։ Ենթարկուած է Մշոյ Ս· Կարապետի* (*Միրախորեան, Ուղեւորութիւն, Գ·*, *էջ* 71, *Բիւզանդիոն*, 1908, *Թ·* 3507· *Բազմավէպ*, 1900, *էջ* 134· *Ազգր· Հանդ·*, 1899, *էջ* 31· *Յառաջ*, 1915, *Թ·* 31)։

## 14· ԴԱՂՕՆԱՅ ՎԱՆՔԸ

*Մուշի հիւսիսային կողմն է Դաղօնայ վանքը*[19], *ուխտատեղի։ «Տեղացիք կ՚ըսեն, թէ Ս· Տարբօյի գերեզմանն է հոն»* (*Մասիս*, 1903, *էջ* 440)։

---

[19] *Ծանօթ է Տաղօնք կամ Տարօն քաղաքը* (*Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ* 192)։

## 15· Ս· ԵՂԻԱՅԻ ՎԱՆՔԸ

*Խլան գաւառակի Հեղին գիւղի մերձ։ Սիրուած ուխտատեղի, թէեւ շատոնց աւերակոյտի վերածուած (Մասիս, 1903, էջ 441, ճշդագոյն կ'ըլլար այս վանքին Սալնաձորի կամ Բաղէշի վանքերու տակ դասաւորումը)։*

## 16· ԵՂՐԴՈՒՏԻ Ս· ՅՈՎՀԱՆՆԷՍԻ ՎԱՆՔԸ

### ա. Եղրդուտի Ս. Յովհաննէսի վանքի նկարագրութիւնը

*Մուշի արեւմտեան կողմը եւ անկէ երեք չորս ժամ հեռու, Ս. Կարապետի վանքի դիմաց, «Եղերդից» երկրին մէջ (Տաշեան Հ. Յ., Մատենագրական մանր Ուսումնասիրութիւնք, Բ., Վիեննա 1901, էջ 316), Սիմ լերան կամ Սեւ սարի վրայ, Եփրատի հարաւակողմը հիմնուած է Ս. Յովհաննէսի վանքը (Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 198. Բիւրակն, 1898, էջ 27. Բիւզանդիոն, 1908, Թ. 3500)։ Կարապետ Բաղիշեցին անոր տեղը կը սահմանագծէ՝*

*«Եղեւ սա գիծ իմում մտաւն,*
*Եւ անարուեստ գոլ գրչութեան*

Հռչակաւոր վանս գովական
Որ Եղրդուտ կոչիւր անուան
Որ ի սահմանս տարաւնեան
ԶԵփրատ ունի իւր յանդիման,
Դիմահայեաց արեւելեան
Եւ յահեկէ զՄուշն աւան»:

(Հանդէս Ամսօրեայ, 1937, էջ 338—339):

Ս. Յովհաննէսի վանքին դիրքը աննման է: «Զորս կողմերը պաղ աղբիւրներ ու անտառ, որուն մէջ կ՚աճին գլխաւորապէս կաղմխի, կաղնի, եղւըրտի ծառեր, ցախ կամ թաւ[20]: Այս թաւերուն վրայ է որ ամէնէն աւելի շատ կ՚իջնէ Մշոյ հռչակաւոր դազպան...: Օդը սքանչելի է, բայց ցուրտ...: Տեսարանը՝ աննկարագրելի է:

Գրեթէ Մշոյ ամբողջ դաշտը հարթ դեանի մը պէս, իր կանաչազեղ մշակուած արտերովը կը պարզուի աչքիդ առջեւ, ինչպէս հարթավայրի մը դունաւոր յատակագիծը թղթին վրայ: Արածանին ու Մեղրագետը օձապտոյտ կ՚անցնին եւ սասնեակներով գետակներ կուլ կու տան

---

[20] Կիւլէսէրեան կը գրէ՝ «Կարծես արծուի բոյն մըն է մայրաքաղաք» (Կոյրտ Յովհ. Պատրիարք, Վիեննա 1904, էջ 157):

իրենց ճամբուն վրայ։ Գիւղերը ընդհանրապէս ծառազուրկ հողի կոնաձեւ մեծ կոյտերու պէս հոս հոն կղզիացած են ընդհանուր կանանչութեան մէջ։ Ես չեմ կրնար երեւակայել ամարանոց մը այսքան գեղեցիկ, հիւանդանոց մը այսքան առողջարար եւ սրբավայր մը այսքան յափշտակիչ, ինչպէս է Ս· Յովհաննու վանքը» (Բիւրակն, 1897, էջ 28· հմմտ· Լուսարարեան, Գաւազանագիրք Մշոյ Ս· Կարապետի վանքի, էջ 135—136)։

Մշեցիներու եւ հարեւան երկիրներու այնքան սիրուած այս վանքը կնքուած է գրաւիչ չորս անուններով եւ գեղեցիկ աւանդութիւններով աւելի դիւթիչ ներկայացուած։

Կոչուած է ա· Ս· Յովհաննէսի վանք, վասն զի Գր· Լուսաւորիչ հոս կը կանգնէ տաճար մը, ուր կը զետեղէ Յովհ· Մկըրտիչի եւ Աթանագինէի մասունքներէն (Զենոբ Գլակ, Պատմութիւն Տարօնոյ, էջ 39· Saint-Martin, Mémoires, II, էջ 430· Մասիս, 1930, Թ· 22, էջ 350· Բիւզանդիոն, 1906, Թ· 3128)։

Անուանուած է բ· Ս· Ծիլ իւղոյ վանք, վասն զի աւանդութեան համեմատ Բարթուղիմէոս եւ Թադէոս առաքեալները

իրենց հետ Հայաստան կը բերեն եւ եղրդի կամ եղրդո(ւ)տի ծառին արմատին մերձ կը պահեն փինիկեան ձեռագործ կանաչ գոյնով այն շիշը, որուն մէջ կը գտնուի եղեր այն իւղը, որով Մովսէս՝ մարգարէները, Սամուէլ՝ Դաւիթ, Մագդաղինացին՝ Քրիստոս եւ Քրիստոս՝ Առաքեալները կ'օծէ (հմմտ. Գր. Մակուեցիի կոնդակը, Արեւելք, 1889, Թ. 1681. Մասիս, 1903, էջ 358. Բիւզանդիոն, 1906, Թ. 3127, 1908, Թ. 3500. Աղաւնունի, Հայ Երուսաղէմ, էջ 503. Տաշեան, Մայր Ցուց. Վիենն. Մխիթ. Մատ., էջ 659. Սիւրմէեան, Մայր Ցուց. հայ. Ձեռ. Հալէպի, Բ., էջ 123. Լուսարարեան, Գաւազանագիրք, էջ 121—126):

Յորջորջուած է գ. Եղրդուտի վանք, որովհետեւ վերոյիշեալ իւղն ու անոր հետ եղած միւս սրբութիւնները — կենաց փայտէն մաս մը, Մարիամ Մագդաղինացիին ձկոյթը, Ս. Յովսէփ Աստուածահօր աջը եւ համանուն Արեւմաթացիին բազուկը — Հայաստանի առաքեալները եղրդուտ ծառին տակ կը պահեն եւ հրաշքով երեւան կու գան: Հ. Ն. Սարգիսեան կը գրէ՝ «Առ որմովք մենաստանին՝ արտաքոյ է մատուռն փոքրիկ եւ առ նմա ծառ եղրդուտի,

յորդ անուն կոչի երբեմն եւ մենաստանն ի յիշատակարանս գրոց Եղրդուտի վանք» (Տեղագրութիւնք, էջ 236. հմմտ. եւ Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, էջ 686)։ Վանական վարդապետին Պատասխաններուն մէջ կայ՝ «Ծիչ խուղոյն՝ երկիրն Տարօնու (sic) ի վանքն Եղերդից է» (Սիւրմէեան, Մայր Ցուց. հայ. Ձեռ. Հալէպի, Բ., էջ 123)։

Աւանդութեան մը համաձայն այս ծառը որ, ամառ ձմեռ կանաչ է եւ տեւալից, արծիւ մը բերած տնկած է (Յառաջ, 1913, թ. 9)։ Գեղամ անոր մասին հետեւեալ տեղեկութիւնները կու տայ՝ «Եղրդուտը մշտադալար ծառ մըն է, միջակ մեծութեամբ՝ փոքրատարած ծառերու տեսակէն։ Մինչեւ հիմայ կ'ապրի այս ծառուկը վանքի արեւելքը՝ տաճարին քովիկ, մշտահոս աղբիւրի մը շուրջ՝ իր խնկենի շուքով։ Գրեթէ միակն է իր տեսակին մէջ Սիմի այդ շղթային վրայ եւ մասնաւոր խնամքով կը պահպանուի։ Բոլորտիքը ցանկով եւ պատով պատսպարուած է, արմատին քովեր ցան ու ցիր թափուած կը մնան խաչքարերու նշխարներ եւ դերբուկները վաղաշէն մատուռի մը։ Նուիրական է եղրդուտը՝ մանաւանդ

հայ կնիկներու եւ աղջիկներու, ցաւագար հիւանդներու, որոնք ամէն տարեն երբ այցելեն՝ լաթերով պիտի պատատեն անոր ոստն ու տերեւը — ցաւն ու չարը հոն թողլու համար եւ կը տանին ջերմեռանդութեամբ անոր դալարի տերեւները եւ թուփերը իբր բուժիչ՝ ախտերու եւ հիւանդութեանց: Կանանչութիւնը այս ծառի խորհրդաւոր մէկ հմայքը կը կազմէ ուխտաւոր երկիւղած ժողովրդին, որ դարերէ ի վեր դիւթուեր է ծառերու սօսափիւնէն, ջերմուկներու խոխոջէն եւ բարձանց ու խորոց սրբութիւններէն» (Մասիս, 1903, Թ. 22, էջ 349—350): — Եղրդուտի վանքը կոչուած է նաեւ Եղէգնի վանք՝ «Եւ շիշ իւղոյն երկիրն Տարօնոյ, ի վանքն Եղէգնի» (Թորոս Աղբար, Ա., էջ 293), որ սակայն դուցէ շատ կոշտ աղաւաղումն է Եղրդուտի[21]:

Զորրորդ անունն է (դ). Արծուաբեր Ս. Նշանի վանք: Կ'աւանդուի՝ թէ հովիւ մը Լուսաբար վարդապետին հետ եկեղեցի կը մտնէ եւ գեղեցիկ տուփ մը հոն գտնե-

---

[21] Հ. Էփրիկեան կը գրէ՝ «Վանքս կը կոչուի նաեւ Եղեգնի Ս. Յովհաննէս եւ Շիշ իւղոյ վանք» (Բնաշխ. Բառարան, Ա., էջ 686. հմմտ. վերը):



Ս. Կարապետի վանքը, հարաւէն:

լով զայն իր գրպանը կը սահեցնէ։ Զգո՛յշ եւ ծածո՛ւկ։ Ապա գոհ ու ժպտուն՝ կը դառնայ իր տուն։ Կ'ուզէ գողօնը վայլել, սակայն ափշահար կը մնայ, երբ տուփին մէջ խաչի մասունք կը գտնէ։ Յուսախաբութենէն եւ յուզումէն՝ զայն թոնիր կը նետէ։ Թոնիրին կրակը բռնկելով՝ վեր կը բարձրանայ եւ ամբողջ տունը հուրի ճարակ կը դառնայ, մինչ խաչը կը մնայ անեղծ ու անարատ։ Եւ ահա արծիւ մը կը խոյանայ ու զայն փախցնելով կը տանի եղրդուտի ծառին վրայ կը հանգչեցնէ։ Լոյս ու շող՝ ուշադրութիւն կը հրաւիրեն։ Քահանաներ եւ հաւատացեալներ խաչը մեծ հանդիսութեամբ եկեղեցի կը փոխադրեն (Ծերբակէի Տարգիյէ, 1901, Թ. 4905. Մասիս, 1903, էջ 359. Արեւելք, 1889, Թ. 1681. Բիւզանդիոն, 1906, Թ. 3127. Կիւլէսէրեան, Կոլոտ, էջ 156—157)։

Հ. Ինճիճեանի համաձայն ամբողջ վանքը Արծուաբեր չէ անուանուած, այլ մենաստանէն դուրս, բայց անոր մօտ գտնուած, մատուռը, «ուր պահի աւետարան հին, զոր արծուոյ ինչ բերեալ ասեն» (Նոր Հայաստան, էջ 198)։ Կիւլէսէրեան այս վարկածին կը հակառակի՝ «Այդպիսի աւետարան մը չկայ հոն, որ պահուի, ար-

դէն լքուած մատուռ մըն է» (Կոլտա, էջ 157 ծն.): Սակայն Ինճիճեանի ժամանակ Աւետարանը կրնար հոն ըլլալ եւ Հ. Սարգիսեանի նկարագրութենէն այնպէս կը թուի՝ թէ իր ատենը մատուռը դեռ լքուած չէր (Տեղագրութիւնք, էջ 236): Բայց պէտք է շեշտել, թէ աւանդութիւնը աւելի Ս. Խաչի մասունքը եւ ոչ թէ աւետարանը նկատի ունի:

Ս. Յովհաննէսի վանքին եկեղեցին կամ տաճարը զանազան բաժանումներ ունի կամ աւելի ճիշդը քանի մը վկայարաններէ եւ խորաններէ (մատուռներէ) բաղկացած՝ կազմուած է[22]: Ս. Յովհաննէսի ձօնուած վկայարանը տոհմիկ ճարտարապետութեան նմոյշ է, անսիւն եւ օրգնիկ կամարով՝ ասհակաչէն: Մեծութեամբ եւ բարձրութեամբ գրեթէ հաւասար Մուշի Ս. Կարապետի վանքին: Տանիքը՝ օրգնիկ կամարին համաձայն՝ բարձրացած եւ սրբատաշ քարերով ագուցուած, այս է տաղաւար կամ սաղաւարտ: Հաստ պատե–

[22] «Եկեղեցին երեք եկեղեցեաց առընթերակաց զուգաւորութիւն մըն է, երեքն ալ ընդարձակ նախասրահ մ'ունենալով առաջակողմը» (Ալպէր Տըլպէ եւ Գէորգ Փերոտ, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա, Վիեննա 1892, էջ 61): — Եկեղեցւոյն կաթողիկէին կողմը կ'ասեն կը տանի Աղթամարին Գէյ (Նոր Հայաստան, էջ 198):

րով չէնք է եւ ձուաձեւ կաթուղիկէով օժտուած (Բիւզանդիոն, 1906, թ. 3127· Բիւրակն, 1898, էջ 28· Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 236)։ Վկայարանին սեղանն ու խաչկալը հին են։ Սեղանին աջն ու ահեակը կան աւանդատներն անօթներու եւ զգեստներու համար (այսպիսի աւանդատներ կան նմանապէս Ս. Աստուածածնի վկայարանին եւ Ս. Ստեփանոսի տաճարին մէջ)։

Այս վկայարանը տակաւ վնասուած է, բայց բարեբաստօրէն նորոգուած, մանաւանդ Առաքել եւ Մկրտիչ վարդապետներու հոգատարութեամբ (Բիւզանդիոն, 1906, թ. 3127)։ Անոր աջակողմն է Ս. Յովհաննէսի դամբանատունը, անշուք եւ անպաճոյճ։ Իսկ ասոր հանդիպակաց կողմն է՝ Ս. Աթանագինէի դամբանատեղին։

Ս. Յովհաննէսի վկայարանէն ժամանով մը կը մտնենք Ս. Աստուածածնի վկայարանը, որ մեծութեամբ անոր հետ կը մրցի։ Ունի գմբէթ մը. որուն վրայ արձանագրուած է՝ «Ողորմութեամբ Աստուծոյ շինեցաւ կաթողիկէս ձեռամբ Խանումեան Մկրտիչ վարդապետի թուին ՌՄԾԸ (1809)»։

Անոր աջակողմը կը ցուցնեն Ս. Գրիգորի ճգնարանը կամ մատուռիկը (Բիւզանդիոն, 1906, թ. 3128):

Ս. Աստուածածնի ժամատան կողմնակի մուտքէն կարելի է երթալ Ս. Ստեփանոսի տաճարը, որ «վայելուչ ճարտարապետեալ է, բարձր եւ գմբէթաւոր» (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 236): Հայակապ՝ հանգոյն Էջմիածնի, բայց անկէ պզտիկ: Կաթուղիկէն՝ ամբակուռ, բարձրակառոյց եւ մեծ (Բիւզանդիոն, 1906, թ. 3128): Ունի փայտէդրուագ սիրուն խաչկալ մը բարձկեկ սեղանի մը վրայ, որ գեղեցիկ բեմին հետ տաճարին լաւագոյն զարդերէն է: Ձախակողմեան աւանդատան մէջ խաչկալի մը վրայ գրուած է՝ «ՈԲ (1153) Յովսէփ հանգուցեալ ի Քրիստոս Յիսուս, զՍարգիս գծողս յիշեսջիք»:

Նկարագրուած երեք սրբավայրերն ալ Սարգիս վարդապետի բարոյական եւ նիւթական օժանդակութեամբը կը վերանորոգուին՝ «Շնորհօք եւ ողորմութեամբ Հոգւոյն ողորմածի շինեալք եղեն յարկքս երեքին Ս. Ստեփաննոս, Ս. Աստուածածին եւ Ս. Յովհաննէս մեծ Ամլորդին յառաջնորդութեան տէր Պետրոսի սրբոյ ուխտիս վերապետի արդեամբ Սարգիս

վարդապետի, զայս փրկութեան հոգւոյ նորին, նաեւ զվանուցս կողմն հիւսիսին երկպատկեալ բոլորովին, արդ զուարթագին տուք զողորմին, թուին ՌՃԾԶ» (Արեւելք, 1889, թ. 1681. Բիւզանդիոն, 1906, թ. 3127)։ Արձանագրութեան մէջ տրուած այս տեղեկութիւնը կը հաստատէ Կոլոտ, երբ կ'ըսէ՝ «Ի սոյն ամի (1706) Սարգիս վարդապետն, որ էր ի մեր դասատնէս, այր խոհեմ յոյժ եւ քաղցրաքարոզ՝ նորոգեաց սրբատաշ քարամբք կրամածիւք զԵղրդուտի լուսաւորչաշէն վանաց զատգերն հանդերձ այլովք շինուածովք» (Կիւլէսէրեան, Կոլոտ, էջ 156. Արարատ, 1905, էջ 719)։ Սարգիսի ընտիր գործունէութիւնը Եղրդուտի միաբաններուն դժբախտաբար հաճելի չըլլար՝ «Եւ անընդունակ լեալ ի համանմանեաց վերադրելոց, զբովանդակ շինուածոյն ծախսն ինքն հոգայ եւ դարձաւ յառաջին վանսն մեր եւ անտի փոխեցաւ առ բաղձալին իւր» (անդ, էջ 156)։ Անոր նորոգութիւնները լաւ եւ հաստատուն էին եւ երկար կը տեւեն։ Բայց 1866ին երկրաշարժ մը բաւական մեծ վնասներ կը պատճառէ եւ սակայն հազիւ քանի մը դոյզն նորոգութիւններ տեղի կ'ունենան (Արեւ-

ելք, 1889, թ. 1681 եւ Բիւզանդիոն, 1906, թ. 3127)։

Գաւիթին մերձ են զանգակատունը եւ Սարգսի վկայարանիկը, որ այժմ մթերանոցի վերածուած է։

Ժամատունը Ս. Յովհաննէսի վկայարանին առջեւը շինուած է եւ զուրկ է ճարտարապետական որ եւ է գեղեցկութենէ։ Ծածկը քարեայ չորս կլոր սիւներու վրայ նստած է։ Հին շէնք է։ Զունի սեղան ու խաչկալ։ Երբեմն փլատուած եւ այժմ նորոգուած՝ «Զշինող ժամատանս զԳրիգոր վարդապետս ամենայն միաբանիւք, որք երախտիք ունին ի սմա յիշեսջիք ի Քրիստոս Աստուած եւ ողորմի ասացէք Թուին ՁԿ» (Բիւզանդիոն, 1906, թ. 3127)։

Եկեղեցւոյն գաւիթը մտնելու համար հարկ է զանգակատան խարխուլ կազմող դռնէն անցնիլ։ Այս դրան կամարը շատ գեղեցիկ է եւ զայն կառուցանողին պատիւ կը բերէ։ Կամարը կազմող քարերը ընտրուած են՝ սեւ, դեղնորակ, գորշ, կարմրորակ եւ այլատակ կակուղ կրաքարէ եւ այնպէս մը տաշուած եւ իրարու քով շարուած, որ արտաքին ճաշակով գեղեցիկ բարձրաքանդակներ կը ներկայաց-

նեն: Այս գրան կամարը այնքան շատ նմանութեան ունի Բաղէշի Տարափխա Ծամխալի կոչուած մզկիթին գրան հետ, որ կարելի է խորհիլ՝ թէ մէկ մտքի եւ ձեռքի գործ ըլլան եւ կամ՝ մին միւսին նմանութեամբ կերտուած (Բիւրակն, 1898, էջ 27—28):

Գաւիթը որ եւ է արժէք չի ներկայացներ, բայց զանգակատունը գմբէթաւոր է եւ սիւնազարդ, նման՝ Ս. Կարապետի զանգակատան: Շինուած՝ կամ ճշդագոյնս՝ նորոգուած է 1828ին՝ «Արդեամբ եւ ծախիւք խալֆայ Պօղոսի, բազում աշխատութեամբ Ղազար վարդապետի, միաբանից եւ գիւղօրէից ժողովրդեան» (Բիւզանդիոն, 1906, Թ. 3127 եւն եւն):

Ս. Ստեփանոսի տաճարին մերձ կայ եղեր գերեզմանատուն մը՝ վանահայրերու եւ ականաւոր անձերու համար եւ վանքին մէջ գտնուած է շիրիմաքար մը, որ 700 տարուայ հնութիւն ունի (Բիւզանդիոն, 1907, Թ. 3159):

«Առաքելոց վանքի նման այս կրօնական հաստատութիւնն ալ մի բոլորշի վանքէ կը բաղկանայ, ունի երեսունէ աւելի սենեակներ — կրկնայարկ — բակին մէջ են եկեղեցին, առաջնորդարան,

*միաբանաց խցքերը, դպրոցն, ախոռատունը, անտեսարանը, եւ փուռ մի հացի պատրաստութեան համար: Բակէն դուրս չկան ուրիշ շէնքեր· միայն Ս. Գէորգայ մատուռն յարեւելս եւ ոչխարաց գոմերն»* (*Արեւելք*, 1889, *թ.* 1681· *Բիւզանդիոն*, 1906, *թ.* 3128· *Նոր Հայաստան*, *էջ* 198· *Բնաշխ. Բառարան*, *Ա.*, *էջ* 686):

*Վարժարանը իր շէնքովը, ուսումնական մակարդակովը երբեք արժէք չէ ներկայացուցած, թէեւ բաւական կանուխէն սկսած* (*Մասիս*, 1872, *թ.* 1257· *Արեւելք*, 1889, *թ.* 1681· *Սուրհանդակ*, 1901, *թ.* 669· *Ճերիտէի Շարգիյէ*, 1901, *թ.* 4905· *Բիւզանդիոն*, 1906, *թ.* 3128, 3141· *Ազատամարտ*, 1910, *թ.* 337 *եւ Ա. Տըվըլէ եւ Գ. Փիսոն*, *Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա*, *էջ* 61):

## բ. Հիմնադրութիւն, առաջնորդութիւն եւ միաբանական կեանք

*Եղրդուտի Ս. Յովհաննէսի վանքին հիմնադրին անունը կարելի չէ տալ, ինչպէս եւ անոր հիմնարկութեան ժամանակը որոշակի նշանակել: «Աւանդութեամբ կ'ըսուի թէ Թադէոս սուրբ Առաքեալէն*

հիմնուած է վանքս, բայց սուրբ Վրթանէսին կը տրուի այս վանքին հիմնարկութիւնը» եւ կամ՝ Գր. Լուսաւորչին[23] (Բիւզանդիոն, 1900, թ. 1001, 1908, թ. 3500. Բիւրակն, 1898, էջ 27. Արեւելք, 1889, թ. 1681)։ Գր. Մակուեցիի կոնդակը — սխալմամբ կոչուած նաեւ Գր. Լուսաւորչի կոնդակ — գրուած 1445ին եւ խմբագրուած 1588ին (Բիւզանդիոն, 1906, թ. 3127), վանքին շինութեան սկսողը կը ճանչնայ Թադէոս Առաքեալը, բայց հիմնադիրը կ'ընդունի Ս. Գր. Լուսաւորիչը եւ զայն զարդացնողներ ու կալուածներով օժտողներ՝ Ներսէս Պարթեւ, Ներսէս Շինող եւ Գր. Տաթեւացի (հմմտ. վարը)։

Եղրդուտի մէջ ժամանակ մը կը պահուէին զոյգ մը հրովարտակներ, որոնցմէ մէկն է Մուհամէտի կամ Ալիի կոնդակը, որ վանքին գոյութիւնը Հիճրէթէն յառաջ կ'... գիտէ, վասն զի այդ հրովարտակը տրուած է արաբական թուականէն կանուխ ի շնորհակալութիւն Ս. Յովհաննէսի միաբաններու, որոնք Մուշ գացող Արաբներու

---

[23] Գուցէ Խորենացիին սա խօսքերու հետեւանքով՝ «Ի ժամանակս վախճանին Տրդատայ հանդիպեցաւ մեծն Վրթանէս ի վկայարանին սրբոյն Յովհաննու, որ ի հօրէն նորա շինեալ էր ի Տարօն» (Պատմ. Հայոց քնն. հրտ., էջ 258. հմմտ. Զենոբ Գլակ, Պատմ. Տարօնոյ, էջ 39)։

պաշտպան եղած են (Արեւելք, 1889, թ. 1682 եւ այս հակապատմականէն՝ արդէն անոր կեղծիք ըլլալը յայտնի է): Միւս հրովարտակն է Լէնկթիմուրինը, «որ երբ Մշոյ դաշտավայրը բանակած էր վանաց մեծաւորին այցելութիւնն ընդունեցաւ: Ի փոխարէն գնաց ինքը Լէնկթէմուր նոյն սուրբ Յովհաննէս վանաց այցելութեան, ուր այնպէս հիւրամեծար ընդունելութիւն գտաւ, որ ըսաւ վանահօր, խնդրել ինչ որ ուզէ: Վանահայրն ըսաւ՝ որ կը խնդրէ միայն խաչ մը լի հայ գերեօք: Լէնկթէմուր այս դոյզն խնդիրքը շնորհեց ժպտելով: Բայց ո՛րչափ զարմացաւ, երբ տեսաւ որ նոյն բանտէն որ հայ մը խաչը կը մտնէր արեւայ կը դառնար եւ պատուհանէն դուրս կը ցատկէր[24]» (Ա. Տըվըլէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա, էջ 62. Արեւելք, 1889, թ. 1862, ուր կ'ըսուի թէ Թիմուր-Լէնկ վանքին Փորրկայլի գաւառին մէկ խաչը մասը կը նուիրէ):

Այս հրովարտակները պատմական որ եւ է հիմք չունին եւ երեւան եկած են վանքին չէնքն ու հողերը եւ միաբանները

---

24 Հմմտ. Աղաւնու վանքը, բանաստեղծութիւն Յովհ. Թումանեանի, Գրական ցոլքեր, Է., Վենետիկ 1944, էջ 79:

թշնամիներէ պաշտպանելու նկատառմամբ ու նպատակով: Գուցէ անոնք եւ կամ հայ թագաւորէ ու իշխանէ տրուած ուրիշ համանմաններ ակնարկուին Գր. Մակուեցիի կոնդակին մէջ յիշուածները՝ «Որք ունէին հրովարտակ թագաւորական, զոր եւ խնդրեցին իսկ ի մէնջ վերստին կարգել հայրապետական մատենագրիս առ ի կրկնակի հաստատութիւն» (Նոտարք, էջ 143. համմտ. եւ վարը): Գր. Մակուեցիի կոնդակը այն բովանդակութեամբ եւ ոճով որ այսօր մեզի կը ներկայանայ, չէր կրնար այդ կաթողիկոսին գրչէն ելլել եւ կամ անոր հրամանով գրուիլ: Այժմեան վիճակին մէջ այդ կոնդակը զոյգ նպատակներ կը հետապնդէ՝ նախ ճշդել Ս. Յովհաննու վանքի հողերն ու անոնց սահմանները — նիւթական եւ իրաւական տեսակէտներով — եւ երկրորդ նշանակել Կարապետ կուսակրօն քահանան առաջնորդ — եպիսկոպոս: Կ՚ընդունիմ որ՝ այդ կոնդակին մէջ ստուգի վանքին հողերու մասին խօսք եղած է, բայց օտար ձեռքի միջամտութիւնը ակնբախ է: Այս տողերը՝ «Եւ յայլ ամենայն բարերարին թեմի, զոր կարգելոյ եւ կանոնաւորելոյ եւ վիճակելոյ մեծն Ներսէս եւ յետ նորա սուրբ Գրիգոր

Տաթեւացի եւ յետ նորա Տէր Գրիգորիս կաթուղիկոսն»: Դարձեալ՝ «Եւ վերստին հաստատեալ ի Յոհան Օձնեցւոյն եւ կրկին կնքեալ ի Գրիգորիս կաթուղիկոսէ» (Նօտարք, էջ 142—143· հմմտ. եւ վարը) չեն կրնար կոնդակագիր միեւնոյն կաթողիկոսէ իր մասին գրուիլ եւ չեն ալ կարող Գր. Ը. Խանձողատի կամ Գր. Թ. Մուսաբէկեանցի մասին առնուիլ, վասն զի պարագաները թոյլատու չեն: Գր. Տաթեւացիի մասին եղած արտայայտութիւններու մէջ ակներեւ են հակասութիւնները — անգամ մը մեռեալ եւ անգամ մը կենդանի կը ներկայանայ:

Կա՛րճ՝ Մակուեցիի ընծայուած կոնդակին մէջ կան հակասութիւններ եւ յաւելուածներ, բայց եւ պատմական ուղիղ կէտեր: Անկէ հաստ կ'ըլլանք՝ թէ վանքը չատոնց հիմնուած եւ նոյն իսկ եպիսկոպոսական առաջնորդութեան բարձրացած է:

Հոս թոյլ տուէք ինձ Գր. Մակուեցիի կոնդակին կարեւոր մասերու յառաջբերումը՝

Շնորհօք... եւ յերջանիկ տիրապետէ սուրբ եւ ընտրեալ Հայոց հայրապետէ տէր Գրիգորիսս Հայոց կաթուղիկոսէ... օրհնութիւն... ծառայեացի դետօրէն ի վե-

բայ ամէնօրհնեալ վիճակաց աշխարհիդ Տարօնոյ: Զոր գրեմք նախ ի մեծահանդէս եւ դերահռչակ... սուրբ ուխտդ Յովհաննու Մկրտչին եւ սուրբ Աստուածածնի տաճարին եւ ի սուրբ Ստեփաննոս Նախավկային եւ ի սուրբ Գրիգորի մերոյ Լուսաւորչին եւ յայլ բազում սրբութեանց որ աստ կան հաւաքեալ: Նախ ի սուրբ Ծիչ խուղոյս, զոր Մովսէս օրհնեաց եւ օծեաց զմարգարէսն եւ զքահանայս եւ զթագաւորսն: Եւ Սամուէլ մարգարէն օծ զԴաւիթ եւ զայլ մարգարէսն: Եւ կինն պոռնիկ եհեղ ի վերայ գլխոյն Քրիստոսի, եւ Յիսուս յետ խաչելութեան օրհնեաց եւ ետ յառաքեալսն եւ սուրբն Թադէոս բերեալ եդ աստ. ընդ նմին եւ զԱրծուաբեր սուրբ Նշանն, որ էր ի կենաց փայտէն: Եւ յետ Յ. եւ ԺԲ. ամաց եբեր սուրբ Գրիգոր Լուսաւորիչն մեր զձախ մաս մարմնոյն սրբոյն Յովհաննու մեծի եւ չինեալ ի վերայ սրբոյն (վանս), զոր այժմ վերաձայնի Ծիչ խուղոյ վանք: Զոր գրեալ է (են) լիակատար Պատմագիրքն եւ Միխայէլ, եւս գրեալ կայ վասն մարմնոյ եւ գերեզմանի սրբոյն Յովհաննու եւ յերկոտասան Առաքելոցն մասանց. եւ Յովսեփայ Արեմաթացւոյ սուրբ խաչէս եւ ի Քրիստափոր

սուրբ Նշանէս։ Եւ ի Տղայ սուրբ Կիրա-կոսէն։ Եւ ի Գէորգայ սուրբ Նշանէս։ Եւ-այլ բազում սրբոց որ աստ կան հաւաքեալ ի պարծանս Հայոց…։ Իջանէ աստուա-ծային ծորումն օրհնութեան արձարձմունք նախախնամութեան սեփհական թեմին եւ վիճակին։ Նախ ի Պլէլ՝ Խորէնք, ի Քասուս, ի Փողրկով, յերկու Ածնուս, ի Յարթխօնք, ի յԱւզարբիր, ի Ծեխ-յանք, ի Ղզլարաճ, ի Տարմածին, ի Մլքա-ջուր, ի Ծաղկունք, ի Հոմիս, ի Յասսոզ, ի Յաւղկունք, ի Կորեկջուր, ի Կծու, ի Խորձախանք, ի Փարխաւ եւ յիւր Մզրէք, ի Վերս, ի Ճաղկնուտ, ի Յասջիշէն, ի Բերդ, ի Քարուտ եւ յիւր մզրէն, ի յԱր-ծինք, ի Քխմուտ, ի Խաչկօնք, ի Սմբատ, ի Սէրկէվիլիկ, ի Մզան, ի յԱսսուսոյ, ի Կարմրիչ, ի Փէշար, ի Ճանաձոր, ի Դղեակն, յԲասպատ, ի յԱրդելք, ի Հէր-քին, ի Քարուտ, ի Յէրէզ, ի Անեաւ, ի Մզակ, ի Սասնէս, ի Յախուժ, ի դխ-զաքաղաքն Լճէ, ի Գումոյ, եւ դղեակն Սեւան, ի Բաղին եւ յիւր Մզրին, ի Թիլ, ի Ցխին, ի Թրախէ, ի Հրեսան, ի Սրաէ, ի Հայնի քաղաք, ի Տղնէ, ի յԱպար, ի Ջաղ, ի Անթղնու, ի Պայրնճնէ, ի յՇոխա-լայիմ, ի յԱղախ, ի Ճումարիկ, ի Նան-

քոս, ի Բարոզ, ի Մշրկիկ, ի Յարօսք, ի Վանք, ի Ձախիզ, ի Հօռնոս, ի Հզրաւ, ի Վանք, ի Թոճրլ, ի Բրքան, ի Զկրշէն, ի Մուֆարղին, ի Ծոռւն, ի Պատման, ի Պօշաթ, ի Պաշմթէ, ի Պաշխոյ, ի Սլէմանի, ի յԱրտոյ, ի Յարխունթ, ի Ծաղիկ, ի Սրխայ, ի Պասմ, ի Պախանոս, ի Պաշմթէ, ի Վռոսպատ, ի Բոյի, ի Բերմ, ի Յոփկ, ի Վանք, ի Ծաճանք, ի Սատնոյ, ի Իշխնձոր, ի Ընկուզնակ, ի Սեւիթ, ի Յարդաւնք, ի Հեզին, ի Յարս, ի մեծ Փառկայ, ի Փոռկայ, ի Սաղաւն, ի Ծաղէք, ի Կրընակ, ի Յաճրօնք, ի Գեղրման, ի յԸնձքար, ի Վանք, ի Մարձոր, ի Կից, ի Յեհոր, ի Հարաւիթոյ, ի Տլերեթաւ, ի Փարրի, ի Կաշուտս, ի Յապատկէս, ի յԱպիզղէ, ի գիւղաքաղաքն Գողկէ եւ իւր գաւառաւքն: Եւ յայլ ամենայն բոլորովին թեմն, զոր կարգեալ է եւ կանոնաւորեալ եւ վիճակեալ մեծն Ներսէս, յետ նորա սուրբ Գրիգոր Տաթեւացի եւ յետ նորա տէր Գրիգորիս կաթուղիկոսն...: Եւ մինչեւ ի յայս հողս էաք եկին սո մեզ առաջնորդութեամբն Աստուծոյ եւ հրաւիրմամբ Հողոյն սրբոյ Տէր Դաւիթ խարբադնազլեան ճգնաւոր աբեղայն եւ Տէր Կարապետ աբեղայն եւ Տէր Թադէոս ա-

բեղայն եւ Տէր Նիկողոս աբեղայն եւ Տէր Սարգիս երաժիշտն եւ այլ բազում ուխտականօք եւ տանուտէրօք եւ աւագ երիցօք եւ ունէին ընդ իւրեանս թուղթ վկայական եւ հաւանութեան ի քաջ հռետորէն ի Գրիգոր տիեզերալոյս րաբունապետէն եւ յայլ միաբան եղբարց եւ ի տանուտէրաց, ի քահանայից, ի մեծամեծաց եւ ի փոքունց: Զոր յուղարկեալ էին առ մեզ զպատուելի եւ զիմաստուն կուսակրօն քահանայն զԿարապետ աբեղայն հաւանութեամբ ամենեցուն եւ ձեռնադրելով (ձեռնագրո՞վ) խնդրեալ էին առաջնորդ սուրբ ուխտին Եղրդուտայ սուրբ Յովանիսայ եւ իւր սեփհական թեմին եւ վիճակին Զռախկին եւ իւր երկրին Մուֆարղնայ եւ իւր երկրին, Սլեմանկին եւ իւր գաւառացն եւ նահեային. որ Կողբ անուանի, Գապկու եւ իւր գաւառացն, Խաչկանայ եւ իւր Մզրանին, Կնճանայ եւ իւր գաւառին եւ մասն ինչ ի Տարօն գաւառին: Այլ եւ սահմանօրէն ստորագրեցից զկարգեալ վիճակն սորայ հռչակաւոր ուխտիս ի սրբոյն Գրիգորի Լուսաւորչէն, այլ եւ ի մեծէն Սահակայ Պարթեւէն հաստատ գրով: Եւ յետոյ վերստին հաստատեալ ի Յոհան Օձնեցւոյն եւ կրկին կնքեալ ի Գրիգորիս



Ս. Կարապետի տաճարը, հարաւ-արեւմուտքէն։

կաթուղիկոսէ: Այսինքն նախ ի Ջրոյ Հինչինոյ իջանէ ի Մեղրագետ, Արածանի գետով, որ Եփրատ անուանի Սեռոքով յերամբ մինչեւ ի ջուրն Ծապաղի ուանով եւ Ռոպատոխու մինչեւ որ Ցխին կոչի Բաղին գաւառաւ, Սեւան Դղեկաւ, Տղնով եւ Ապարաւ, Աթաղ դղեկաւն, Թրռչրլ աւանաւն, Մեհրնկաւն, հանդերձ Արգոհրանով, Նփրկերտաւ, որ է Մուփարղին Մարտիրոսաց քաղաքն Պաթմանու եւ Ռապատ նահիովն, Փարչանց գետովն Պողոտային եւ Կողբայ գաւառաւն հանդերձ ընդ ստուով Անթանիոյ ի յարեւմտեան կողմանէ ջրովն Հինչինու, չրջի ի գաւառն Տարօնոյ: Այսոքիկ կարգեալ եւ սահմանեալ վիճակք հռչակաւոր մենաստանիս, որ Ծիչ ի ղոյ վանս յորջորջի, վասն այնորիկ սահմանս յատուկ գրեցաք, զի անջրելի մնասցէ ի ներհակաց եւ աներկբայ լինել կարծողաց ի նախնեաց կարգելոց, որպէս ի հին մատեանն գրեալ էր ի վաղնջուց ժամանակաց ի սրբոց հայրապետաց, որպէս վերագրեալն յայտնեցաք ձեզ: Այլ եւ սուրբ Աթոռոյս հանդ եւ սինօրն այս է: Առուականն Ցերկէն Արօսիկ, Դարբնաձոր, որու ձորովն մինչեւ ի Ղզլաղաճն վերին Տղին Բապասայ մինչեւ ի Սնձնու-

տայ վերեւն Քաշալամն մինչեւ ցէմին Թափանն եւ Քառւան Տէրնադրիւր Մգրայ է։ Ջրի անդին Խորոնից է, այսդին վանից մինչեւ ի Վարդենից գիմայ, մինչեւ ի ճանապարհն. մինչեւ ի վերին Վարդենից գիմաց։ Երեք աղբիւր կայ՝ Բլեյի ձորն վանիցն է մինչեւ Յառուանկանն, Քարխաճի ջուրն վանիցն է, քամ Տարբեադոմու սինոռ Խասանձին հանդակն գետի փոյ Պօղոսի հրնի ճանապարհն Երուկնին մինչեւ ի հանդակն։ Այսոքիկ հանդ եւ սինոռ կարգեալ եւ հաստատեալ ի նախնեաց եւ յիշխանացն, վկայութեամբ բազմաց եկեղեց քահանայից եւ տանուտեարց վկայութեամբ եւ գրով, որք էին ընդ Կարապետ աբեղային, որք ունէին հրովարտակ թագաւորական, զոր եւ խնդրեցին իսկ ի մէնջ վերստին կարգել հայրապետական մատենագրիւ առ ի կրկնակի հաստատութիւն, որ եւ հաւանեալ գրեալ եդաւ ի նա։ Որով օրհնեցաք եպիսկոպոս եւ տեսուչ եւ առաջնորդ հօտին Քրիստոսի եւ բոլոր Թեմին եւ վիճակին սորայն Յովհաննու, վասն որոյ եւ մեք մեծաւ պատուով եւ յայժ սիրով ընկալաք զդա, որպէս զհրեշտակ Աստուծոյ։ Չի հաճեցաք ի բարւոք վարուց գործս եւ յիմաստութիւն, վասն զի է այր

պատուական եւ հեզ, բարի ողորմած ի վերայ կարօտելոյ եւ հնազանդ ըստ կամացն Աստուծոյ եւ մեր: Վասն որոյ ընտրեցաք եւ կոչեցաք զդա ի պատիւ եւ յաստիճան եպիսկոպոսութեան ի վերայ հռչակաւոր սուրբ ուխտիդ Յովհաննու Մկրտչին եւ ամենայն տանդ Հայնու գիւղաքաղաքին, Աթխայ քաղաքին, Լըճու գիւղաքաղաքին, Գասկու գիւղաքաղաքին, եւ ամենայն յընդհանուր վիճակացն իւր: Մեծաւ հանդիսիւ յաստուածաբնակ տաճարի սուրբ էջմիածնի, ի կաթողիկէսի Վաղարշապատոյ, ի յամսեանն Յունիս Ը. ի մեծ թուին ՊՂԴ. յաստուածամուխ սուրբ Գեղարդեամբ եւ յաստուածընկալ սուրբ Նշանաւն եւ ԺԲան սուրբ Նշանօքս: Եւ շնորհաբաշխ Աջով մեր սուրբ Լուսաւորչին Գրիգորի, եւ այլ երկոտասան Աջերովս առաքելական եւ հայրապետական: Եւ օրհնեցաք զՎարդապետ արեգայս ձեզ եպիսկոպոս եւ հոգեւոր առաջնորդ: Եւ զոր պարգեւեաց եւ վիճակեաց սուրբն Գրիգոր եւ յետ նորա մեծն Ներսէս Ծինոյն, զոր շինեաց Ռ. վանք աթոռն եւ սահմանեալ կանոնեաց զթեմս զորս յանուանէ յիշեցաք եւ յետ նորա սուրբն Գրիգոր Տաթեւացին: Եւ յետոյ այսոց՝ եւ

Գրիգոր կաթուղիկոս օրհնեցաք զԿարապետ արեղայս արքեպիսկոպոս եւ կրկին նորոգեցաք զկոնդս մերով օրհնութեամբ եւ առաքելական եւ հայրապետական բարձր հրամանաւն առաքեցաք առ ձեզ հանդերձ սրբալոյս սուրբ Մեռոնաւ ձեզ հովիւ եւ առաջնորդ: Որով եւ դուք ամենեքեան առ հասարակ սիրեցեալ որդիք մեր ի Քրիստոս զարժանաւոր պատուեալ եւ զառաքելաշնորհ, զովելի եւ իմաստուն սրբազան եպիսկոպոսն ձեր, որ առաջնորդ է սուրբ ուխտին եւ դարմանիչ անանկաց եւ հովիւ վիճակին: Մեծաւ պատուով եւ յոյժ սիրով ընկալարուք...: Վասն որոյ ի մատնել դորս եւ գրաւական օրհնութեամբ հրամանիս մեր առ ձեզ եւ աստուածագործ մեռոնիս: Իջցէ եւ շնորհք...: Արդ գրեցաւ գիր օրհնութեան... յրատ մեզ մարդեղութեան Քրիստոսի ՌՆԽԵ (1445) եւ սորոյն Գրիգորէ ՌՃԽԲ (1142): Եւ ի մեր նստել ի սուրբ յաթոռս որ է ամ Ե. եւ ամիս Գ. եւ օր ԺԵ.: Եւ ըստ թուականին մեծի ՊՂԴ: Եւ վասն առաւել հաստատութեան մնալոյ ձեռագրեցաք մերով ասորական կարմիր ձեռագրով ստորեւ եւ կնքեցաք ի վերոյ մերով ամէն երեւելի եւ անիրական եւ արքունական եւ ծաղկաւէտ մեծ

մատանեաւս: Կամօք բարերար մարդասիրին Աստուծոյ: Գրիգոր ծառայ ծառայից Աստուծոյ Տեառն մերոյ, շնորհօք եւ ողորմութեամբ նորին կաթուղիկոս ամենայն Հայոց եւ Պատրիարք Վաղարշապատու» (Նոտարք, էջ 139—145, ուր եւ սա ծանօթութիւնը՝ «Կնդակս կայ ի Մշոյ սուրբ Յովհաննու վանք: Այն կնդակ, որ կայ ի վանս սրբոյն Յովհաննու որ ի Մուշ, ընդօրինակեցի յօրինակէ Արսէն Վ. Թօխմախեան»):

Այս կնդակին արտագրութիւնը կայ մեր Մատենադարանին Ձեռագրաց հաւաքածոյին մէջ՝ (Հին Թ. 738, Նոր Թ. 784). Թղ. 89ա՝ «Պատճէն սուրբ Յովհաննու վանուց հին մագաղաթեայ կնդակի. Շնորհօք եւ ողորմութեամբ... յերջանիկ գիտակէ... Տէր Գրիգորիոս կաթողիկոսէ...»: Թղ. 93բ. գրուած է՝ «Նորոգեցաւ կնդակս ի թվին ՌԼԷ յետ մեզ մարդեղութեան Քրիստոսի ՌՇՂ ձեռամբ անարժան եւ փծուն գրչի Պետրոս աբեղայի» (Ոսկեան Հ. Հ., Մայր Ցուց. Հայ. Ձեռ. Մատ. Մխիթ. ի Վիեննա, Բ., էջ 321, անտիպ):

Կնդակէն հաստ կ՚ըլլանք՝ թէ Գրիգոր Ժ. Կաթ.ի օրով Ս. Յովհաննէսի միա-

բաններու թիւը գոհացուցիչ էր: Դժբախտաբար չենք գիտեր թէ այս միաբաններէ ընտրուած եւ կաթողիկոսէն այնքան հաճութեամբ առաջնորդ հաստատուած եւ եպիսկոպոս ձեռնադրուած «պատուելի եւ իմաստուն, կուսակրօն» Կարապետ աբեղան ի՛նչ գործունէութիւն կ՛ունենայ եւ ե՛րբ կը մեռնի: Միայն թէ գիտենք թէ 1460ին Եղրդուտի առաջնորդութիւնն արդէն Յովհաննէս արքեպիսկոպոսին ձեռքըն է:

«Գրեցաւ Յայսմաւուրքս ի թվին Հայոց ՋԹ (1460) ի մենաստանս սուրբ Յովհաննէս Եղրդուտ կոչեցեալ... ի հայրապետութեան տէր Գրիգոր(ի) եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Յովհաննէս արքեպիսկոպոսին եւ ի բռնակալութեան աշխարհիս Հայոց չար Ջհանշահին, աշխարհակործան եւ աւերող ամենայն գաւառաց եւ մեր ամիրային ամիր Շարաֆին: Արդ ի սորայ դրել շատ վիշտ եւ նեղութիւն կրեցաք, տարալ հիւանդ կացաք: Եւ յետ նորա Հասանպէկին եկեկ դդաշար աւերեց եւ երեց: Եւ յետ այն որ Բ. ամաց աւելի կամ պակաս մահ տարաժամ անկաւ, շատ որդի ի հօրէ բաժանեց եւ դուստր ի մօրէ, քոյր յեղբօրէ եւ կին

ի յատնէ. ով կարէ պատմել զկսկիծ ա-
ղետից նոցա...:

Այսպէս յիշել ի Տէր զմիաբանս սուրբ ուխտիս սուրբ Յովաննէսին զհեզահոգի և սրբասնեալ եպիսկոպոսն զտէր Ներսէս և զհոգևոր եղբայրն իւր զտէր Յովաննէսն» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէն):

Յովհաննէսի մասին յատուկ բերենք դեռ հետևեալ յիշատակարութիւնը՝ «Գրեցաւ պատատածախօս և աւետարեր սուրբ աւետարանս ի թուին ՋԺԲ (1463) ձեռամբ անարժան և մեղսաթաւալ գրչի սուտանուն Մանվաննոսի[25] և ի կաթողիկոսութեան Տէր Զաքարիայի և յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Յովհաննէս արհիեպիսկոպոսին ի գաւառն Տարօնոյ, յերկնահանգէտ սուրբ ուխտիս և ի հրեշտակացեց մենաստանիս Եղերդուտ կոչեցեալ: Ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և Յովհաննու Մկրտչին և Ս. Ստեփաննոսի Նախավկային և Ս. Գրիգորի Լուսաւորչին և օրհնաբանիս Ս. Իսգայս...: Յիշեցէք ի մեղաւորաց յա-

25 Հաւանօրէն այս Մանեփանոսն է որ 1459ին «յնգստա» Աւետարան մը կը գրէ (Լալայեանց, Ցուց. հայ. Ձեռ. Վասպ., էջ 432):

զաւթս ձեր զընտրեալ եւ զարժանաւոր, զպատուական եւ զկուսակրօն աբեղայն զՅովհաննէս, որ ետ գրել զսուրբ Աւետարանս...: Արդ ես կրտսերս յորդւս եկեղեցւոյ եւ անպիտանս ի կրօնաւորաց Ստեփաննոս աղաչեմ զձեզ, որ մեզ ողորմու (?) արժան առնէք զհայրն իմ զՍահակ...: Դարձեալ աղաչեմ զձեզ յիշեցէք ի Քրիստոս զաշակերտքն մեր զկուսակրօն աբեղայքն զՅովանէսն, զԿիրակոսն եւ զՊետրոսն...» (Նօտարք, էջ 215. Բիւզանդիոն, 1908, թ. 3500, ուր թուականը գրուած է ՋԺԲ եւ Լալայեանց, Ցուց. Հայ. Ձեռ. Վասպ., էջ 619—622, ուր թուականը նշանակուած է ՋԾԲ եւ յիշուած՝ «Սարգիս եպիսկոպոս, պատրաստող սրբուն Յովաննու Մկրտչին», որ այն Աւետարանը կը ծախէ):

Յովհաննէսի առաջնորդութեան շրջանին Ստեփաննոս 1466ին Եղրդուտի վանքին մէջ Գանձատետր մը կ'արտագրէ (Նօտարք, էջ 227 եւ Բիւզանդիոն, 1908, թ. 3500) եւ 1477ին միեւնոյն վանքին՝ Շարակնոց մը կը գրէ (Լոյս, 1905, էջ 411):

Անոր մահուան թուականն ալ անծանօթ կը մնայ: Հաւանօրէն անոր անմիջական յաջորդն ըլլայ Պետրոս եպիսկոպոսը,

որ ծերութեան շրջանին օգնական կ'ունենայ եւ ապա՝ յաջորդ Յովհաննէս (փոքր). «Գրեցաւ ... ի Թվ. Հայոց ՋԽԶ (1497) ձեռամբ Ստեփաննոսի ի դուռն Տարունոյ յերկնահանգէտ սուրբ ուխտիս եւ ի հրեշտակացոյց մենաստանիս Եղրդուտ կոչեցեալ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ Յովհաննու Մկրտչին եւ սուրբ Ստեփաննոսի Նախավկային եւ սուրբ Գրիգոր Լուսաւորչին եւ ահարկու սուրբ Ծիչխուղոյս եւ արծուաբեր սուրբ Նշանիս ներկեալ արեամբ Քրիստոսի ի հայրապետութեան տէր Սարգիս կաթողիկոսի եւ ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Պետրոս եպիսկոպոսի, նորակնունք տէր Յովհաննէս եպիսկոպոսին եւ այլ միաբանիցս մեծի եւ փոքու առհասարակ...: Յիշեցէք զկուսակրօն աբեղայն զտէր Աստուածատուրն, որ գնեաց զաւետարանս յիշատակ իւր եղբօրն մեր Թորոս երիցուն» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Տէր Աւետիսեանի Նոր Ջուղայի Ձեռագրաց Ցուցակին, Թ. 79):

Կարապետ Բաղիշեցին 1513ին Եղրդուտի վանքին մէջ կը գրէ՝ «Ողբ ի մերոյ արշաւանաց Շահ Իսմայէլի» (հմմտ. Ակինեան Հ. Ն., Մատենագրական Հետա-

գաւառութիւնք, Գ., էջ 321 եւ 342, Revue des Etudes Arméniennes, 1920, էջ 95)։

Փիլիպպոս սարկաւագը «ի ժամանակս վերջին որ է Թուական Հայոց ՌԻԸ» (1579) կը գրէ Աւետարան մը, որ այժմ կը գտնուի Բէյրութ Վեղարաւորներու Մատենադարանին մէջ։ Անոր ընդարձակ յիշատակարանին մէջ կայ՝ «Գրեցաւ սուրբ Աւետարանս ի դուռն սուրբ Կարապետին (Յովհաննու) ի հայրապետութիւն տէր Յոհանէս եպիսկոպոսին, որ ամբարեալ կայ ի սորա աւրհնաբուխ սուրբ եղն եւ արծուաբեր սուրբ Նշանն...» (Կը յուսամ՝ այս յիշատակագրութիւնք եւ Վեղարաւորներու հայերէն Ձեռագիրներու կազմած ցուցակս մերձաւոր ապագային մէջ հրատարակել)։

Երեք տարի յետոյ 1582ին Աւետիս աբեղան կը գրէ Աւետարան մը՝ «Ի խնդրոյ տէր Կիրակոս եպիսկոպոսի Ս. Երրդուտ վանաց» եւ Մարտիրոս երէց 1587ին Մաշտոց մը կ'արտագրէ՝ «Ի յիշատակ սուրբ Յովանիսայ վանացս» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գերմանէն)։ Այս 1608ին՝ «Կազմեցաւ (Աւետարանս) ձեռամբ Արիստակէս բանի սպասաւորի, ընդհովանեաւ սուրբ Յովհաննու Մկրտչի, որ Երրդուտի վանս յորջորջի, եւ սուրբ Տի-

րամօր Աստուածածնին, սուրբ Ստեփաննոսի Նախավկային եւ սուրբ Գրիգորի Լուսաւորչին» (Անդ, դարձեալ Գեղամէն): Իսկ 1621ին Գրիգոր Առաքելոց վանքի մէջ կը գրէ Հաւաքածոյ մը, զոր գտած էր Եղրդուտի վանքը (Հմմտ. Առաքելոց վանքը): Ղուկաս արեղան 1627ին «ի դուռն սուրբ Յովհաննու Մկրտչին, որ Եղրդուտայ վանք կոչի» Հաւաքածոյի մը արտագրութիւնը կ'ընէ (Արարատ, 1895, էջ 126):

Եղրդուտի վանքի առաջնորդը կը յիշուի 1630ին Արիստակէս՝ «քաջ երաժիշտն» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Հ. Պատուրեանէ): Իսկ 1654ին «Ս. Յովհաննու Տէր Գրիգոր վարդապետի» նախաձեռնութեամբ կը շինուի Անծնուտի Ս. Աստուածածնի եկեղեցին (անդ, 1630): Թերեւս միեւնոյն Գրիգորն է — երաժիշտ եպիսկոպոս — որ Յովհաննէսի կ'օգնէ 1676ին գրելու ժամագիրք մը, զոր «ընծայէ զգիրս ի սուրբ ուխտն Եղրրդուտայ, յերկրին Տարօնոյ ի գաւառին Մամիկոնեանց, ուր կան շատ սրբութիւնք, սուրբ Ծիչ Իւղն, որ Քրիստոս յետ խաչելութեան օրհնեաց եւ սուրբ Թադէոս բերեալ աստ եդ ի ծառն Եղրդի առ ստորոտն Եղրդի՝ առ ստորոտով յերկրին Տա-

րասի։ Աստուածաբեր Ս. Նշանն որ եբեր Ս. Գրիգոր Լուսաւորիչն եւ դկալ Թեկն մեծին Յովհաննու վանքն Տիչ Իւղոյ վանք եւս վերաձայնի...»։ Կը յիշուին միաբանք՝ Գրիգոր եպիսկոպոս առաջնորդ, ուսկից կը ձեռնադրուի ստացող Գրիգոր (վերոյիշեալն) եպիսկոպոս, Մարտիրոս երաժիշտ, ուսուցիչ Գրիգորի, տէր Սուքիաս արքեպիսկոպոս (վախճանեալ, դուցէ երբեմն առաջնորդ), Յովհաննէս վարդապետ եւ Արիստակէս ու Յովհաննէս կրօնաւորները (անդ, առնուած Հ. Պոտուրեանէ)։ Յիշուած Գրիգորներէն մէկն է Գրիգոր Մշեցի, որ Եղրդուտի վրայ Փիլիպպոս Կաթողիկոսէն եպիսկոպոս կը ձեռնադրուի եւ որ՝ «նորոգեաց զվանքն, որ էր հնացեալ, զգմբեթն, զսալերն, զամենայն տապաստարան, զխցերն, զսուրբ Նշանն Արծուաբեր... (Հմմտ. Հանդէս Ամսօրեայ, 1951, էջ 497—499)։

Գրիգորի յաջորդը կամ յաջորդներէն է Պետրոս, որուն օրով 1706ին Սարգիս վարդապետ Եղրդուտի մէջ շինութիններ կ'ընէ (Հմմտ. վերը կամ Արարատ, 1905, էջ 719)։

1774ին Ս. Յովհաննէսի վանահայր է Մելքիսեթ, որուն Սիմէոն կաթողիկոսը

Պաշտօնատար վարդապետի համար յանձնարարական մը կը գրէ (Դիւան, էջ 286)։

Իսկ Ղուկաս կաթողիկոս թղթով մը 1782ին կը ջանայ խաղաղցնել Ս. Յովհաննէսի պատկանող Հազրօ, Հայնի եւ Լճէ թեմերը, որոնք Տիգրանակերտի վիճակի մէջ էին եւ տրամադրութիւն կար զանոնք Աթախու վանքին յանձնելու։ Կաթողիկոսը ի նպաստ առաջինին իր վճիռը կուտայ եւ կը յորդորէ անոր իբրեւ հայրենի վանքի սիրով կապուիլ «եւ զնորին առաջնորդն՝ զսիրելի եւ զշնորհածին որդին մեր զՏէր Յովհաննէս խոհեմառատ վարդապետն եւ զնորընծայ եպիսկոպոսն ձեզ առաջնորդ դիտելով հնազանդ լիջիք նմա յամենայնի... եւ զամենայն առաջնորդական եւ զվանքական հասս եւ զիրաւունս ձեր եւս նմա հասուսջիք» (Դիւան, Դ., էջ 430—432. հմմտ. անդ դեռ., էջ 31, 501 եւ 381 ուր Յովհաննէսի եպիսկոպոսական ձեռնադրութիւնը. հմմտ. դեռ. Խաչատուրեան Գար. եպ., Տարօնաչունչ, էջ 415)։

Յովհաննէսի յաջորդն է Աստուածատուր վարդապետը (անդ, Դ., էջ 591)։

Իսկ 1812ին «ընիկ երկրէն Տարօնուն ծառայ սրբոյն Ամլորդուն» Յարութիւն կը

նորոգէ Նարեկի զանգակատունը (Հանդ. Ամս. 1939, էջ 191)։

1822ին Վարդան առաջնորդը Գր. Պօղոսեանի «գիր շնորհակալութեան» կը գրէ (Conybeare, Cat. Arm. man. Brit. Museum, էջ 268)։

Մուշի Ս. Կարապետի Զաքարիա առաջնորդը «գնալով ի սուրբ Յոհաննու վանք 12 քիսայ Ս. Յովհաննու պարտք տուեց եւ այն տեղ վախճանեցաւ» (Դիւան, Ժ., էջ 540)։

Եղրդուտի վերջին ժամանակներու վանահայրներէն եւ փոխ առաջնորդներէն եղած են՝ Թադէոս եպիսկոպոս (Արեւելք, 1901, Թ. 4691), Առաքել վարդապետ, Մկրտիչ վարդապետ Տիգրանեան (այժմ՝ եպիսկոպոս), Կարապետ վարդապետ եւն (Բիւզանդիոն, 1906, Թ. 3128, 1907, Թ. 3159. Արեւելք, 1884, Թ. 214, 1889. Թ. 1681. Սուրհանդակ, 1901, Թ. 669)։

### գ. Զանազան տեղեկութիւններ

Եղրդուտի Ս. Յովհաննէսի վանքը հարուստ է։ Իւրացուցած է ընդարձակ թեմ եւ իր կառավարութեան ու իրաւասութեան ենթարկուած են գիւղեր ու քա-

գաւքներ։ Հ. Ինճիճեան կը գրէ՝ «Թեժ մե-
նաստանին են գիւղօրայք Մշոյ, որք ան-
կանին ի հարաւակողմն Եփրատայ սկսեալ
յարեւմտից գաւառին մինչ ի գիւղն Խո-
րօնք եւ Քարձոր, նաեւ միճակն Կինճ եւ
Խարբի» (Նոր Հայաստան, էջ 198), այս-
պէս եւ Ալխլան կամ Ներքին գաւառ, Խիան,
Սասուն, Հաւերան, Հազրօ (հմմտ.
վերը, դարձեալ Գր. Մակուեցի կոնդակը,
Բիւզանդիոն, 1907, թ. 3128, 3141, 3159,
1900, թ. 1001, 1908. թ. 3500· Ազատա-
մարտ, 1910, թ. 337· Նոր Դար, 1893.
թ. 148· Նոր Արաքս, 1890, Ա., էջ 25·
Թորոս Աղբար, Բ., էջ 230· Լաւստարա-
րեան, Գաւազանագիրք, էջ 136· Արեւե-
լք, 1889. թ. 1682· Բիւրակն, 1858,
էջ 28 եւ 42)։ Մանաւանդ Պլէյի, Տատրա-
գոմի, Կիայխօլի եւ Աւազհողի մէջ ամե-
ցած է ընդարձակ վարելահող եւ անտառ
(Բիւզանդիոն, 1906, թ. 3063 եւն եւն)։
Նաեւ տիրացած է բաւական թուով հնա-
թիւններու, հրովարտակի, կոնդակի եւ
ձեռագրի։ Վեցհազարեակ մը եւ ընտիր
Աւետարան մը սեպհականած է Մկրտիչ
եպ. Տիգրանեան (Բիւզանդիոն, 1906,
թ. 3128, 1907, 3159· Արեւելք, 1889,
թ. 1681—1682 եւն եւն)։ Եզրդուարի վե-

բարերած է 1590ին գրուած Միքայէլ Ասորիի Ժամանակագրութիւն մը (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. 1590)։

Եղրդուտի վանքը Մելքիսեթ Վ.ի ձեռքով 1754ին կը ստանայ Ս. Կիրակոսի մասունքը, որ այժմ Երուսաղէմ կը գտնուի (Սիոն, 1931, էջ 125)։ Հոն եղած են դեռ ուրիշ մասունքներ եւ սուրբ առարկաներ (Հմմտ. վերը եւ Մասիս, 1892, էջ 112, ուր եւ Մուշի ուրիշ վանքերու մասին)։

Հարստութիւնը կայուն չէ։ Ս. Յովհաննէսի վանքը ստէպ թալանումի կ'ենթարկուի։ Մանաւանդ 1868ին Քիւրտերը զայն կը կողոպտեն եւ 700.000 ղրշ. արժողութեամբ զարդ ու անօթ կը գրաւեն։ Վանահայրն ալ կը վիրաւորեն (Մասիս, 1868, թ. 781, 873 եւ Արեւել. Մամուլ, 1894, էջ 65)։ Երբեմն ալ հրոսակներու ձեռքէն եւ կողոպուտէն զերծ կը մնայ՝ շնորհիւ հոն գտնուած զոյգ հրովարտակներու (Տրվրլէ եւ Փիսոն, Ուղեւորութիւն, էջ 62)։

Տառապած է նաեւ ծանր պարտքերու տակ (Արեւելք, 1889, թ. 1681)։

Եղրդուտի վանքը Տարօնի շնորհաբաշխ վանքերէն նկատուած է։ Մանաւանդ Վարդավառին, Ս. Աստուածածնին



Ս. Կարապետի երկու կաթողիկէները։

եւ Խաչվերացին՝ ուխտաւորներու բազմութիւն մը հոն կը խուժէր՝ իր աղօթքն ու մատաղը մատուցանելու համար (Բիւրակն, 1898, էջ 28· Արեւելք, 1889, Թ· 1681—1682 եւ Տարօնի Արծիւ, 1952, Թ· 32, էջ 72—74, ուր եւ Աղբերկայ վանքի մասին էջ 75—79)։

Վանքին առաջնորդը ընդհանրապէս բարձրաստիճան եղած է եւ միաբաններութիւն ալ նուազ չէ եղած։

Ս· Յովհաննէսի վանքը՝ «Անցեալին մէջ բաւական կարեւոր դիրք մը գրաւած ունի եղեր իր միաբանութեամբ, երաժշտական դպրոցով, ինչ որ կը հաստատուի ձեռագիր յիշատակարաններով ու հայրապետական կոնդակներով» (Բիւզանդիոն, 1906, Թ· 3141 եւ 1907, Թ· 3159)։

## 17· ԹԵՂՈՒՏԻ Ս· ՅՈՎՀԱՆՆԷՍԻ ՎԱՆՔԸ

Բաղէշէն վեց ժամ հեռու, Խլաթէն եւս բաւական հեռու, Վանայ ծովի եզերքը (մէկ ժամ մեկուսի) հիմնուած է Թեղուտ գիւղը, որմէ քառորդ ժամ անդին՝ «Ի բարձու ի լանջակողմն Նեմրութայ է մենաստան կոչեցեալ Թեղուտայ Ս· Յովհաննէս, որոյ ամենայն շինուածքն քարեղէն

են» (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 272· Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 165· Լուսարարեան, Գաւազանագիրք, էջ 139· Արձագանք, 1882, էջ 375· Բիւզանդիոն, 1898, Թ. 518, 1900, Թ. 1001)։

Սակաւ են Թեղուտի Ս. Յովհաննէսի վանքի մասին եկած հասած տեղեկութիւնները՝ «Աւարտեցաւ (Յայսմ.) ի յամի ՌԽԱ (1592) ի յերկիրն Խլաթայ ի յանապատն Թեղուտոյ ընդ հովանեաւ սուրբ Յովհաննէսին եւ սուրբ Աստուածածնին եւ սուրբ Գէորգ զօրավարին եւ Թուխ մանուկ սուրբ Խաչին, որ է օծեալ մերոյ Լուսաւորչին, ի հայրապետութեան սուրբ ուխտիս տէր Ատոմ մահտեսի սուրբ ճգնաւորին, առ ոտս նորա գրեցի զսուրբ տառս...։ Ի հայրապետութեան Էջմիածնին Տեառն Առաքելի, Դաւթի եւ Մելքեսեթի եւ թագաւորութեան Տաճկաց սուլթան Մուրատ փադշային եւ ի մերումս իշխանութեանս Շարաֆ խանին...։ Արդ գրեցաւ սա ձեռամբ մեղապարտ գրչի Գրիգոր սուտանուն երիցու ի խնդրոյ... տանուտէրոջն պարոն Գալուստին...» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Երեւան, 9)։

Թեղուտի վանքը եւ տէր Ատոմ կը յի-

չութին դեռ 1593ին՝ «Դարձեալ աղաչեմ յիշեսջիք (յ)աղօթս ձեր զստացող սորա տէր Ատոմ, որ երկու երեք անգամ գնաց յԵրուսաղէմ յարթունք եւ չուրջառ եւ գիրք ետ գնել ի Թեղուտոյ Ս. Յովհաննէս սեղանատեղ (?) եւ ժամանակագրութիւն սահմանեաց եւ յետոյ ետ գրել զսուրբ Աւետարանս» (անդ, առնուած Գեղամէն):

Ս. Յովհաննէսի վանքը ուխտաւորներու համար փնտռուած վայր էր (Հայրենիք, 1939, թ. 8198—8199): Զրկուած էր իր կալուածներէն (Միրախորեան, Ուղեւորութիւն, Ա., էջ 89—90): — Կարելի է այս վանքն ալ — ճշգօրէն — Բաղէշի վանքերու մէջ դասել:

### 18. Ս. ԹՈՎՄԱՍԻ ԿԱՄ Ս. ԹՈՒՄԱՅԻ ԽՈՅՈՑ ՎԱՆՔԸ

Սասունի Ծովասար գաւառակին Խոց կամ Խողց գիւղի վանքն էր «Սուրբ ուխտն Թումայ առաքելոյն» (Ինճիճեան Հ. Ղ., Նոր Հայաստան, էջ 201). կոչուած է նմանապէս Խոցոց կամ Խոծոծ վանք (Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Բ., էջ 209. հմմտ. վերը՝ Ս. Աստուածածնի վանքերը):

«Ս. Թումայ առաքեալին վանքը կանգնուած էր Մուշի դաշտին մէջ եւ ունէր քարուկիր եկեղեցի մը» (Մասիս, 1903, էջ 440)։

## 19. ԽԱՆԳԱՐԻ ՎԱՆՔԸ

Մանազկերտի Ակներ գիւղին մօտ։ Շատոնց հանգած վանքերու շարքին մէջ օղակուած (Մասիս, 1903, էջ 441)։

## 20. ԽՆԱՏԻ ՎԱՆՔԸ

Սասունի հին վանքերէն։ (Առաջնորդ Սամուէլ վարդապետ՝ հմմտ. Գր. Մագիստրոսի Թղթերը էջ 302. հմմտ. նաեւ Հ. Հ. Ոսկեան՝ Արցախի վանքերը, Վիեննա 1953)։

## 21. ԾԻԾԵՌՆՈՅ ՎԱՆՔԸ

Աթանագինէի վանքէն մէկ ժամ հեռու, Եղրդուտի վանքի մօտերը։ Կառուցուած Ներսէս Շինողի կաթողիկոսութեան շրջանին։ Վաղուց աւերակ (Մասիս, 1903, էջ 360 եւ 424. հմմտ. Ծիծեռ-

*նոյ կամ Ծիծառնկայ*[26] *խաչի պատմութիւնը, Յովհ. Մամիկոնեան, Պատմութիւն Տարօնոյ, էջ* 56—59. *Բազմավէպ,* 1933, *էջ* 404. *Ալիշան, Սիսական, էջ* 268):

## 22. Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՆՔԵՐԸ

*Տարօնի մէջ բարձրացած են Յովհաննէս Մկրտիչ Կարապետի անունով բաւական թուով վանքեր: Անոնցմէ երկուքը առանձինն՝ յատուկէն նկատողութեան պիտի առնուին, իսկ միւսներն են՝*

ա. Ս. Կարապետի վանքը. — *Մուշի Երիչանէր գիւղին հարաւակողմը* (*Մասիս,* 1903, *էջ* 424):

բ. Ս. Կարապետի վանքը. — *Սիմի սարերուն վրայ, Մուշի դաշտին մէջ, Շմլակ գիւղին հարաւակողմը: Ունէր քարուկիր մատուռ մը* (*անդ., էջ* 424):

գ. Ս. Կարապետի վանքը. — *Դարձեալ Սիմի վրայ, Փեթար գիւղին արեւելեան հարաւային կողմը* (*անդ, էջ* 424):

---

[26] *«Ի դաշտն Տարաւնոյ ի գիւղն Ծիծեռ ի դուռն Ս. Գրիգորի* 1571*ին տէր Պետրոս Մաշտոց ու ծաշոց կ'արտագրէ» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէն): — Ծանօթ է Ծիծռանքար վանքը (Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, Բ., էջ* 242):

դ. Ս. Կարապետի վանքը. — *Հալթնի գիւղին մէջ (անդ., էջ* 441):

ե. Ս. Կարապետի վանքը. — *Խութ գաւառակի Շնիստ գիւղի շրջակայքը (անդ., էջ* 441):

զ. Ս. Կարապետի վանքը. — *Մանազկերտի Գօթանլը գիւղի մերձ (անդ, էջ* 441):

է. Ս. Կարապետի վանքը. — *(Տարու-բերանի) Խաչլու գիւղին մէջ, հարուստ եւ հոյակապ (Ազգր. Հանդ.* 1899, *Ե., էջ* 28):

## 23. Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ԿԱՄ ԳԼԱԿԱՅ ԿԱՄ ԻՆՆԱԿԵԱՆ ՎԱՆՔԸ

### ա. Շէնքերու նկարագրութիւն

*«Բնութեան ամէնէն զմայլելի, ամէնէն սիրուն մէկ կէտն է Ս. Կարապետը*[27], *կարծես յակինթ մըն է վայելչանիստ սարի վրայ՝ բնութենէ շինուած ակնակապիճի մէջ: Ս. Կարապետ միայն մէկ եկեղեցի կամ տաճար մը չէ, քանի մը տաճարներ քով քովի կը կազմեն սրբավայ-*

---

27 *«Ս. Կարապետն մէջ մէշի է եւ լեռնային եւ յորդ գեղեցիկ տեղ եւ ի ճանապարհին սաֆի անթառամ ծաղիկ է եւ եասմանի ամպօք եւ այլ հոտով ծաղկնի» (Ակինեան Հ. Ն., Սիմ. դպ. Լեհացւոյ ուղեգրութիւն, էջ* 10):

րերու խումբ մը» (Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք, Վիեննա 1904, էջ 152, ծն. 1)։

Ս. Կարապետի վանքը «Հեռի է ի Մշոյ եօթն կամ ութ ժամու յարեւմուտս հիւսիսոյ, կառուցեալ ի կողաց լերին Քարքեայ ի դիւր վայրի, ի հիւսիսոյ իւր ունելով զլեառնդ եւ յարեւելից եւ յարեւմտից զայլ եւս բարձունս կամ զօտիս նոյն լերին եւ ի հարաւոյ այլ եւ այլ ձորամիջովք տարակացեալ ի դաշտէն Մշոյ» (Սարգիսեան Հ. Ս., Տեղագրութիւնք, էջ 228)։

Ս. Կարապետի[28] մեծ կամ սուրբ սա—

---

[28] Վարդան Աշխարհագիրը Տարօնի վանքերու մասին կը գրէ՝ «Տարօն Մուշ է, ուր կայ սուրբ ուխտն Մշու սուրբ Կարապետին եւ կայ անդ նշխար սուրբ Կարապետին եւ Աթանագինէ եպիսկոպոսին եւ յեօթն Խոստաճարակացն եւ երկու ճգնաւորացն Անտօնի եւ Կրօնիդեայ եւ կոչի Իննակնեանվանք, վասն ինն ականցն աղբիւրացն քաղցրահամ եւ կոչի Գլակավանք վասն առաջնորդի հօր վանացն եւ զառաջին պատարագն անդ արար սուրբ Լուսաւորիչ։ Եւ Ղազարու վանք, սուրբ Առաքելոցն Մշու է, ուր կայ ձախ աջն Պետրոսի եւ Պօղոսի, զոր եբեր սուրբ Լուսաւորիչն եւ այլ բազում սրբութիւնք։ Եւ Եղրդուտի վանքն, որ է սուրբ Յովհաննէսն, ուր կայ ի սուրբ նշխարացն սուրբ Կարապետին եւ Շիշ իւղոյն, զոր եբեր սուրբ Թադէոս առաքեալն եւ անդ պահեաց, զոր սուրբ Լուսաւորիչն եգիտ։ Վանդիրն, սուրբ Աղբերիկն է, ուր կայ օծեալ խաչն ի Տեառնէ եղբօրէն Յակոբայ ի գաւառէն Խութայ, անդ է սուրբ բեւեռն Քրիստոսի, ներկեալ արեամբն Քրիստոսի» (Saint-Martin, Mémoires, II. էջ 430

ճարին պատերը վերէն վար սրբատաշ քարերով շինուած են եւ այն՝ մեծ մասով դորշ գոյնով: Արտաքին դռնէն կը մտնենք գաւիթը, որ ներսէն ու դրսէն սրբատաշ քարերով կառուցուած է եւ քարուկիրով ամրացուած: Եկեղեցւոյն ընդարձակութեանը համեմատութեամբ գաւիթը դժբախտաբար շատ անձուկ է եւ այս՝ լոկ այն պատճառով որ այս գաւիթը սահմանուած է ըլլալու պատուանդանը հոյակապ զանգակատան[29]:

Գաւիթին պատերը ներսով ու դրսով ծածկուած են յետին ժամանակներու գրութիւններով եւ արձանագրութիւններով — գուցէ նախապէս ջնջելով հինն ու արժէքաւորը: Երկրորդ դռնով մը ոտք կը կոխենք տաճարէն ներս, որուն յատակը սանդխամատ մը վար է: Տպաւորութիւնը պատկառազդու է: Աննկատ թողլով Աղթամարի գոհարիկ եւ Բագրեւանդի ամրակուռ եւ բարձրակամար տաճարները,

---

ուր եւ էջ 428՝ «Ի Խլաթ Մասնէվանք»): Ս. Կարապետի մասին հմմտ. նաեւ Յակոբ Կարնեցի Տեղագիր Վերին Հայոց, էջ 223):

29 Մահմետականներէն Ս. Կարապետի վանքը կոչուած է Չանլը-քիլիսէ (= զանգակաւոր եկեղեցի) կամ Չանլը-մանասթըր (Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհ. Պատրիարք, էջ 153, ծն. 1):

որոնք սակայն միջակ մեծութիւն ունին. անիկա՝ գաւառական վանքերու ամէնէն ընդարձակն ու գեղեցիկն է: Այժմեան տաճարը կամ ժամատունը դասէն սկսած յաւելուած է իսկական եւ հին վկայարանին վրայ, ուր աւանդութեան համեմատ Լուսաւորիչը Ս. Կարապետի եւ Ս. Աթանագինէի մասունքները կ՚ամփոփէ: Տաճարը համակ քարուկիր է: Մանր եւ բազմաթիւ կամարներէ հիւսուած է առաստաղը, զոր ներքեւէն տասնուվեց խոշոր եւ կլոր սիւներ — միակտուր քարերով եւ միջակ մեծութեամբ — կը գրկեն: Այդ տասնուվեց սիւները տաճարին մէջ քառակուսի շարքի վրայ ցցուած են[30]: Լուսամուտները փոքր եւ անբաւարար են: Դասերը աւեանէն բաժնուած են մէկ

30 Հ. Ինճիճեան կը գրէ «Եկեղեցին կամ ժամատունն է ստափարակ տանեօք կամարակապ ի վերայ 16 քարաշէն սեանց հաստատեալ, յորում ժողովին միաբանք ի ժամերգութիւն. աւագ խորանն է յանուն սուրբ Խաչին. յաջմէ աւագ խորանին է դուռն մատրան սրբոյն Ստեփաննոսի, աստի եւ անտի այսր դրան են երկու փոքրիկ խորանք ի մէջ փոքր կամարաց յանուն սրբոյն Պետրոսի եւ Պօղոսի եւ մերձ ի խորանն Պետրոսի առ որմովն մատրան սրբոյն Ստեփաննոսի է այլ խորան յանուն Յակոբայ Տեառն եղբօր. ի ձախմէ աւագ խորանին է դուռն մատրան սրբոյն Կարապետին, առընթեր դրան սորա, որ առ որմով է խորան սրբոյ Լուսաւորչին եւ այսպէս 5 խորանք են միայն ի ժամատան անդ, ի բաց առեալ զխորանն մատրանց» (Նոր Հայաստան, էջ 195):

մեղրաչափ ու կարմիր՝ կանաչ ներկուած տախտակամածով: Աջակողմեան դասին մէջ զետեղուած է առաջնորդին աթոռ — գմբեթաւոր: Գմբէթին վեղարը կը զարդարեն դեռ ուրիշ չորս մանրիկ գմբէթներ. ամէնուն խաչերը ոսկեզօծ եւ փայլուն: Աթոռին ետեւի կողմը կայ ոսկեդիր արձանագրութիւն մը՝ ի յիշատակ շինարար եւ բեմբասաց Եդեսիացի Յարութիւն եպ. Գալէնճեանի (1839ին): Դասերէն վեր ու վար կը գտնուին հետքեր եպիսկոպոսներու գերեզմաններու: (Նաեւ Ս. Կարապետի մկրտարանին եւ Ս. Ստեփանոսի եկեղեցւոյն դրան սեմին ներքեւ կան գերեզմաններ՝ մարմարէ կափարիչներով. հմմտ. վարը:)

Դասերու դիմացն է աւագ սեղանը քառակուսի եւ վայելուչ բեմով. որուն աջակողմը զարդարուած է մարմարեայ խաչքարերով: Անոնց վրայ կան հետեւեալ արձանագրութիւնները. «Տէր Յիսուս ՀԳ. թուին ՌԾ. խաչս բարեխաւս է առ Աստուած վասն Արծկեցի Ներսէս վարդապետին եւ Անդրէաս եպիսկոպոսին Թեմըջնին»: «Կանգնեցաւ խաչս բարեխաւս առ Աստուած վասն փրկութեան հոգւոյ եւ մեղաց թողութեան Աբրահամ վարդապետին

սպասաւորին սրբոյ Կարապետին եւ ծնողացն Սարգսին եւ Շահումին: Թուին ՌՃԿԷ»: — «Ես Արիստակէս, Պրն. Տրս. նորոգեցի զսուրբ Ստեփանոսի քիմպէթ եւ զսագ, այլ եւ զսրբոյ Կարապետի զաղբիւրն, զպարիսպն շրջապատի, զաղբիւրն բարեհամ, զմեծ դարկեանն կամարակապ եւ երկաթեայ դռնով, զտնտեսատունն իւր խցերով, զտեղի Խաստաճարակաց հոյակապ եկեղեցի: Յիշեցէք ի Քրիստոս Աստուած ՌՃԺԴ (1665)»:

Աւագ սեղանին վրայ — որ յարդարուած, զարդարուած է խաչերով, սպասներով եւ կը ծածկուի Թաւշեայ մեծագին վարագոյրով մը — կը բարձրանայ ոսկեզօծ գեղեցկաքանդակ խաչկալ մը, որուն վրայ դրուած է հոյլ մը թեւաւոր հրեշտակներու, որոնք շրջանակած են Ս. Աստուածածնի մեծադիր պատկերը: Աւագ սեղանը կամ խորանը կը գտնուի տաճարին լայնութեանը ճիշդ մէջտեղը, երկու հաւասար մասերու բաժնելով զայն, որ աջակողմէն ունի Ս. Կարապետի[31] եւ Ս. Գէորգի տաճարիկները: Դէպի աւագ սե-

---

[31] Ս. Կարապետի տաճարին 16—20 կամարները հին ժամանակները մեծագին ջահերով եւ կանթեղներով զարդարուած էին (Բիւզանդիոն, 1905, Թ. 2821):

դան՝ Ս. Ստեփանոսի եւ գերեզմանատան (Ս. Կարապետի) աջ ու ձախ կչտերուն վրայ կան արծաթապատ շրջանակներու մէջ առնուած զոյգ սիրուն պատկերներ՝ Ս. Ստեփանոսի եւ Տիրամօր: Վերջինին պատկերը Ագուլեցի Սարգիս Ամիրճանեան 1839ին նուիրած է:

Ս. Կարապետի վկայարանը[32] կամ գերեզմանը ամէնէն հին շէնքը կը համարուի: Կ'աւանդուի՝ թէ Գր. Լուսաւորչէն հիմնուած կամ բարեփոխուած ըլլայ (Հմմտ. եւ Բ. Սափերք, էջ 44): Ունի գրեթէ 10 մետր երկարութիւն, 6 մետր լայնութիւն եւ 15 մետր բարձրութիւն: Առանց սիւնի է: Յենարանները են չորեքկուսի ձգուած կամարներ, որոնց վրայ կը բարձրանայ հին կաթուղիկէն, որ երկրաշարժերէ ստէպ խախտած, բայց եւ նորոգուած, այսպէս՝ 1902ին փոխ վանահայր Վարդան վարդապետի ջանքերով (Հմմտ. Բիւզանդիոն, 1902, թ. 1867): Խորանին առաջակողմը 6—7 մետր բարձրութեամբ կը կենայ խաչկալ մը, որ իր տեսակին մէջ սքանչելի է քանդակներու, պատկերներու եւ դրուագներու նրբութեամբ ու շողշո-

---

32 Ս. Կարապետի եւ Ս. Ստեփանոսի վկայարաններու սադերը 1706ին կը նորոգուին (Արարատ, 1905, էջ 719):

ղուն ոսկեզօծումի վայելչութեամբ։ Խաչկալը Սարգիս եւ Նիկողոս Վանեցիները — Յարութիւն եպիսկոպոսին օրով — կերտած են։

Բեմին ներքեւը զարդարուած է մարմարեայ խաչքարերով։ Մին՝ յանուն Արծկեցի Ներսէս Վ․ի ՌՃԿԷ թուին[33]․ երկրորդը՝ Աբրահամի, նոյն թուականին, երրորդն է՝ յանուն Գր․ Ծղթայակիրի՝

«Աստուածընկալ զօրեղ նշան
Ի քէն հայցեմ թափառական
Որ եմ անուամբ պետ անպիտան
. . . ՌՃԿԷ»։

Չորրորդն է՝ յանուն Յովհաննէս Վ․ի «Աստուածարան փաղերէն Պատրիարքին ի Բիւզանդիոն» նոյն թուականին։ Հինգերորդը՝ յանուն տէր Զաքարիա Վրդ․ի․ ՌՃԿԷ թուին։

---

[33] Ս. Տըվըլէ եկեղեցւոյն արտաքին պատին վրայ ճոխաքանդակ խաչի մը վրայ կը կարդար՝ «Ես Յովհաննէս սարկաւագ կանգնեցի այս խաչս ի փրկութիւն հոգւոյ ի թուին 601» եւ մեծ խաչի մը վրայ՝ «Թուին 1212 կանգնեցաւ այս խաչս ի փրկութիւն հոգւոյ Մելքիսեդեկի եպիսկոպոսի, Ներսէսի քահանայի եւ իւր ծնողացն ամէն» (Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա, Վիեննա 1892, էջ 55, ուր եւ վանքին մասին էջ 51—58)։

Գերեզմանին վաղեմի ծանրագին զարդերն ու անօթները շատոնց աներեւութացած են: Հոս կը պահուէր եղեր նաեւ ոսկեհուռ շապիկ մը — կոչուած Լուսաւորչի շապիկ: Այս տեղ պահուած է գարձեալ Հեթումի աւետարանը ուրիշ ձեռագիրներու հետ (Արարատ, 1905, էջ 711):

Գերեզմանատան հարաւակողմն է Ս. Գէորգի օրօցաձեւ տաճարը. որ առանց սիւնի է: Հիմնարկութեան թուականը անծանօթ է, սակայն ծանօթ է՝ թէ Զաքարիա վանահայրը պայն Սիմոնի ձեռքով կը նորոգէ: Դժբախտաբար 1866ի մեծ շարժին անոր կամարները կը ճեղքուին: Ժամանակ մը եղած է մատենադարան եւ պահելու վայր ձեռագիրներու եւ սպասներու, նմանապէս զգեստներու, որոնցմով Ս. Կարապետի հին ուխտատեղին շատ հարուստ էր: Այս վկայարանին մէջ կայ մթին մատուռ մը, ուր Գրիգոր Լուսաւորիչ Մանեայ լեռը քաշուելէ յառաջ ճգներ է եղեր (Արարատ, 1905, էջ 711):

Գերեզմանատան աջակողմն է Ս. Ստեփանոսի տաճարը, համանման Ս. Կարապետի վկայարանին ճարտարապետական յատակագծին, սակայն անկէ աւելի ընդարձակ, լուսաւոր եւ գեղեցիկ: Առանց

սիւնի եւ ամուր։ Հիմնուած՝ նոյն իսկ — ամանց կարծիքով — Լուսաւորչի դարուն[34]։ Ունի չքնաղ խաչկալ մը, որ գործն է Վանեցի Սարգիս եւ Նիկողոս եղբայրներու։ Յարգի գործեր են վկայարանին դրան զոյգ փեղկերը, որոնցմէ մէկը փախցուած է, իսկ մնացածին վրայ կայ՝ «Շինեցաւ թուին ՋՀԵ (1526) ձեռամբ Ղուկաս աբեղայի»։ Աւանդութեան համաձայն այս վկայարանին չէմին տակ՝ Գայլ Վահան, Ս. Գերեզմանին չէմին ներքեւ՝ անոր որդին Սմբատ, իսկ ձախակողմեան դասին ետեւը՝ Մուշեղ Մամիկոնեան թաղուած են (Արարատ, 1905, էջ 712 հմմտ. Զ. Սոփերք, էջ 123)։

Ս. Ստեփանոսի հիւսիսային կողմն է Ս. Աստուածածնի վկայարանը, զոր Վարդ. Պատրիկ շինել կու տայ ի յիշատակ իր կնոջ Մարիամի, որ հակառակ վանական արգելքի մտած էր Ս. Յովհաննէսի վկայարանը եւ մահով պատժուած։ Վկայարանին մէջ ամփոփուած է մասունքը Մա-

[34] Սոէջոյ նորոգուած, այսպէս՝ ԺԵ. դարուն եւ 1901—1902ին. հմմտ. Ճանապարհորդութիւն Տ. Յովհաննէս քհ. Վաղարշապատեցոյ, Կ. Պ. 1870, էջ 21—22. Բիւզանդիոն, 1905, թ. 2831)։ — Ամբողջ վանքը կը նորոգէ Եպրուայ ամիրան (Պոտուրեան Հ. Մ., Հանրագիտակ, Դ., էջ 646)։

րիամբ որդւոյն՝ Ստեփանոսի[35]: Շատ անպաճոյճ է շիրիմաքարը:

Այս վկայարանն ալ անսիւն է եւ յատակը կամ գետին սալայատակուած չէ: Առջեւէն՝ անոր կցուած է ժամատուն մը: Ունի երկու խաչկալ յանուն Ազարիա փիլիսոփայի եւ Սամուէլ քահանայի (ԺԱ.— ԺԲ. դարերէն):

Ս. Աստուածածնի վկայարանը Ասորիներու կը տրամադրուէր, երբ ասոնք Ս. Կարապետի վանքը ուխտի կու գային:

Ս. Կարապետի զանգակատունը շատ շքեղ է. գմբէթը կը հանգչի ութը սիւներու վրայ: Ունի սեղան մը (Արարատ, 1905, էջ 711—712): Յիշատակարանի մը մէջ կը կարդանք՝ «Թվին ՌՄԼԶ (1787) զանգակատունն շինեցաւ ձեռամբ Աստուածատուր եպիսկոպոսին» (անդ, էջ 720): Սոէպ նորոգուած է. այսպէս՝ 1900—1901ին (Բիւզանդիոն, 1901, Թ. 1461):

Դուրս ելլենք այս շէնքերէն: Ահա Խաչբակը, որ ընդարձակ տարածութեամբ կը շրջապատէ տաճարը եւ արեւելքէն արեւմուտք կը տարածուի: ԺԲ. դարուն սկիզբը

---

35 Բլուրի մը վրայ՝ կը ցուցուի Հայր Թոդիկի գերեզմանը, իսկ պարտէզին մէջ՝ Զենոբի շիրիմը (Արարատ, 1905, էջ 711):




Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՏԱՃԱՐԻՆ ՅԱՏԱԿԱԳԻԾԸ

1. Զանգակատուն: 2. Գերեզման Թոռնիկի: 3. Գերեզման Մամիկոնեաններու: 4. Գերեզ. Մուշեղի: 5. Աթոռ վանահօր: 6. Աւագ սեղան՝ Ս. Խաչ: 7. Ս. Աստուածածին: 9. Գերեզ. Սահականոյ որդւ Պատրիկի: 9. Սեղան Ս. Յակոբայ: 10. Գերեզ. Մամիկոնեան Սմբատի: 11. Ս. Ստեփանոս: 12. Գերեզ. Գայլ Վահանի: 13. Հանգստարան Ս. Յովհ. Մկրտչի: 14. Ս. Կարապետ: 15. Սեղան Ս. Գր. Լուսաւորչի: 17. Ս. Գէորգ: 18. Ճգնարան:

նորոգուած է, քարուկիր եւ ամուր: Կը բաղկանայ հինգ մասերէ: ա. Առաջնորդարանի սրահ. եկեղեցւոյ հարաւային երկարութեանը, ուղղաձիգ եւ բարձկէկ որմերով: Առաջնորդարանը հոյակապ է եւ գեղեցիկ. ունի երեք ընդարձակ մաս, խոշոր սրահ մը եւ քանի մը փոքր ստորաբաժանումներ: Երկյարկանի է եւ ներքեւն է մեծ փոս մը (Արարատ, 1905, էջ 712):

բ. Վարդապետներու եւ աբեղաներու սենեակներու սրահ. առաջին եւս, — «Արհեյաղին»: Քարուկիր եւ ամուր. բայց յետոյ փտտուած: Յատուկ տեղ մը վերապահուած է լուսարարապետին եւ անոր օգնականներուն, մնացեալ սենեակներն՝ աբեղաներուն բաժնուած:

Առաջնորդարանին եւ վարդապետնեներու երկարաձիգ սրահները Յարութիւն Եղեսիացին 1839ին կառուցած է:

գ. Արեւմտեան եւ հիւսիսային սրահներ. կամարակապ եւ սրբատաշ քարերով: Հոս են ուխտաւորներու սենեակները: Շինել տուած է Պետրոս եպ. Կուրացին:

դ. Սոյն զոյգ սրահներու անկիւնը կը գտնուի դպրոցը, որ հիմնուած է Զաքարիա վարդապետի առաջնորդութեան ատեն եւ աւարտած՝ 1850ին:

Է. Մինաս կաթողիկոսի «պուրճ»ը, խախտուած եւ քայքայուած։ Երբեմն հոս եղած են առաջնորդարանն ու վարժարանը։

Տաճարին կռնակն է վանքին ականաւոր առաջնորդներու մշտնջենաւոր հանգստատեղին (Արարատ, 1905, էջ 712)։ Դժբախտաբար շատ սակաւներու գերեզմանները ծանօթ են։ Հոն են Մելքիսեդ եպիսկոպոսի 2½ մետր բարձր խաչքարը, Պոլսեցի տէր Յակոբի, Պայազիտցի տէր Կարապետի, աւագ Լուսարար Յարութիւն վարդապետի եւ Մամբրէ եպիսկոպոսի շիրմաքարերը։ Կարապետի տապանագիրն է՝

«Զեն մեզ մոռացօնք երբեք յիշատակ.
Մէն մի գործոց քոց բարեկատարակ,
Ո Տէր Կարապետ, ընտիր վարդապետ,
Ի մենաստանիս պատուեալ հէրապետ,
Թէպէտ ամք երեք ելին քեզ բաժին՝
Կանգնել ի յաթոռ Ամլորդւոյ ուխտին,
Այլ ուսումնասէր, մարդասէր հոգիդ
Եթող շնորհապարտ զուխտ եւ զմանկունդ.
Տացէ քեզ պէս այր առհմիկ
Ոչ (ա՞յլ) որչափ ծծեմք զօդն կենսատու
Ընդ խունկս անուշունս կամք մեք օրհ-
նատու»։

Իսկ միաբաններու գերեզմանատունը վանքին հարաւային կողմն է: Հոն Ստեփանոսի մը անունով ԺԳ. դարէն խաչքար մը գտնուած է:

Խաչքարէն տարբեր է Ս. Յարութեան բակը, ուր կանգնած է համանուն մատուռը: Կոչուած է նաեւ Դեւտուն, վասն զի Լուսաւորիչը հոն բանտարկած է կատան ոգիները՝

«Լուսաւորիչ ժողվեց զդիւան
լցեց զնոսան
կապօղեւն եկաւ տայց եաման
զխս մի թաղեր ի հոր–զնտան
կեցնեմ վանքին եւ փաչեհան
անխմ թափեմ Փրէ–պատման (կամուրջ)
մինչեւ Քրիստոս գայ դատաստան»:

(Արարատ, 1905, էջ 714. Նոր Դար, 1893, Թ. 147):

Այս բակին մէջ 1875—1876ին Սամբրէ եպիսկոպոսը շինել կու տայ Նոր Վարժարանը՝ ընդարձակ յատակագծով: Շատ ծախք կ'ընէ եւ չի կրնար աւարտել: Շահամոլ ճարտարապետի մը ձեռքն ինկած էր:

Ս. Յարութեան բակէն կ'անցնինք Խանի եւ Ախոռի բակը: Անունը կը ցուցնէ թէ

հին ի՛նչ շէնքեր կային՝ մարագ, ախոռ, փարախ: Տօնական օրերուն ժողովրդական հանդիսութիւններն եւ առեւտուրը հոս կ՚ըլլային:

Ս. Կարապետի վանքը իր շուրջը ունի դեռ բաւական շէնքեր[36], որոնք իրեն կը վերաբերէին եւ սրբավայրեր, որոնք կրօնական աւանդութիւններով նուիրականացած են: Դարձեալ ունի Ս. Սարգիս անուն եկեղեցի մը, որ նորոգուած է Յովհաննէս եպ. Ծխենցի ձեռքով:

Ս. Կարապետս ունեցած է շրջապարիսպ մը, որուն մեծագոյն մասը կաթողիկոսական բնակարանի Յոհան եպիսկոպոսը շինել տուած է: Հարաւային պարիսպէն քիչ մը հեռու է մատուռ մը, ուր ցոյց կը տրուին Անտոնի, Կրօնիդէսի եւ Ի. Խաչատրեակաց շիրիմները (Արարատ, 1905, էջ 715):

36 Հ. Ինճիճեան կը գրէ՝ «Փակրահ (Նաեւ՝ Փակեահ), որ ի բարբառս կողմանցն այնոցիկ նշանակէ իբր Ագարակ, Չիֆթլիկ, գրեթէ կէս ժամու հեռի է ի մենաստանէն յարեւելս նորա եւ առ ստորոտով լերինն ի տափակի, բերդանման պարսպաւ պատեալ ի Մինասայ կաթողիկոսէն, յորժամ էր առաջնորդ այսր մենաստանի սրբոյ Կարապետի, յորում են փարախք խաշանց, գոմք արջառոց, ախոռք գրաստուց եւ ամենայն անասնոց մենարանին եւ բնակարանք հոգաբարձ մշակաց, եւ ապառաժիւ նորին մենաստանի. եկեղեցի սուրբ Սարգսի կոչեցեալ շինեալ Յոհան Վրդ. Ամդեցի առաջնորդ վանացն: Լինի աստէն մեղր պատուական» (Նոր Հայաստան, էջ 197—198):

Երկրաշարժի հետեւանքով 1784ին կը կործանին հարաւային կողմի պարիսպը, սենեակները, ճաշարանը, զանգակատունը եւ ուրիշ շինութիւններ[37] (Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 196)։

Ս. Կարապետի վանքը օժտուած է քանի մը անուններով։

Համանուն շատ մը վանքերէ զանազանելու համար առէջ կոչուած է Մշոյ կամ Մշու Ս. Կարապետ, նաեւ՝ Մուրատու կամ Մուրատատուր Ս. Կարապետ, ինչպէս եւ Սուլթան Ս. Կարապետ։

Անուանուած է Գլակայ վանք, իբրեւ թէ Զենոբ Գլակէն շինուած ու կառավարուած եւ Լուսաւորչէն այնպէս կնքուած։ Մինչդեռ Գեղամ կը խորհի՝ թէ այդ անունը անոր տրուած է մերձակայ գիւղին դահավէժներու պատճառով (Բիւզանդիոն, 1905, թ. 2876. հմմտ. ու անդ, 1908, թ. 3495)։

---

[37] Ս. Կարապետի վանքի նկարագրութիւնը քաղուած է Գեղամի յօդուածաշարքէն, որ «Բիւզանդիոն»ի մէջ լոյս տեսած է (հմմտ. անդ, 1905. թ. 2820, 2821, 2829, 2831, անդ, 1906, թ. 2876, 2879. հմմտ. շէնքերու շինութեան եւ նորոգութեան մասին դէտ՝ Բիւզանդիոն, 1903. թ. 2802—2803. Արեւելք, 1902, թ. 4929—2930. Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 194—197. Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 229—230. Արարատ, 1905. էջ 711—716. Koch K. Vom Kaukasus zum Mittelmeer, 1903, էջ 127—136 եւն եւն)։

Յարջարջուած է Իննակեան վանք՝ գըլնուած տեղւոյն վրայէն: Ինչպէս վերը ակնարկուեցաւ Մահմետականները զայն սովոր էին անուանել Ջանլը քիլիսէ կամ Ջանլը մանասթըր:

### բ. Ս. Կարապետի վանքը դարերու հոլովոյթին մէջ

Ս. Կարապետի վանքի հիմնարկութեան եւ անոր առաջին շրջաններու պատմութիւնը Զենոբ Գլակ եւ Յովհան Մամիկոնեան մեզի հասցուցած են[38]: Ամփոփենք անոնց աւանդութիւններու կարեւոր կէտերը:

Զենոբի համաձայն Գր. Լուսաւորիչ Կեսարիայի Ղեւոնդ հայրապետէն կը գրէ՝ «Աստ յերկրիս Հայոց ի չորրորդ բաժինս եւ յերրորդ Հայոց աւարտին ի լերինն որ կոչի Տաւրոս եւ հատեալ անցանէ մինչեւ ի դրունս Պահլաւայ Պարսից եւ առ սովաւ բնակի երկիրն Մամիկոնէից, բազում վայելուչ տեղօք եւ ծառատունկ պտղոյից

[38] Երկուքին «Տարօնոյ պատմութիւն»ները տպուած են Վենետիկ 1889ին: — Գ. Վ. Սրուանձտեանց կը մտադրէ «զպատմութիւն (Ս. Կարապետի)... իբր հարիւր ամաց գրել եւ տալ ի տիպ...» (Հմմտ. Հնոց եւ Նորոց, Կ. Պ. 1874, էջ 18—19):

(պիտոյից), որ եւ աստ իսկ որջացեալ էր մահ յերկուս տեղիս: Եւ այնչափ որջացեալ էր ի միում վայրի մինչեւ ի սրբոյ Հոգւոյն յայտնեալ, եթէ նա իսկ է դրունք դժոխոց, զոր Իննակեան կոչեն տեղւոյն Հնդիկք եւ Պարսիկք...: Կործանեցաք զպատկերն սատանայի եւ եդաք ի նոյն տեղւոջ մատրանս զնշխարս սրբոյ Կարապետին Յովհաննու եւ Աթանագինեայ վկայի...»: Հոն կը թողու Լուսաւորիչը՝ «Զերկոսին կենդանիսն զԱնտոն եւ զԿրօնիդէս» (Զենոբ, Պատմ. Տարօնոյ, էջ 8): Ղեւոնդ իրեն գրուած այդ թղթին պատասխանելով խորհուրդ ու խրատ կու տայ՝ «ԶԻննակեան տեղիդ... շինեսջիր զդա բնակութիւն դասուց կրօնաւորաց: Եւ կացուցես զգոսա ըստ օրինակի այսր կրօնաւորացս, զոր տեսեր ի մերում վիճակիս, զոր եւ ի սրբոյն Անտոնէ ուսցիս զկարգ ճգնութեանն, զի ոչ ինչ պակաս է քան զառաջին Անտոն: Զոր եւ ես քեզ օգնութիւն համարիմ զայն, զի զԵպիփան աշակերտ Անտոնի հաւանեցուցի գալ ի նոյն Իննակեան տեղին ունելով ընդ ինքեան ընտիրս արս քառասուն ճգնաւորս՝ խարազնազգեստս, պարկեշտ վարուք եւ հրաժարեալս յաշխարհէս, զոր

առեալ կացուցես զԵպիփան դոցա եւ այլոց եղբարցդ վերակացու։ Եւ դրոշմեսջիր արձան յուխտենից, զի մի ոք ի դաստակերտս կամ ի գիւղաքաղաքս զօրէն Աղէքսանդրացոցն գործեսցէ շինելով խուրաքանչիւր ումեք զտէրունական տաճարն եւ առանձինն բնակել։ Եւ ժողովեսցես ի նոյն տեղի հարեւր արանց չափ, որոշեսցես նոցա գեւղս եւ աւանս մեծամեծս, որպէս զի պէտք վանացն ի նոցանէ վճարեսցի եւ ինքեանք միայն աղօթից եւ ճգնութեան պարապեսցին» (էջ 10—11)։ Անոր խօսքերը եւ թելադրութիւնները նկատողութեան կ՚առնուին։ Եկեղեցականներու եւ կրօնաւորներու թիւն աճեցնելու համար հայ աւագանին Գր. Լուսաւորչի հետ դիմում կը կատարէ Եղիազար Նիւստրացիին՝ որ գայ եւ հաստատուի Ինակեանի մէջ, ուր արդէն պաշտօնի կոչուած էր իր Զենոբ եղբայրը, որ եռանդալից գործունէութեան նուիրուած էր եւ որուն «ըստ կարի աղաչանաց՝ զանուն տեղւոյն փոխեցաք յիւր աւելի անունն» (անդ, էջ 13)։ Եւ որ՝ «այնչափ ջերմագոյն է ի սպասաւորութիւն սուրբ Կարապետին, մինչ զամենայն շինուածս վանացն քար ու կիր է եդեալ...։ Ինքն շինեաց զեկեղեցին»

(անդ, էջ 13)։ Բայց հիմնադիրը Գրիգոր Լուսաւորիչն է, որ Ս. Կարապետի նշխարները հոն կը զետեղէ՝ կ՚ամփոփէ Զենոբի եւ Անդրիանոսի հետ։ Նաեւ «գրեալ է Ս. Գրիգոր ի տախտակս պղնձի եւ եդեալ ի բեմի անդ թէ կին որ մի իշխեսցէ մտանել ընդ դուռն եկեղեցւոյդ[39] զի մի կոխելով զնշխարսն անհաւաս խառնութիւն լիցի Աստուծոյ ընդ նոսա» (անդ, էջ 33—34)։ Եկեղեցւոյն հիմնարկութենէն յետոյ Ս. Լուսաւորիչ հոն կը թողու՝ «պաշտօնեայս եկեղեցւոյն զԱնտոն եւ զԿրօնիդէս» եւ բաց աստի «զԵպիփան հայր հաստատեաց վանաց ընդ ձեռամբ իւրով եւ եթող ի տեղւոջն այս կրօնաւորս քառասուն եւ երեք»։ Դարձեալ՝ վանքին կալուած ու թեմ կը նշանակէ տասնուերկու գաւառներ, «որպէս զի տեղեացն ծառայեսցեն» (անդ, էջ 37)։

Այսպէս կը գրէ Զենոբ Գլակ առաջին «պատճէն»ի մէջ, մինչ Բ. «պատճէն»ին մէջ կը հաղորդէ՝ «Իսկ իմ աղաչեալ զսուրբն Գրիգոր գնալ ի վանսն իմ, զոր ինքն հիմնարկեաց յանուն սրբոյն Կարա-

---

[39] Նմանապէս «Եւ յարեւելից կուսէ ձորոյն ի ստորոտ դառ ի վերին մինչեւ յեկեղեցին չիշխէր ոք գալ» (Յովհ. Մամիկոնեան, Պատմ. Տարօնոյ, էջ 41)։

պետին, զի լոկ միայն հիմնարկեալ» (անդ, էջ 40) եւ ապա կը յաւելու՝ «իբրեւ եկեալք ի տեղին Իննակեան Թագաւորաւն հանդերձ խնդրէր արարաք Անտոնի եւ Կրօնիդեայ: Իսկ պաշտօնեայք ասեն՝ այս ամ մի է, սակաւ ինչ պակաս, մեք զնոսա չեմք տեսեալ» (անդ, էջ 41): Բարեբաստօրէն կը յայտնուի անոնց տեղը եւ անոնք եկեղեցին կ'առաջնորդուին եւ Տրդատ Թագաւորին կը ներկայացուին: Վերջինս յետագային Գեղոիհոն Թագաւորին հետ պատերազմի կը բռնուի եւ Գրիգոր Լուսաւորչի օրինակին հետեւելով Ս. Կարապետ օգնութեան կը կանչէ եւ յաղթանակովը կը հրճուի (անդ, էջ 48):

Այսքանը Զենոբէն: Բանանք Յովհաննէս Մամիկոնեանի պատմութիւնը: Առաջին գլուխն է արդէն՝ «Եթէ ոյք են, որ յաջորդեցին յառաջնորդութիւն սուրբ Կարապետին, որ կոչի Գլակայ վանք» (անդ, էջ 7): Այս գլխուն առաջին մասը — վանահայրերու անուանացանկը — քիչ վերջ յատուկէն նկարագրութեան պիտի առնուի: Անցնինք ուրիշ տեղեկութիւններու:

Մուշեղ Մամիկոնեանի եւ Թոդկայ վանականութեան ժամանակ «հրաշալի ինն գործեցան գործք ի վանսն Գլակայ ի դուռն

սուրբ Կարապետին» (անդ., էջ 9)։ Արծրունեաց Վարդ Պատրիկ իշխանին կինը, որ Ստեփաննոս անուն զաւակով մը բախտաւորուած էր, կը բաղձայ Գլակայ եկեղեցին մտնել, բայց վանականները անոր կը յիշեցնեն Լուսաւորչի կիներու հոն մտնելու արգելքը։ Սակայն անիկա անսաստելով՝ ներս կը մտնէ։ Եւ առանց արկածի դիպելով դուրս կ՚ելլէ — գոհ ու զուարթ։ Կը հրամայէ՝ «ճաշ առնել կրօնաւորացն եւ զամենեսեան ի սեղան կոչել եւ էին արք երեք հարիւր իննսուն եւ հինգ» (անդ., էջ 11, մինչ էջ 9՝ նշանակուած է՝ «անձինս երեք հարեւր ութսուն եւ ութ»)։ Բայց անոր անհնազանդութիւնն ու մուտքը եկեղեցապանին եւ վանականի մը սրտերը չափազանց կը յուզեն եւ անոնք Աստուծմէ անոր պատիժ կը հայցեն։ Եւ ահա գիսաւոր այր մը (Յովհ. Կարապետը. հմմտ. անդ. եւ էջ 51) երեւնալով զինքը կը մեռցնէ։

Այդ գիսաւոր այրը՝ վանական մըն էր կամ եկեղեցապանէն դրդուած աշխարհիկ մը։ Արծրունի իշխանը, որ երբեք Վարդ Պատրիկը չի կրնար ըլլալ — ժամանակը չի յարմարիր — կը սգայ իր կնոջ մահը եւ Գլակայ վանքին կը վերադարձնէ Կուասուն

եւ Պարեխ, զորոնք Կիւրեղ վանահօր օրով Սամիկոնեան իշխան մը անկէ յափշտակած էր (անդ., էջ 12)։ Եւ ասոնց վրայ դեռ երկու գիւղ ալ կը յաւելու։

Երբ Մուշեղ Մամիկոնեան պարսկական բանակին դէմ պատերազմի կը բռնուի, Պարսիկներու հրամանատարը՝ Միհրան Տարօն կը մտնէ եւ «Իբրեւ գիտացին արքն եօթն, որք Խոտաճարակք էին, եկին ի վանսն եւ զամենեսեան փախուցին զկրօնաւորսն։ Ոմանք փախեան եւ ոմանք մնացին, բայց Պօղիկարպոս զամենեսեան յուզարկեաց յամուրն Ողկան եւ ի տեղւոջն զհայրն միայն զԹոդիկ արգել»։ Իսկ Խոտաճարակները աղօթքի կը կենան հիւսելով անոր մէջ նաեւ՝ «Երեւեցի փառք քո, Տէր, ի տաճարս յայս, զոր ընարեցեր հիմնարկութեամբ սրբոյն Գրիգորի եւ բնակութեամբ սրբոյ Կարապետին» (անդ., էջ 18)։ Անոնք պարսկական սրերու զոհ կ՚ըլլան եւ անոնց նշխարները հայրն Թոթիկ եւ անոր ընկերները՝ «Իջուցին ի կողմն հարանց ի մէջ դրախտին եւ անդ փորեցին զերկիր եւ իջուցին զնոսա ի գերեզման առ Անտօն եւ Կրօնիդէս» (անդ., էջ 16—21)։ Մուշեղ խժդժութիւններու վրայ խորապէս յուզուելով՝ Հայ բանակին առաջնորդու-

թիւնը կը յանձնէ Գայլ Վահանին մաղթելով՝ «Եւ սուրբ Կարապետն եղիցի քեզ օգնական եւ պարիսպ եւ աղօթք սուրբ կրօնաւորացն յաջմէ եւ յահեկէ» (անդ, էջ 22)։ Մուշեղի մաղթանքը Վահանի յաջողութիւններու մէջ իր լրումը կը գտնէ։ Սակայն ցանցառադէպ է անապակ ուրախութիւնը։ Երկրաշարժ մը մեծ փլատներ կը պատճառէ Ս. Կարապետի, բայց «ի նոյն ամի չինեաց Մուշեղ զսուրբ Կարապետ եւ ինքն վախճանեցաւ եւ կայ ի Թաղման առ Արծրունեաց իշխանին, ի կողմն արեւելից տաճարին» (անդ, էջ 30)։ Անոր յաջորդը Գայլ Վահան «ութեւտասն գլուխ ազատեաց եւ ետ եկեղեցւոյն» (անդ, էջ 30)։ Իսկ «ի նոյն ամին վախճանեցաւ երանելին Թադիկ հայր վանացն Գլակայ... եւ նստաւ յաթոռ նորա մանկիկն Ստեփաննոս, որդի իշխանին Արծրունեաց... եւ բազում ուղղութիւնս գործեաց ի գաւառն Տարօնոյ...» (անդ, էջ 30—31)։

Գայլ Վահանին որդին՝ Սմբատ իր առաջին յաղթութեան երախայրիքը — 200 ձի — կը նուիրէ Գլակայ։ Հայր եւ որդի յաղթութիւն յաղթութեան վրայ կը նշանակեն Ս. Կարապետի անունովը եւ երբ Գայլ Վահան կը մեռնի՝ անոր նուի-

բուած վանքին մէջ կը թաղուի (էջ 34—38. հմմտ. դեռ էջ 42, 44, 46—47, 50—51)։ Այս ժամանակներուն կը մահանայ նմանապէս Ստեփանոս եւ անոր յաջորդ կը նշանակուի Եպիփան, որ քանի տարի կը պաշտօնավարէ եւ մահէն վերջ յաջորդ կ'ունենայ Դաւիթ (անդ, էջ 45—52), որուն յաջորդէն՝ Գրիգորէն Վահան եւ Տիրան խնդրելով՝ «Տարան ի պատերազմ երեք հարիւր ութսուն եւ հինգ կրօնաւոր կնկղով»։ Կը խմբուի պատերազմը։ «Կրօնաւորքն սեւազգեստք էին մազեղինօք եւ կնկղաւորք եւ ընդ տասն տանն ժամահար մի եւ ընդ երկուսն խաչապրոշ բարձրաբուն»։ Հայերը պատերազմը կը շահին, բայց Մեզաւիի մէջ կրօնաւորներէն տասնուերկու ծերեր կը սպաննուին (անդ, էջ 53—56)։ Վահան Գլակայ վանքը կը ճոխացնէ խաչի մասունքով մը, որ յետոյ Ծիծառն աւանը կը փոխադրուի (անդ, էջ 56—59. հմմտ. Բիւզանդիոն, 1905, թ. 2803 եւ Բազմավէպ, 1933, էջ 404)։ Երկու քաջամարտիկներն ալ — Վահան եւ Տիրան — իրենց յաւերժական հանգստավայրը կը գտնեն Գլակի վանքի մէջ, որ անգամ մը եւս փլուզումի կ'ենթարկուի (անդ, էջ 59—62)։

Այսպէս՝ տխուր էջով կը վերջանայ Տարօնի պատմութիւնը, բայց կ'արժէ դեռ նկատի ունենալ «Յիշատակարան»ը, ուր կարեւոր կէտեր կան Գլակի վանքի մասին:

«Ժամանակագրութիւնս այս սկսեալ առ սրբով Գրիգորիւ Զենոբայ ասորւոյ վասն որ ինչ յիւրեան տեղիսն գործեցան թողեալ գրով ի նոյն եկեղեցին: Հաճոյ է թուեալ այլոց յետոյ զնոյն պահել զկարգ, միայն որ ինչ իշխան սանս այս առնէր՝ քաջութիւն իւրաքանչիւր հայր գրեալ զիւր ժամանակին անցս թողոյր եւ աճեալ պատմութիւն Ասորւոց կոչի: Զի այն հարանց անուանքն որ գրեալ կան մինչեւ ի Թոդիկ, ամենեքեան Ասորիք էին եւ տունն այն ասորի գրով եւ պաշտամամբ է վարեալ մինչեւ ի Թոդիկ: Եւ նա փախեաց զամենայն կարգս եւ զԱսորւոց ցեղն բնահալածական արար ի վանացն...: Ի ժամանակս թագաւորութեան Հերակլեայ եւ յիշխանութեան Վահանայ... գրեալ եւ կազմեալ ի վանսն Գլակայ ի դուռն սրբոյ Կարապետին... Թողի անմոռաց յիշատակ ինձ եւ իմոցն, ես Յովհան Մամիկոնեան...: Արդ որք զկնի դոյա այլք նստին վանականք, զոր ինչ գործի յաւուրս նոցա ի տանս յայսմիկ դիցէ ի նոյն մատեանս,

զի այսպէս դասք օրինագրեալ ի մատեանս: Դարձեալ ես տէր Յովհաննէս Մամիկոնեան եպիսկոպոս, աղաչեմ զմանկունս եկեղեցւոյ Աստուծոյ, զի յորժամ զչարագրութիւնս զայս ընդօրինակէք մի ինչ թուեսցի ծաղր ումեք, այլ եւ զիմ պատճեանն անպակաս եւ լի գրով դրոշմեսջիք զհետ գրելեացդ . . .» (անդ, էջ 62—63):

Դիտենք որ այս տողերուն մէջ հետաքրքրական են՝ ա. Մ. Կարապետի միաբանները երկար ատեն ասորիներ եղած են եւ բ. վանքին մէջ ժամանակագրութեան ասորութիւնը ներմուծուած:

Զոյգ մատենագրերու Մ. Կարապետի վանքի մասին գրածները համառօտեցինք: Այդ ըրինք, որովհետեւ բաղձալի էր գիտնալ, հաւաքել եւ շօշափել այն ամէն բան որ այս վանքին պատմութեան կը հայի: Սակայն արդ հարկ է կարեւոր հարցի մը առջեւ կանգ առնուլ: Կարելի՞ է այս հաղորդուածներուն արժէք տալ եւ զանոնք իբրեւ ստոյգ ընդունիլ:

Գր. Խալաթեանց այս հարցումին շատոնց պատասխանած է՝ «Իննակեան եւ Գլակայ վանքը առանձին խնամքի եւ ուշադրութեան արժանացած լինելով հեղի-

նակի կողմից (խօսքը Զենոբի վրայ է, բայց կարելի է Յովհ. Մամիկոնեանի մերձեցնել), նա ամէն կերպ ջանք է անում սաստ հնութիւնը մինչեւ Լուսաւորիչ եւ Տրդատ հասցնել, որպէս եւ վանքային կալուածների որոշակի նշանակած սահմանները անպատճառ Հայաստանեայց եկեղեցու առաջին հիմնադիրներից հաստատուած տեսնել, որ հակառակ է արժանահաւատ աղբիւրների» (Զենոբ Գլակ, Համեմատական ուսումնասիրութիւն, Վիեննա 1893, էջ 77)։ Սուտագիր այլ թէեւ Զենոբ ջանացած է իր ընթերցողները պատրել (Պատմ. Տարօնոյ, էջ 19) եւ իր աղբիւրները սքօղել, սակայն ճիշդ ա՛յդ ջանքումն է որ իր գրութեան բովանդակութեան անճշդութիւնը երեւան կը հանէ։ Լաւ ծանօթ է լուսաւորչեան եւ յետ լուսաւորչեան դարերու պատմութեան Ագաթանգեղոսէն, Փաւստոսէն, Մ. Խորենացիէն եւ նաեւ Ղ. Փարպեցիէն (Համմ. Քնն. հրտ. Տփղիս, էջ 13, գուցէ եւ էջ 38), բայց դիտէ նաեւ այդ ծանօթութիւնը օգտագործել վերը յիշուած իր նպատակին հանելու համար — փոփոխելով եւ խեղաթիւրելով։ Վերոյիշեալ մատենագիրներէն կարելի է հաստատապէս իմանալ որ Լու-

Զենոբ անունով գիմակաւորուած — կը յօրինէ պատմութիւն մը, զոր կը շարունակէ Յովհ. Մամիկոնեան, կա՛մ աւելի ճիշդը միեւնոյն անձը զոյգ անուններով ներկայացած է (անդ, էջ 78)։ Այս կը հաստատուի բաց ի Զենոբի եւ Յովհ. Մամիկոնեանի պատմութիւններու միջեւ երեւան եկած ոճի ու լեզուի, միտումներու եւ ուղղութեան, առասպելասիրութեան եւ դիւրահաւատութեան ակնբախ նմանութիւններէն, եւ Յ. Մամիկոնեանի այն Յիշատակարանէն, որուն մէջ կ'ըսէ՝ «Եւ թարգմանեալ ի նմանէ քան եւ ութ պատճեան եւ տասն որ ի գրի առ. խս կայր եւ բովանդակեալ արարի երեսուն եւ ութ պատճեան եւ ի մի գիրս հաւաքելով թողի մանկանց եկեղեցւոյ» (Պատմ. Տարօնոյ, էջ 62)։ Կը կարծեմ թէ Յովհ. Մամիկոնեանի ակնարկած այս տաս գրքերն են՝ Զենոբէն չորս գիրք՝ էջ 7—9՝ Ա. Պատճէն, էջ 9—18՝ Բ. Պատճէն (էջ 18—19 յառաջաբան), էջ 20—40՝ Գ. Պատճէն, էջ 40—49՝ Դ. Պատճէն. իսկ Յ. Մամիկոնեանէն վեց գիրք էջ 7—16՝ Ե. Պատճէն, էջ 16—31՝ Զ. Պատճէն, էջ 31—46՝ Է. Պատճէն, էջ 46—52՝ Ը. Պատճէն (էջ 52—56՝ Թ. Պատճէն (էջ 56—59՝ «Ծիծառնեայ խաչի»

պատմութիւն), էջ 59—62՝ Ժ. Պատճէն: Ասոնք այսպէս մեկնելով հանդերձ՝ անծանօթ կը մնան «քսան եւ ութ պատճեան»-ները (անդ., էջ 62): Սակայն թողունք այս հարցերը, որոնք մեր սահմանէն զմեզ դուրս կը հանեն եւ մխրճինք Ս. Կարապետի պատմութեան մէջ[41]:

Յովհ. Մամիկոնեանի Տարօնոյ պատմութեան առաջին գլուխն է՝ «Եթէ ո՞յք են, որ յաջորդեցին յառաջնորդութիւն սուրբ Կարապետին, որ կոչի Գլակայ վանք» եւ կը սկսի՝ «Զենոբ եկաց հայր վանացն Գլակայ ամս քսան: Յետ նորա Եպիփան՝ աշակերտն Անտոնի ամս երեսուն» (էջ 7): Այս յականէ յանուանէ կը յիշուին կար—

---

41 Հմմտ. Մասիս շաբաթաթերթ, Պէյրութ 1948. Թ. 19 (72):

42 Գեղամ գեղեցիկ մտածութիւնը կ'ունենայ Մշոյ Ս. Կարապետի գաւազանագիրքը կազմելու, սակայն ինքինքը անկարող զգալով աղբիւրներու կ'առաջարկէ անոր գործադրութիւնը (Բիւզանդիոն, 1908. էջ 3495): Սակայն փորձ մը կ'ընէ: Առաջին վանահայր կը նշանակէ Գրիգոր Լուսաւորիչ եւ ոչ թէ Զենոբ ու կ'արդարացնէ՝ «Ես չեմ կարծեր նաեւ որ Գլակը Զենոբի նախանունն ըլլայ: Գլակը կա՛մ տարբեր վանահայր մըն է, կամ սրբավայրին հին անունը, ըստ այնմ որ յաճախ հանդիպած ենք ձեռագիրներու մէջ Գլաձորոյ վանք անուանակոչումներու (վանքերու մօտ եղած գահավէժներէ առնելով): Ս. Կարապետն ալ ունի փոքրիկ գահավէժներ» (անդ, 1908., Թ. 3495. հմմտ. եւ անդ, 1905. Թ. 2876): — Գեղամի համեմատ մինչեւ Ե. դար եղած բոլոր կաթողիկոսները կարելի է Ս. Կարապետի — այս է՝



Ս. Կարապետի վանքին նուիրատուութեան կոնդակին գլխազար-
դին մէջին մասը, Էջմիածնի տաճարին նկարով:

դաւ առաջնորդներն եւ անոնց պաշտօնավարութեան տարեշրջաններն ու անջրպետները, նաեւ երբեմն համառօտիւ անոնց գործունէութիւնը մինչեւ Թադէոս կամ Թովմիկ, որմէ վերջ անոր գործունէութիւնը եւ յաջորդներու անուններն ու գործերը Տարօնի իշխաններու պատմութեան մէջ կը շարահիւսուին: Հեղինակը երբեմն երբեմն նկատողութեան կ'առնու նմանապէս այն պարագան թէ՝ այս առաջնորդներէն ոմանք ո՞ր հայ կաթողիկոսին գահակալութեան շրջանին Գլակայ վանքի առաջնորդութեան ղեկն իրենց ձեռքին մէջ ունէին: Այս անդրադարձումը կ'ըլլայ այն միջոցը, որով հնարաւոր կը դառնայ վճռելու թէ ո՛րքան ճիշդ են յա-

---

Յովհաննու Մարգարեանցի — «Վանայ Հայր» համարիլ: «Թէեւ կազմած է այս գաւազանագիրքը... բայց յաջորդութեանց ժամանակագրութիւններէն ինչ ինչ եւ կարեւոր մասեր յստակութեան կարօտ կը մնան եւ այս՝ գլխաւորաբար Զենոբի շարայարութեան հեղինակ Տ. Յովհաննէս եպիսկոպոսի կազմած ատենագրութեանց քաոսային եւ հակասական թուականներուն երեւէն: Տ. Յովհաննէս կա՛մ ենթադրութեամբ նշանակած է կարգ մը յաջորդութիւններ եւ անոնց շրջանները՝ կա՛մ օրինակուելով դարէ դար բոլորովին աղաւաղուած են» (անդ, 1908. Թ. 3495): — Քանի մը տարի յետոյ Կարապետ Վ. Լուսարարեան կը հրատարակէ՝ «Գաւազանագիրք, յաջորդութիւնք վանահարց ուխտին Ս. Կարապետի... ի տպարանի Առաք. Աթոռոյ Ս. Յակոբեանց, Երուսաղէմ 1912»:

ջորդութեան շարքերն ու թուականները: Ցաւալի է՝ որ Հայ կաթողիկոսներու գաւազանագիրքն անգամ դեռ մինչեւ հիմայ կարելի չէ եղած ստուգապէս ու անթերի կազմել: Եթէ այդ ճշդուած ըլլար՝ բնականաբար աւելի դիւրաւ կարելի պիտի ըլլար Գլակայ գաւազանագիրքը քննել եւ դրական կէտի հասնիլ: Բարեբաստօրէն Գլակայ առաջնորդներու Գաւազանագրքին մէջ միայն Գրիգ. Լուսաւորչի, Ս. Սահակի, Յովհ. Մանդակունիի, Մովսէս, Աբրահամ, Կոմիտաս եւ Ներս. Շինող կաթողիկոսներու անունները յիշուած են եւ ասոնց ժամանակաշրջանները բաւական լուսաւորուած: Եւ ա՛յս կաթողիկոսներու եւ Գլակայ առաջնորդներու միջեւ եղած ժամանակագրական համեմատութիւն մը պայծառ կը ցուցնէ թէ՝ Ս. Կարապետի վանքին քանի մը դարու գաւազանագիրքը կասկածելի է եւ՝ «յերիւրածոյ»: Այնպէս կը թուի թէ հիներն ալ ատոր ուշադիր եղած են եւ ուզած թուերը սրբագրել, ինչպէս քանի մը ձեռագիրներու մէջ կարելի է նկատել: Սակայն երբեմն անկարող եղած են, աղաւաղած եւ շփոթութիւններ յարուցած:

Սկսինք·

1· Գր· Լուսաւորչէն (302—325 կամ 305—325) մինչեւ Ս· Սահակ (403—438 կամ 440) գրեթէ մէկ դարու շրջան է եւ այս ատեն Գլակի մէջ կը պաշտօնավարեն՝

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| (1 ա. | Ս. Գրիգոր Լուսաւորիչ | | | | (302) |
| 1 բ. | Զենոբ Գլակ՝ | 20 | տարի | (20) | (303) |
| 2 | Եպիփան | 30 | " | (30) | (339) |
| 3 ա. | Ստեփան | 15 կամ 18 | " | (18) | . |
| (3 բ. | Վահան | . . . | . . . | . . . | . |
| 3 գ. | Փառներսեհ) | . . . | . . . | . . . | . |
| 4 | Եփրեմ | 28 | տարի | (28) | (302) |
| | | 93 կամ | | 96 | տարի |

2· Ս· Սահակի գահակալութենէն (403—438 կամ 440) մինչեւ Յովհան Մանդակունիի գահակալութիւնը (478—490 կամ 480—502) գրեթէ 80 տարուայ անջրպետ կայ: Այս շրջանին Գլակի մէջ առաջնորդութիւն կ'ընեն՝

| | | | |
|---|---|---|---|
| 5. Յովհաննէս 10 տարի (կամ 50 տարի) | (10 | 50) | (398) |
| 6. Ղիմինդոս (կամ Զեմենդոս) 10 տարի | 10 | 10 | (415) |
| 7. Մարկոս (կամ Մակար) 18 (կամ 12) | 18 | 12 | (425) |
| | 38 կամ 72 | | |

3. Յ. Մանդակունիէն (478—490 կամ 480—502) մինչեւ Մովսէս Եղիվարդեցի (551—581 կամ 574—604) գրեթէ 70 կամ 90 տարի է եւ այս միջոցին Գլակի մէջ իբրեւ վանահայր կը պաշտօնավարեն՝

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 8. Կիւրեղ՝[43] | (22) | կամ | 22 | տարի | (22) | (480) |
| 9. Գրիգոր՝ | ( 6) | „ | 6 | „ | ( 6) | (502) |
| 10. Անդրէաս՝ | 11 | „ | 8 | „ | ( 8) | |
| 11. Ներսէս՝ | 7 | „ | 5 | „ | ( 5) | (509) |
| 12. Յովհաննէս՝ | 3 | „ | 6 | „ | ( 6) | (541) |
| 13. Սահակ՝ | 5 | „ | 7 | „ | ( 7) | (544) |
| 14. Յովհաննէս՝ | ( 6) | „ | 6 | „ | ( 6) | (549) |
| 15. Բարթողիմէոս՝ | ( 4) | „ | 22 | „ | ( 3) | (488) |
| | 64 | | | | 64 | |

4. Մովսէս կաթողիկոսէն (551—581 կամ 574—604) մինչեւ Աբրահամ Ա. Աղթամարեցի (594—617 կամ 607—611) գրեթէ 30—40 տարուայ անջրպետ կայ եւ այս ատեն Գլակայ առաջնորդ է.

16: Աթանաս՝[44] 10 կամ 16 տարի (559):

---

[43] Յովհաննէս Մանդակունիէն կը ձեռնադրուի եպիսկոպոս եւ իր օրով Մամիկոնեան մը Ս. Կարապետի կալուածներէն՝ Կուառս եւ Պարեխ կը յափշտակէ, բայց Վարդ Արծրունին զանոնք կը վերադարձնէ (Յ. Մամիկոնեան, Պատմ. Տարօնոյ, էջ 8 եւ 12—13. հմմտ. վերը):

[44] «Սա էր ի ժամանակս Մովսեսի Հայոց կաթողիկոսի, որ զԹուականն գրեաց, հրամանաւ նորին ի Դուին քաղաքի, զի նա էր տեղեակ տումարի ամենայն ազգաց (Յովհ. Մամիկոն.,

5. Աբրահամի աթոռակալութենէն (հմմտ. վերը) մինչեւ Կոմիտասի աթոռակալութիւնը (617—625 կամ 611—628) ունինք հազիւ 20 տարի եւ այս շրջանին Գլակի մէջ կը պաշտօնավարէ Կոմիտաս 8 կամ 10 տարի:

6. Կոմիտաս կաթողիկոս ընտրուելով Տարօնէն ու Գլակէն կը հեռանայ: Անոր կաթողիկոսութեան սկիզբէն (հմմտ. վերը) մինչեւ Ն. Շինողի դահակալութիւնը կայ 25 կամ 30 տարի, իսկ եթէ վերջինիս հայրապետութեան շրջանին մեծ մասն ալ հաշուենք կ'ունենանք 40—45 տարուայ անջրպետ: Ահա այս շրջանին Գլակայ առաջնորդութիւնը կը վարեն՝

| | | | |
|---|---|---|---|
| 17. Ստեփաննոս | 6 | տարի | ( 6) |
| 18. Բարսեղ | 8 | " | ( 8) |
| 19. Թադէոս կամ Թոթիկ[45] | 30 | " | (30) |
| 20. Ստեփաննոս | — | — | (—) |
| 21. Եպիփան[46] | 20 | " | (20) |

էջ 8), մինչդեռ Կիրակոսի համաձայն (Պատմ. Հայոց, էջ 24) Աթանաս Յովհաննէս Կաթ.ի հրահանգով իր մասնակցութիւնը կը բերէ այդ կարեւոր գործին (հմմտ. դեռ Մխիթ. Այրիվանեցի, Պատմ. Հայոց, Մոսկուա 1860, էջ 48):

[45] Սա եւ Ստեփաննոս Գլակի լաւագոյն առաջնորդներէն են (Յովհ. Մամիկոն., էջ 9—30):

[46] Գր. Լուսաւորչէն յետոյ Դունեցին Եպիփան՝ ԺԴ.երորդն է, Գրիգոր ԺԵ.րդ եւ Յովհ. Մամիկոնեան Լ.րդ (Յովհ. Մամիկոն.ի էջ 51, 53, 63): Ո՞ւր են միջնօղակները:

| | | | |
|---|---|---|---|
| 22. Դաւիթ | 3 | » | ( 3) |
| 23. Գրիգոր | 6 | » | ( 6) |
| 24. Յովհ. Մամիկոն | — | — | (—) |
| | | | 73 |

*կամ՝ 80—90 տարի Ստեփանոսի եւ Յ. Մամիկոնեանի տարիներն ալ հաշուելով:*

*Այսքանը բաւարար է ցուցնելու համար՝ թէ ի՛նչ արժէք ունին Յովհ. Մամիկոնեանի Գրքին վանքի նկարագրութիւնները: Նմանապէս միւս մատենագիրներուն գրաւոր աւանդութիւնները նկարագրութեան այնքան արժանի են որ կը հաւատեն թէ Տրդատեան–Գրիգորեան շրջաններուն եւ անոնցմէ վերջ՝ Տարօնի մէջ կանգնուած էր ու հոգածութեան առարկայ էր Ս. Կարապետ անունով եկեղեցի մը, որ կամաց կամաց վանական հաստատութեան կը վերածուի[47] եւ Գր. Մագիստրոսեան շրջաններուն արդէն փթթուն վիճակ կը բոլորէ:*

*[47] Մանազկերտի ժողովքին 726ին կը մասնակցի Գրիգոր եպ. Տարօնոյ, զոր Հ. Ն. Ակինեան Ս. Կարապետի առաջնորդ կը համարի (Հանդ. Ամս. 1905, էջ 368): — Հ. Մրքրեան կը կարծէ թէ Ս. Կարապետի տաճարներուն «բազմապատկումը» եղած ըլլայ Բագրատունեաց եւ Արծրունեաց շրջաններուն, «ինչպէս պատահած է այլուր այդ տաճարները, բիւզանդական հալածանքէ եկած հայ վանականներու ձեռներէցութեամբ» (Մասիս, Պէյրութ 1948. թ. 19 (72. Մայիս 12):*

Գր. Մագիստրոսի թղթերուն մէջ կը գտնենք քանի մը թուղթ գրուած՝ «Առ հայրն սրբոյ Կարապետին» կամ՝ «Առ հայրն սրբոյ Կարապետին Սարգիս եւ առ այլ եղբարսն» (Գր. Մագիստրոսի Թըղթերը, հրտ. Կ. Կոստանեանց, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 69, 70, 72, 75): Թղթերը մանրամասն շեշտ ունին եւ կարելի է խորհիլ թէ՝ Սարգիս Մագիստրոսի աշակերտներէն եղած ըլլայ (հմմտ. անդ, էջ 69 եւ 297): Մագիստրոսի ԻԵ. թղթէն բոլորովին պայծառ կ'երեւայ որ Սարգիս Ս. Կարապետի առաջնորդներէն էր: Թուղթը կը գրուի՝ «Առ հայրն սուրբ Կարապետին Սարգիս եւ առ այլ եղբարսն» եւ սկիզբը արդէն կ'ըսուի՝ «Զգիր բարերջանիկ եւ խաչակրօն հօրդ, առաջնորդի սրբոյ ուխտիդ Կարապետի եւ աստուածազգեաց միեղէն սուրբ եղբարցդ ընկալայ»: Նկատելով որ Մագիստրոսի ուսուցչական շրջանը (թէեւ միացած քաղաքականի հետ) 1020—1041 տարիներն են Սարգիս ալ հաւանօրէն այդ տարիներն անոր աշակերտած է, դարձեալ աչքի առջեւ ունենալով որ՝ Մագիստրոս 1058ին կը մեռնի, պիտի խորհինք թէ Սարգիս 1040—1050ի շրջաններուն վանահայրութեան

պաշտօնին հասած ըլլայ եւ այն՝ գուցէ Մագիստրոսի բարոյական աջակցութեամբն ու ազդեցութեամբը, քանի որ անիկա ստէպ վանքը կ՚այցելէր եւ անով կը հետաքրքրուէր (անդ, էջ ԼԶ, ԽԶ եւ ԽԵ):

Գր. Մագիստրոս եւ իր գործակալը Հրահատ Ս. Կարապետի վանքն ու Տարօն գաւառը շինութիւններով կ՚օժտեն, սակայն հրդեհ մը մեծ աւեր կը գործէ՝ «Ի նոյն ամի այրեցին զգեղեցիկ ապարանս սուրբ Կարապետին, զոր Հրահատ ոմն ի գործակալացն մեծին Գրիգորի որդւոյ Վասակայ մեծաւ ջանիւ շինեալ էր, մինչ երկրին տէր էին, զժամատունն, որ առաջի Ս. Կարապետին, զոր գեղեցկայարմար պատրաստութեամբ յարդարեաց ի փառս եւ ի պատիւ մեծ վկային եւ Կարապետին Քրիստոսի, նաեւ զայլ շինուածսն եւ զխաչանկերս եկեղեցին, զոր սուրբ Գրիգոր կոչեն: Եւ էր Թուականիս մերոյ ամք հինգհարիւր եօթն, յորժամ այս այսպէս եղեւ» (Ար. Լաստիվերտցի, Պատմ. Հայոց, Վենետիկ 1901, էջ 110):

Սամուէլ Անեցիի ժամանակագրութեան համաձայն այս շրջաններուն (ՌԾԸ. փ ՇԵ Թուին) է՝ որ Դինար ամիրան կը խուժէ Տարօն, բայց՝ «Թոռնիկ՝ որդին



Ս. Կարապետի նուիրատուութեան գլխագրին վերջաւորութիւնը. Ս. Կարապետի տաճարին նկարով:

Մուշեղայ կազմեցաւ ի պատերազմ եւ հայեցաւ ի վանս Գլակայ եւ ասէ՝ Սուրբ Կարապետ, հասիր մեզ յօգնութիւն եւ կոտորեալ զզօրսն Պարսից, էառ զառ եւ աւար ի նոցանէ» (Ժամանակագրութիւն, էջ 111· հմմտ· նաեւ Մատթ· Ուռհայեցի, Պատմ·, էջ 130)։ Քաջն Թոռնիկի աճիւնը (յետոյ) «տարան թաղեցին ի դուռն սուրբ Կարապետին» (Մատթ· Ուռհ· Պատմ·, էջ 209—210)։

Անկէ ետքը Ս· Կարապետի շուրջը երկարատեւ լռութիւն կը տիրէ։ Միայն Կիրակոս Գանձակեցիէն գիտենք՝ թէ Կուզ եւ Մէլիք Աշրաֆ՝ Իւանէի աղջկան խնդրանքին ընդառաջելով Տարօնի հարկատու վանքերուն «թեթեւացուցին զսակ հարկին» (Պատմ·, էջ 80—81), հետեւաբար եւ Ս· Կարապետին։ Բաւական (ժամանակ) վերջը՝ 1269ին Ստեփանոս՝ Մաշկեւորի եւ Անդրէասեանց վանքերու մէջ գրուած Աւետարան մը կը ստանայ եւ կ'ընծայէ Ս· Կարապետի, որուն առաջնորդներն են Գրիգոր եւ Յովհաննէս (Զարբհանէլեան Հ· Գ·, Մատենադարան, էջ 165· Սարգիսեան Հ· Բ·, Մայր Ցուցակ, Ա·, էջ 495—496)։

«Ես տրուպս ամենայն վանականաց

Ստեփաննոս կրօնաւոր ստացա(յ) գնոյ արծաթոյ յարդար վաստակոց զադարակս աստուածայնով առլցեալ գանձին, որոյ ճարտարապետն եւ արարիչ; Աստուած է (Աւետարան գրեալ 1269 թուականին) եւ աւանդեցի ի տաճարն սրբոյ Կարապետին ի վանս Գլակայ։ ...Պատճառաւ մի ելցէ սա ի սրբոյ Կարապետէն եւ ոչ հանդի-պեսցի, մի իշխեսցեն պահել ի դատ ի սուրբ Կարապետէն...: Բայց եղեւ այս ի յառաջնորդութիւն տէր Գրիգորի հեզա-հոգի արհեպիսկոպոսի եւ եղբաւրորդւոյ իւրոյ տէր Յովհաննիսի, որ են սոքա ա-ռաջին շինողք սուրբ ուխտիս...: Եւ յոգ-նամեղ Յովհաննիսի որ նշանագրեաց զա-ւետարանս եւ զյիշատակարանս գրեաց, ասացէք մի Տէր ողորմեա[48]» (անդ, Ա., էջ 496)։

1293ին կը մաղթուի յիշել՝ «զմեծ վար-դապետն իմ զտէր Յովհաննէս արհիեպիս-կոպոսն Ծաստանեցին, զմեծ դիտապետն եւ առաջնորդն սուրբ ուխտին Ս. Կարա-պետի գերահռչակ վանուցն, որ ի Տարօն»

---

[48] Կարապետ 1288ին կը գրէ Առաքելոց մեկնութիւնը «ի վանս սրբոյն Յովհաննու Կարապետի», սակայն ճշգրիտ չէ կարելի ըսել թէ Մշոյ Ս. Կարապետը ակնարկուած ըլլայ (Կարենեանց, Մայր Ցուց. Երմ. Թ. 1331)։

(Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Գեղամ Էֆէնտիէն) :

Դարձեալ՝ «Բայց գրեցաւ լուսազարդեալ Աւետարանս ի լուսաւրական ժամանակի սկզբանց արարչութեան մինչ առ մեզ ցՁԺԳ., իսկ ի կենարարին գալստենէն ՌԲՃՂԳ, իսկ Խոսրովային Պարսից սկսեալ մերս թիւ որ է ՉԼԹ ի թագաւորութեան բարեպաշտ, աստուածասէր, աստուածանշան, աստուածապարդ թագաւորին Հայոց Հեթ(մ)ոյ եւ ի հովուապետութեանս Տեառն Ստեփաննոսի:

Ես Թորոս նուաստ եւ յոգնամեղս լոկ անուամբ քահանայ... գրեցի զաստուածահրաշ Աւետարանս ի գերահրաշ ուխտս Դրազարկ ընդ հովանեաւ սուրբ եւ փառաւորեալ Տիրամաւր Աստուածածնիս... յառաջնորդութեան տէր Թորոսի: Եւ յոր սակս գրեցի զսա սաստից փոքր ի չարէ՝ յիշելով եւ զպատմութիւնս ծերունի հաւրն իմոյ զհայրենի գաւառէն Տարաւնի կոչեցելոյ եւ զՏարաւնոյ եւ զփիլոս սուրբ եւ յառաջընթաց Կարապետին եւ Ամբրդւոյն Յովհաննու... ի վաղուց հետէ ցանկայի տեսանել զսուրբ ուխտն եւ զհայրենի գաւառն իմ եւ մինչեւ ցայս վայր ըղձալի աչաւք ոչ տեսի, այլ մտաւք յամենայն ժամ

եւ ածի զբանս իմաստից զմտաւ թէ զինչ այլ ինչ է իմաստութիւն, բայց խոկումն մահու եւ զկնի մահու յիշատակ բարի:

Եւ ես ինքնին ձեռամբ իմովք գրեցի զցանկալի Ս. Աւետարանս եւ յարդար ինչից իմոց ետու զսա ոսկեծաղկօք, ոսկի գլխագրովք, համաբարբառաւք եւ չորեսին խորանաւք եւ բազմերանգ գունով՝ կազմաւք եւ արծաթի կոճակաւք յարմարեցի ըստ իմ փանաքի եւ թարմարար կարի եւ ետու զսա ընծայ սրբոյն Յովհաննու Կարապետի, որ ի գաւառն Տարաւնոյ յառաջնորդութեան Տէր Յովհաննէսի գերամաքուր եպիսկոպոսին եւ խնդրեցի ի նմանէ եւ ի վարդապետէն Յովհաննէսէ մաքուր ոգւոյ եւ ի Յակոբայ եւ ի Կարապետէ եւ նոքա յանձն առին յաւժար կամաւք, զի աւրն այդ արասցեն եւ ամենայն ամի մի աւր զպատարագն, ժամարարին ինձ եւ իմ ծնողացն արասցեն...» (Լուսարարեան, Գաւազանագիրք, յաջորդութիւնք վանահարց ուխտին Ս. Կարապետի Տարօնոյ..., էջ 65):

Յովհաննէս գովեստներով դեռ կը յիշատակուի՝ «Փառք... յամի եօթնհարիւրերորդի յիսներորդի չորրորդի (1305) եղեւ կատարումն... պատարագի Մեկն-



ՄԿՐՏԻՉ ԵՊ. ԽՐԻՄԵԱՆ

Առաջնորդ Տարօնոյ 1862—1869 † 1907:

չիս (Ն. Լամբրոնացւոյ) ձեռամբ Յորդանան արեգացի, ապիկար եւ անպիտան կրաւնաւորի, զոր ես գրել ետուր եւ երջանիկ րաբունին մեր Ստեփանոս վարդապետ տեառ. եւ վերադիտող Տարսոնոյ Սուրբ Կարապետին յիշատակ իւր... եւ սուրբ հայրապետին հեզահոգի եւ ճշմարիտ գիտին տէր Յոհաննէսի առաջնորդի սուրբ ուխտին սուրբ Կարապետին...» (Տէր-Աւետիսեան, Ցուց. հայ. Ձեռ. Նոր Ջուղայի, Թ. 467, անտիպ):

Լուսաբանեալ «Գաւազանագիրք»ը Յովհաննէս Զ. Ճառամիցիէն յառաջ կը յիշէ՝ առաջնորդներ՝ Դաւիթ Բ. (1180), Յովհաննէս Գ. (1181), Խաչատուր (1204), Յովհաննէս Է. (1268). իսկ անոր կը յաջորդեն՝ Յովհաննէս Է. (1316)[49], Դաւիթ Գ. (1342, անդ, էջ 68—89):

Այս շրջաններուն կ'երեւայ թէ Յովհաննէս Երզնկացին Ս. Կարապետ կը հանդիպի եւ ի դրանի Անտանի ու Կրանիգէսի շարական մը կը շարահիւսէ՝ «Յովհաննէսի Երզնկացւոյ ասացեալ ի փառս Իննակեան, որ է յանուն սուրբ Կարապետին՝

[49] «Ի խնդրոյ աստուածասէր ծերունւոյն Սարգսի Յովհաննէս կը գրէ Գործք Առաքելոց, զոր նա «ուսանելոյ զատ ի սուրբ Կարապետն» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գերամէն ա. 1312):

Յաւուրց վերջին ժամանակի
Շինեաց զիւր տուն եկեղեցի
Հաւրն գթած երկնաւորի
Իմաստութիւն Բան եւ Որդի...։
Դրունք դժոխոց խորտակեցան
Որ յԻննակեան տեղիս անկան
Հոյլքն դիւաց հալածեցան
Հրեշտակք ընդ մեզ դասակցեցան։
Ի ձեռն առեալ Լուսաւորչին
Զնշխար սրբոց Կարապետին
Շուրջ պարապեալ զկողմ աշխարհին,
Շնորհաւք աջոյն զԲանն ածողին...»։

(Ձեռ. Մխիթ. Մատ.ի ի Վիեննա, թ. 173, թղ. 244բ. հմմտ. Տաշեան, Մայր Ցուց., էջ 489)։

Դրագարկի մէջ գրուած Աւետարանը (հմմտ. վերը) 1347ին Ս. Կարապետէն կը գողցուի, բայց Կիրակոս զայն գնելով կը վերադարձնէ եւ փոխարէն կը ստանայ պատարագ եւ այն՝ Ստեփանոս «Հայրպետ»էն ու միաբաններէն (Խաչիկեան Լ., ԺԴ. դարի Հայերէն Ձեռագիրների յիշատակարանները, Երեւան 1950, էջ 356)։

1370էն յառաջ Ս. Կարապետի առաջնորդութիւնը կը գտնենք ձեռքը Յովհաննէս Ալինախի (հմմտ. Առաքելոց վանքը),

որ այդ Թուականին Աւետարան մը կը գրէ (Սարգիսեան, Մայր Ցուց., Ա., էջ 779—780. Հմմտ. Լուսարարեան Գաւազանագիրք, էջ 69): Իսկ Բաբերդի Յովհաննէս եպիսկոպոսը կու տայ «Աստուածաշունչ գիրքս ի Տարաւնոյ սուրբ Կարապետին» զոր 1376ին Ասլան եւ Յուղիտա՝ «ստացան... յիշատակ անջնջելի ի սուրբ մենաստանն Յիննակնի» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. էջմ. 375):

Լանկթիմուրեան ասպատակութիւններու եւ անոնց հետեւանքով եղած խռովութիւններու միջոցին շատեր՝ «Եկեալ հասին... ի դաւառն Տարօնոյ, ի քնարան սուրբ Կարապետին Յովհաննու եւ Աթանագինեայ ի մեծահանդէս մայրաքաղաքն ի վանսն Գլակայ Ասորւոյ Զենոբայ» (Թովմ. Մեծոփ. Պատմ., էջ 21):

«Արդար եպիսկոպոս սուրբ ուխտին» Գլակայ Յակոբ ճգնաւորին հետ[50] վշտա—

[50] Լուսարարեան Յակոբ ճգնաւորը առաջնորդ կը համարի (1370) եւ անոր յաջորդ կը նշանակէ Արդար եպիսկոպոսը (1390), որ սակայն շատ ընդունելի չերեւար (Գաւազանագիրք, էջ 69): 1421ին՝ «Հրամանաւ երանելի վարդապետին Ստեփաննոսին, որ ի վանսն Իննակեան, որ յանուն սուրբ Կարապետին» Տիրացու քահանան ճաշոցի մասեր կը գրէ (Աճառեան, Ցուց. Հայ. Ձեռ. Թաւրիզի, էջ 111—114. Հմմտ. Տաշեան, Մայր Ցուց. Հայ. Ձեռ. Մխիթ. Մատ., էջ 181):

կոծ ուխտաւորներն ու ապաստանեալները սիրով կ'ընդունի եւ զանոնք կը սփոփէ (անդ., էջ 22—23. Հմմտ. եւ Լուսարաբեան, Գաւառագանագիրք, էջ 69—70)։ Դժբախտաբար Ս. Կարապետի վանքն եւս բանութիւններու եւ յափշտակութիւններու պատճառով կ'անչքանայ, բայց բարերարներ ալ պակաս չեն ըլլար, ինչպէս հետեւեալ յիշատակարանը կը հաղորդէ՝ «Փառք... ես նուաստ Մչեցի Դաւիթ երէցս ի դառն ժամանակին, որ այլազգիքն դադդյս քրիստոնէից, եւ առաւել դժոխակաւոր ուխտն զսուրբ Կարապետ Տարունոյ եւ նոքա ի չքաւորութենէն բերեալ դրաւէին այլազգեաց...: Եւ իմ ի հալալ արդեանց ալլի Մ. դեկան եւ Թափեցի զսուրբ Աւետարանս եւ վերստին դարձուցի ի Ս. Կարապետս յիշատակ ինձ եւ նախնեաց իմոց եւ զաւակին իմոյ Յովանէսին եւ կողակցի եւ այլ ամենայն արեան մերձաւորաց, որք ընթեռնուք զԴաւիթ քահանայս յիշեցէք ի Քրիստոս... ի Թվ. Հյց. ՊԾԷ (1408), որ Թափեցի» (Արարատ, 1905, էջ 716. Աւետ. Հեթում Թագաւորին)։

Կիրակոս Վիրապեցիին կաթողիկոսական ընտրութեան կամ Հայրապետական



ԳԱՐԵԳԻՆ ԵՊՍ. ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ 1840—1892

ութեան Էջմիածին փոխադրութեան իրենց գրաւոր համաձայնութիւնը կը ցուցնեն «Տէր Բարսեղ եւ Տէր Աւետիս եպիսկոպոս, Տէր Յովսէփ, Տէր Գրիգոր, Տէր Թորոս՝ գերահռչակ ուխտին սուրբ Կարապետին» (Թովմ. Մեծոփ. Յիշատակարան, էջ 53)։ Անշուշտ հոս յիշուած Գրիգոր եպիսկոպոսն է որ Գր. Մակուեցի կաթողիկոսին կը յանձնարարէ Եզրդուտի Կարապետ վարդապետը (Բիւզանդիոն, 1907, թ. 3159)։

Լուսարարեան վերյիշեալ եպիսկոպոսները յաջորդաբար Գլակի առաջնորդ կը նշանակէ, այսպէս՝ Աւետիս (1415—1424)[51], Յովսէփ (1424—1433), Գրիգոր

[51] 1402ին գրուած Դուշանց գրքի մը յիշատակարանութեան մէջ մաղթանք կ'ըլլայ յիշելու՝ «... գեպիսկոպոսն Տարօնոյ զտէր Աստուածատուրն, որ օգնական եղեւ ի նիւթ սորին» (Նոտարք, էջ 17—18)։ Իսկ Յովհաննէս արքեպիսկոպոսի եւ համանուն Աւետիսի մասին ունինք դեռ հետեւեալ յիշատակարանը՝ «Թուին Պ... ի հայրապետութեան տէր Մեսրոպայ, յեպիսկոպոսութեան տէր Յովհաննէսի արքեպիսկոպոսի եւ համանուն Աւետիսի կոչեցեալ ի առաջնորդութեան սուրբ գերեզմանին Ս. Կարապետի ի քաղաքին Մուշ ընդ հովանեաւ սուրբ Մարինէի ձեռամբ Մարտիրոսի գրեցաւ (ծաղկոյն)։ Եւ խոշոր գրիս անմեղադիր լերուք, զի յոյժ ծեր էի եւ ոչ էր ժամանակ գիր գրելոյ, այլ ի հարկէ եղեւ եւ թուղթն թանկ էր... վասն այնորիկ թամամ չգրեցաւ։ Զկազմողս զտէր Յովհաննէս արքեպիսկոպոս համանուն Աւետիսն յիշել...» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէ)։

(1436), Թորոս (1455), որ սակայն բռնազբօսիկ կը թուի եւ Մեծոփեցիին խօսքերուն եզրակացութիւնը չի կրնար ըլլալ: Հարկ է նկատել որ հայկական վանքերու մէջ եպիսկոպոսներու բազմութիւն ցանցառադէպ չէ: Անոնք զանազան պատճառներու համար՝ նախասիրած վանքի մը մէջ իրենց կեանքը, մանաւանդ ծերութեան շրջանը, կ՚անցնէին:

Ս. Կարապետի անուանի վանահայրներէն եղած է Յովհաննէս նահատակ եպիսկոպոսը, որ «էր յերկրէն Մշոյ, ի գեղջէն Բողարըլրոյ» (Քօսեան Հ. Յ., Ցուց. Հայ. Ձեռ. Կարնոյ գիւղերու, Թ. 8, անտիպ): Մատաղ հասակէն Ս. Կարապետի կ՚անդամակցի եւ կրօնաւորական ժուժկալութեամբ շատերուն ուշադրութեան առարկայ ըլլալով «արժանացաւ ձեռնադրիլ յաթոռ եպիսկոպոսութեան նոյն աստուածաբեալ տեղւոյն Իննակեան» (Հայ Նոր Վկաներ, էջ 299): Շինարարական գործունէութեան անյապաղ կը նուիրուի՝ «ձեռնարկեաց առ ի նորոգել վերստին զտաճարն սուրբ Կարապետին եւ յօրինեաց զնա գեղեցիկ շինուածով եւ այս ձեռնարկեաց ի մեծ կաթուղիկէն ի վկայարան սրբոյն Ստեփանոսի Նախավկային» (անդ, էջ 300·

Հմմտ. Թորոս Աղբար, Բ., էջ 307 եւ Նօտարք, էջ 212—213)։ Յովհաննէսի ձեռնարկը յաջողկոտ Դմլլիներու անհաճոյ կ'ըլլայ — դժբախտաբար նաեւ իր միաբաններէն ու ընկերներէն նախանձողներ կ'ունենայ (Նօտարք, էջ 213) — եւ զինքը Մուշի գաւառապետին առջեւ կը զրպարտեն՝ իբրեւ թէ շինարարութեան քար հայթայթելու համար մզկիթ մը քանդած ըլլայ։ Գաւառապետը զինքը Բաղէշի ամիրապետին տանիլ կու տայ։ Վերջինս հարցը առանց լրջօրէն քննելու զինքը տանջանքներու կ'ենթարկէ։ Եւ անիկա համբերութեամբ ամէն տանջանքի եւ զրկումի կը տոկայ եւ ապա ուժաթափ՝ կը մեռնի։ «Այս գործեցաւ ի ՋԺԲ (1463) թուին, յերկրորդ Զարեքչարթի Յինանցն ի Քաղոց ամսոյ ԻԶ» (Նօտարք, էջ 213—214. Գաւազանագիրք, էջ 72—76. Հայ Նոր Վկաներ, էջ 303)։

Յովհաննէս նահատակի կամ Արգարի (Բաղչեցի) յաջորդն է Մելքիսեդ արքեպիսկոպոսը։ Պատկ Ծ. Վ. Տէր Խորէնեան կը գրէ՝ «Մշոյ Ս. Կարապետի վանուց աւագ տաճարին պատին ետեւ կրօնաւորաց երամէին մէջ ահագին խաչաքար — գերեզման մը կայ, որուն վրայ կը գրուի «Մել-

քիսեդեկ արքեպիսկոպոս առաջնորդ սուրբ ուխտիս 1460»: Մենք կը կարծենք թէ մեր այս Մելքիսեդեկ արքեպ․ հաւանաբար յառաջնորդութեան Խլպաչի Ս․ Կարապետին ընտրուեր եւ գացեր է յառաջնորդութիւն Ս․ Կարապետի Մշոյ եւ անդ վախճաներ» (Տարեգիրք Քղիի հայրենակցական միութեան, 1937, էջ 27): Իսկ անոր յաջորդն է Ստեփանոս Գ․ Ծխենց (1463), եւ անոր յաջորդը՝ Մկրտիչ Ա․ (1471, Հմմտ․ Գաւազանագիրք, էջ 76—77):

Յայտմաւուրք մը կը գրուի 1480ին ի քաղաքն Արծկէ, զոր Գլակայ Մկրտիչ առաջնորդը կը ստանայ «ի վայելումն հարազատ եղբարց իւրոց պաշտօնէից եւ սպասաւորաց սուրբ Կարապետին եւ... Ես զայս ի նուէր եւ անջինջ յիշատակ ի վանս Գլակայ ի դուռն սուրբ Կարապետին»:

Այն Յայտմաւուրքի յիշատակարանին մէջ Մկրտիչ արքեպիսկոպոսի գործունէութիւնը կը նկարագրուի՝ «Իսկ աւարտեցաւ գիրքս ի կրկնեալ ամին, որ աճեալ թուական ՋԼ․ որ էր տանուտէրն Խայն: Որ եւ ի սոյն ամին հայրապետն սուրբ ուխտին Գլակայ տէր Մկրտիչն իւր համաշունչ եւ միաբան եղբարքն ձեռնարկեցին

ի սալէլ զգումբէթ սուրբ Կարապետին, զսուրբ Ստեփանոսին եւ զՅարութիւնին ուժանդակութեամբ գլխաւորին Ստեփանոս եպիսկոպոսին, որ մականուամբ Ծղմնց տափ, զոր Տէր Աստուած խաղաղութեամբ ի կատարումն ածցէ» (Քօսեան Հ. Յ., Յուշ. Հայ. Ձեռ. Կարնոյ գիւղերու, Թ. 8, անտիպ. հմմտ. ընդարձակօրէն, Յովհ. քհ. Վաղարշակերտցի, Ճանապարհորդութիւն, Կ. Պ. 1870, էջ 21):

Մկրտիչին յաջորդը կ'ըլլայ Մելքիսեդ(եկ) եպիսկոպոսը[52]:

Կոստանդին գրիչ ՋԽԲ (1493) թուականին կը գրէ Աւետարան մը՝ «Ի գաւառն Տարօնոյ յերկնահանգէտ սուրբ ուխտիս եւ հրեշտակացս մենաստանիս յԻննակեան վանս ընդ հովանեաւ սուրբ Կարապետին... յառաջնորդութեան ուխտին Տեառն Մելքիսեդեկ եպիսկոպոսի ի խնդրոյ Հայրապետ քահանայի» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ., Գեղամէն):

Ս. Կարապետ վանքի «Ս. Հեթում թագաւոր» կոչուած Աւետարանին արծաթա-

---

52 Ս. Կարապետի միաբաններէն է (ժամանակ մը) Յովհաննէս Թլկուրանցի բանաստեղծը — տաղասացը, որ Սսոյ կաթողիկոս կ'ըլլայ (հմմտ. ի մէջ այլոց Սիսն, 1928, էջ 217):

պատ եւ ոսկեզօծ կողքին վրայ սքանչելի նրբութեամբ ներկայացուած է Քրիստոս քրովբէական աթոռի վրայ եւ դիմացը Ս. Աստուածածին, շրջապատուած ԺԲ. առաքեալներով եւ քանդակուած՝ «Տէր Աստուած Յիսուս Քրիստոս, որ նստիս ի քրովբէական աթոռ, ողորմեա քոյ արարածոց եւ տուողի արծաթոյս Տէր Մելքիսեդեկ եպիսկոպոսի սուրբ Կարապետի, յիշեցէք զկազմող պատկերացս զԿարապետ աբեղայս, յիշեցէք զոսկերիչ քՀն (?, Քանդա՞յն) եւ զՇահդութն յիշեցէք թվին ՉԽԲ (անդ, հմմտ. եւ Գաւազանագիրք, էջ 77):

Մելքիսեդ. առաջնորդի օրով Ս. Կարապետի վանքին մէջ բաւական արտագրութիւններ կ'ըլլան: Մարտիրոս ՉԾԴ թուին Աւետարան մը կը գրէ՝ «Ի վանս Գլակայ ի դուռն սուրբ Կարապետին ի համալսարանս Գրիգոր քաջ րաբունոյ եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Մելքիսէթ արհիեպիսկոպոսին...» (Tisserand E., Cod. Arm. Bibl. Vaticanae, էջ 124. հմմտ. ուրիշ մը՝ Բարխուդարեան, Արցախ, էջ 334): Նոյն թուականին՝ «Ի դուռն Մշու սուրբ Կարապետին» Տէր Մարտիրոս — հաւանականաբար վերը յիշուած գրիչը — Գանձարան մը կ'արտագրէ «Ի վայելումն

Տէր Ստեփաննոս եպիսկոպոսի[53]» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ., Գեղամէն) :

Մարտիրոսէն ունինք դեռ ուրիշ յիշատակագրութիւն մը՝

«Անարհեստ եւ փանաքի գրիչս Մարտիրոս ցանկացող եղէ... սուրբ Աւետարանիս եւ գրեցի զսա մեղաւոր եւ անարժան ձեռօք իմովք բազում աշխատութեամբ ի Թվականիս Հայոց ՋԾԸ (1509) ի գաւառիս Տարաւնոյ յերկնահանգէտ սուրբ ուխտիս եւ հրեշտակացոյց մենաստանիս Գլակայ վանք կոչեցեալ ընդ հովա–

---

[53] Այս շրջաններուն Գլակայ մէջ ապրած է Թորոս աբեղան՝ «Ես Թորոս... աբեղայս... որ եմ ի գաւառէն Տարաւնոյ եւ ի վանացն Գլակայ ի գեղջէն Տամս եւ յետոյ կոչեցեալ ի Բաղըշ, ծնեալ եմ ի Տամ եւ սնեալ եմ ի Բաղըշ եւ յետոյ գնացեալ ի գաւառն սուրբ Կարապետին եւ եմ ծառայ եւ խոստ եւ մատաղ սուրբ Կարապետին, որ եմ հաստակուռ կարճ. գնեցի զՄկրտիչ մագաղաթ շարակնոցս ի Տէր Յովհաննէս որդոյ աշակերտէ ի Ռ. ութմանի եւ յետոյ խոց մի եւ այծ մի այլ, տուի յարգար ինչից իմոց ի թուին Հայոց ՋՀԱ եւ յետոյ յՋՀԸ գնացեալ շարականքս գրել տուի եւ կազմել ի Բրդատամն ի վանս Խարտիշարու, որ յանուն սուրբ Կարապետին շինեալ է եւ ի յառաջնորդութիւն Կարապետ եպիսկոպոսին եւ յայլ միաբան եղբարց, որ կան հաւաքեալ ի սուրբ ուխտիս եւ են միահամուռ թիւք ողջային...: Գրեցաւ ձեռամբ... Յովսէփ սուտանուն եպիսկոպոսի (որդի Մարտիրոսի եւ Դշխոյի. Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. էջ. 1590, Շարակնոց):

նեաւ սուրբ Կարապետին եւ սուրբ Սաւ-փաննային եւ սուրբ Գրիգոր Լուսաւորչին ի հայրապետութեան Տեառն Տեառն Եղիշէի եւ յառաջնորդութեան մերոյ սուրբ ուխտին Տէր Մելքիսեդէկի, Տէր Յովսէփա, Տէր Սաւփաննայի եւ քաջ րաբունապետի Գրիգոր վարդապետի եւ հայրապետացն Տէր Մկրտչին, Տէր Յովհաննէսին եւ Տէր Յակոբին եւ ի կայսրութեան՝ ընդակալութեան այդին Նեառզայ Շահ Իսմայէլին, որ բազում աճիրս գործեաց եւ շատ աւեր արար աշխարհիս եւ մերոյս ամիրային Սուար պակին եւ որդոյն նորա Ալլի պակին ի թշուառ եւ ի չար ժամանակիս... Այլ եւ տանուտէրն Մխիթար... յիշատակ իւր եւ ծնողացն իւրոյ հայրն Մարգարին եւ մայրն Աննային եւ կնոջն Զամպուրին... Արդ յիշելով զվերոյգրեալքս զՄոյսիս Մխիթարն... եւ՝ զեղկելի գրիչս զՄարտիրոս եւ զծնողսն իմ զՂազարն, զԱզաթն... եւ զհոգեւոր եղբարքս մեր զտէր Կարապետ եւ զմագդաղին, որ յաւետարանի կազմելոյ աշխատեցաւ եւ զՂազարն որ ձեռնտու է մեզ ի կոկել թղթիս... եւ տէր զՍաւփաննան, որ խնամածու է մեր...» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէն):

1512ին Մարտիրոս կը գրէ Աւետարան

մը՝ «Ի փառս Գրակոց ի դրունս Ս. Կարա-պետին ի յառաջնորդութեան սուրբ ուխ-տիս տէր Մելքիսէթ եւ տէր Ստեփաննոս արհի հայրապետաց եւ տէր Յակոբ հայր-ապետին...» (Ակինեան Հ. Ն., Համառ. Յի-շատ. Ձեռ., Խառայեանի Երուսաղէմի հայ. Ձեռ. Ցուց. Թ. 1912):

1526ին Կարապետ Բաղիշեցի կ՚արտա-գրէ Յայսմաւուրք մը եւ զայն կը ծաղկա-զարդէ Մարտիրոս երեցով՝ «որ եմ ես, — իր մասին կը վկայէ — ի գաւառէն Տա-րօնոյ, վարժեալ ի դուռն սուրբ Կարապե-տին» (Հանդ. Ամս. 1937, էջ 322): Երկու տարի յետոյ (1528ին) Մարտիրոս դպիր Մագդասի Մխիթարի խնդրանօք կը գրէ Աւետարան մը՝ «Ի դուռն սուրբ Կարապե-տին» (Ակինեան Հ. Ն., Համառ. Յիշատ. Ձեռ., Գեղամէն):

Մէկ տարի վերջը (1529) Աստուածա-տուր եպիսկոպոս կը գրէ՝ «Պատմութիւն Գրակոց... ի սուրբ ուխտս Գրակոց ի յա-ռաջնորդութեան Թումայ եպիսկոպոսի..» (նոյն, Հ. Պաստրեանէ):

Այս շրջաններուն Ս. Կարապետի մէջ կը ծաղկի Գրիգոր Մշեցի կամ Տարօնեցի, որ տաղաչափին եւ շինարարական գոր-ծունէութեամբ անուանի կը հանդիսանայ

(Հմմտ. Բարձր Հայքի վանքերը. Կայի-փոսի եւ Աւագ վանքերը):

Նա իր մասին կը վկայէ 1496ին «Որ եմ աշխարհաւ Տարաւնեցի ի վանացն Ամլորդւոյն» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ., Գեղամէն. ա. 1496): — Գրիգոր Զարթանի գործունէութեան մասին հմմտ. Հանդ. Ամս. 1951, էջ 184):

Մաղաքիա Դերջանցին Աւետարանի մը յիշատակագրութեան մէջ կ՚արտայայտուի՝ «Ես նուաստ Մաղաքիա վարդապետ Դերջանեցի, ի գեղջէ Փաղձա, որդի Մկրտիչ քահանայի. աշակերտեցի երջանիկ րաբունապետին Գրիգորի Մշեցոյ[54], որ էր նման Տաթեւացւոյն եւ լի շնորհօք, որ եւ շինեաց զսուրբ Կարապետոս պարիսպն եւ զեկեղեցւոյ միջի սալակապն եւ զժամատանցն եւ զկէս խցերուն եւ զտնտեսատուն եւ զսուրբ Յովհաննու քարեայ ժամատունն եւ այլ բազում չէնք անդ եւ ապա զԿարապետու հարաւային ժամատունն եւ այլ բազում չէնք անդ եւ Դ. խուց եւ գնաց յԵրուսաղէմ եւ շինեաց...» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. Տէր Աւետիսեանի

[54] Երուսաղէմի Թ. 1455 Ձեռագրին մէջ կայ՝ «Գովութիւն Գրիգոր Վ.ի Մշեցոյ ի Մաղաքեայ իւր աշակերտէ ասացեալ... Հայր անկաւղ այդեստանեաց...»:

Նոր Ջուղայի հայ. Ձեռ. Ցուցակէն. հմմտ. Մաղաքիա Դերջանցիի մասին Հանդ. Ամս. 1952, էջ 374) :

Գրիգոր մեծապէս կ'աջակցի Մելքի-սեթին :

Գաւազանագիրքը Մելքիսեթի աջա-կից եւ յաջորդ գիտէ Ստեփանոս Դ. Տա-րօնցի (1503—1505)[55], Զաքարիա Ա. (1504), Յովհաննէս Ժ. (1509), Յակոբ Բ. (1515), Ղազար (1520), որոնք յիշատա-կարաններու մէջ կը յիշուին, ինչպէս եւ Յովսէփ ու Թովմաս (հմմտ. անդ, էջ 78—80 եւ վերը) :

1549ին Ս. Կարապետի առաջնորդու-թեան ղեկը ձեռքն է Աստուածատուր Ա.ի, որ իր յաջորդին Անդրէասի եւ Թորոս եպիսկոպոսի հետ կը յիշատակուի՝ «Ստա-ցողի գրոցս տէր Թորոս եպիսկոպոսի եւ իւր ծնողացն, որ եւ խնդրեաց զպատմու-թիւն սուրբ Հարանց վասն սուրբ Կարա-պետի վանաց Գլակայ, որ այժմ Ինձակեան կոչի: Ես... Աստմս յանձն առի եւ գրեցի զսա վասն յիշատակ լինելոյ սորա ի դուռն սուրբ Կարապետին եւ գրեցաւ սա ի Թվիս

[55] «Ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս Գլակա Ստե-փանոս արքեպիսկոպոսին» ՋՀԵ (1526) թուին Սարգիս Ծա-ռաենց մը կը գրէ (Ակինեան Հ. Ն., Համառ. Յիշատ. Հայ. Ձեռ. ի Բէյրութ) :

ՋԾԸ ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ… ի յառաջնորդութեան Գրակոյ վանացն տէր Աստուածատուր եպիսկոպոսի եւ տէր Անդրէասին եղբօրորդւոյ նորին, որ յայսմ ամի եւ սա եղեւ եպիսկոպոս… ողորմի ասացէք Թորոս եպիսկոպոսին եւ Աստոմ դպրին, ամէն» (Գաւազանագիրք, էջ 81, իսկ Աստուածատուրի մասին Հմմտ. Ադանունի, Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի, էջ 30 եւ Բանասէր, 1899, էջ 82)։

Անդրէասի յաջորդին Մելքիսեդեկ Բ.ի օրով «չինեցաւ եկեղեցին սրբոյ Կարապետին մինչեւ ցսիւնս ութն արդեամբք եւ ջանիւք բարեպաշտ իշխանին Պուստախի» ինչպէս արձանագրութիւն մը կը վկայէ (Գաւազանագիրք, էջ 81)։ Մելքիսեդեկի մահարձանին վրայ գրուած է՝ «Կանգնեցաւ խաչս ի փրկութիւն հոգւոյ Մելքիսէթ եպիսկոպոսին, տէր Ներսէսին եւ ծնողաց մերոց, ամէն. Թվ. ՌԺԲ եւ յամի Տեառն 1563» (անդ, էջ 82)։

Անոր յաջորդն է Կարապետ Ա. որ 1576ին գրուած Աւետարանի մը յիշատակարանին համաձայն Ս. Կարապետի գմբէթը կը նորոգէ՝ «Եւ ի յայն ամին դրեցաւ Աւետարանս, որ մեծ բարունի վարդապետն մեր Կարապետ սուրբ Կարապե-



ԲԱԲԳԷՆ Ծ. Վ. ԿԻՒԼԷՍԷՐԵԱՆ

Առաջնորդ Մշոյ եւ ապա Աթոռակից Կաթողիկոս:

տու դումբէթն նոր նորոգեց...» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Հայ. Ձեռ. Գեղամէն. Հմմտ. եւ Գուսանագիրք, էջ 82):

Կարապետ Ա.ի յաջորդին — Յովհաննէս ԺԱ.ի — եւ կարեւոր իրադարձութիւններու յիշատակութիւնը կայ Եղրդուտի մագաղաթեայ աւետարանին մէջ՝ «Արդ որ կարդայք կամ հեղինակէք զսուրբ Աւետարանս յիշեցէք զհաւատարիմ ծառայն Աստուծոյ զՍիմէօն սարկաւագն, որ բազում աշխատութեամբ եառ վերստին նորոգել եւ կազմել զսուրբ Աւետարանս, քանզի ի դառնութենէ ժամանակիս, որ այլազգիք կու նեղէին զվանականք եւ նոքա որ վանականք էին զսուրբ Կարապետի արդիւնքն՝ ի դարանս, թէ գիրք, թէ չուրջառ կու դնէին, որ անխախոխ մնան, որ եւ ասէ ի բազմանալ անօրինաց ցամաքեցի սէր բազմաց եւ յորժամ բացին զդարան, զի ամենեքեան փտեալ էին, կայր գիրք որ ամփոփեցին, որ ի բան չէր գալ, զայս լուեալ երկիւղած ծառայն Աստուծոյ Սիմէօն փափագանաւք եառ բերել ի Համիթ եւ զամենեսեան նորոգեաց, թէ Աւետարան էր եւ թէ Աստուածաշունչ էր եւ կրկին դարձոյց ի տաճարն սուրբ Կա-

բաղեալին... Աստուած ողորմի ասացէք պատուական Սիմէօնի եւ ծնողաց եւ եղբարց խօճա Շահամին: Վերստին կազմեցաւ սուրբ Աւետարանս ի մայրաքաղաքն Համիթ, ի դուռն սուրբ Կիրակոսի Թվ. Հայոց ՌԻԳ. (1574) յառաջնորդութեան քաջ րաբունապետին մերոյ տէր Յովհաննէս վարդապետի, որ յայսմ ժամանակի քաղցրահամ վարդապետութեամբ լուսով փայլի որպէս զարեգակն ի մէջ Հայոց ազգիս...» (Հմմտ. Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ., Գեղամէն. Հմմտ. Արարատ, 1905, էջ 717):

1582ին Աւետիս Ս. Կարապետի մէջ կը գրէ Եղրդուտի Կիրակոս առաջնորդին համար Աւետարան մը (Ակինեան Հ. Ն., անդ, ա. 1582):

Այն Թուականին կը մեռնի Յովհաննէս առաջնորդը[56] (Արարատ, 1905, էջ 723), որուն կենդանութեան (1580) Կարապետ գրիչ — որդի Հայրապետի եւ Հռփսիմէի — Յովհաննէս քահանային խնդրանքին անսալով Ձեռագիր մը կը գրէ (Ակինեան Հ. Ն., անդ, Գեղամէն, ա. 1580):

---

56 Յովհաննէս աբեղան 1553ին կը գրէ պատմական տաղ մը, որ կ'ըսուի՝ «Տրուպ տառապող անձամբ Յովհաննէս անուն աբեղայն, որ է ի Տարօն գաւառէն, ի վանուց որ է Գլակայն» (Բազմավէպ 1939, էջ 114):

Գաւազանագիրքը Յովհաննէսի յաջորդ կը դնէ Մարտիրոս, որուն օրով Ս. Կարապետի մէջ շինութիւններ կ'ըլլան եւ այս Կարապետ (Հմմտ. անդ, էջ 82): Ստեփանոս վարդապետը ի վայելուչ Կարապետ եպիսկոպոսին Ս. Կանանց վանքին մէջ ՌԼԷ թուին կ'աւարտէ Աւետարան մը, որուն մէջ Կարապետ կը գրէ՝ «Արդ ես Կարապետ եպիսկոպոս ի սուրբ ուխտէս Գլակայ, որ յանուն սուրբ Կարապետին է ետու գրել զսուրբ Աւետարանս յիշատակ հոգւոյ իմոյ... եւ եղի անջնջելի յիշատակ բարի ի մեծապայծառ հրեշտակաբնակ երկնանման գըմբէթայարկ գրիգորաշէն սուրբ տաճարացս ի դրունս սուրբ Կարապետիս...» (Ակինեան, անդ, Գեղամէն, ռ. 1587. Հմմտ. Գաւազանագիրք, էջ 82):

Գուցէ վերյիշեալ Ստեփանոսի հրամանով է որ Տիրացու քահանան «ի վանսն Իննակեան, որ յանուն Ս. Կարապետին, ի գաւառին Տարօնոյ, զայս ամենայն բազմութիւն ծաղկանց ի Հոգւոյն սրբոյ Գալստեան մինչեւ ի մեծ պահոց աղուհացից շարագրեաց...» (Տաշեան Հ. Յ., Մայր ցուց., էջ 181):

Կարապետ առաջնորդի օրով Գլակայ վանքն եկած է Յակոբ Քէօթահեցին կամ

Կուտինացիին: Հ. Ակինեանի մօտ տեսած եմ գրութիւն մը, որուն մէջ կ'ըսուի՝ «Յակոբ եպիսկոպոս Կուտինացի ըստ յիշատակարաններու քառասնամեայ աթոռին մէջ կ'երթայ Գլակայ վանքը Կունիկ Կարապետ եպիսկոպոսի օրով (եթէ Կունիկ Կարապետ եպիսկոպոս՝ Գլակայ վանքին վանահայր չէ եղած, ինչո՞ւ կ'ըսուի Կունիկ եպիսկոպոսի օրով եւ չըսուիր վանքին իսկական վանահօր անունը. արդեօք հաստա՞տ չէ Կունիկ եպիսկոպոսի վանահայրութիւն սա բառով, որ կ'ըսէ Կունիկի եպիսկոպոսի օրով. անշուշտ վանքի վանահայր—առաջնորդ եղած է) եւ հոն հինգ տարի լուսաւորութիւն ընելէ վերջ կը շրջագայի Ս. Էջմիածին, Ջուղա, Երնջակ...» (Յակոբի մասին հմմտ. Գր. Դարանաղցի, Ժամանակագրութիւն, էջ 132, Բիւրակն, 1900, էջ 371—372. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի, էջ 320):

Կարապետի վանահայրութեան շրջանին Գլակի մէջ կը գտնուէին աչքառու դէմքեր՝ «Փառք... աւարտեցաւ սուրբ տառս որ կոչի Յայսմաւուրք... ի խնդիր եղեալ այսմ... մարգարտախ պատուեալ եւ բարեխօս եպիսկոպոսն տէր Մարտիրոս

եւ ստացաւ... ի վայելումն Հարազատ եղբարց իւրոց պաշտօնէից եւ ապաստաւորաց սուրբ Կարապետին, ի յիշատակութիւն բարի հոգւոյ իւրոյ եւ ծնողաց իւրոց Սարգսին, Զհանին եւ եղբարցն Մելքիսեդին եւ կողակցին Տամամին եւ որդւոցն Տամուլին եւ տէր Պետրոս կրօնաւորին եւ Յոհանին եւ միւս եղբայրն Յակոբին եւ կողակցին Տուշանին... այլ եւ միւս եղբաւրն Կարապետին եւ կողակցին Աննային.. եւ կրտսեր եղբօրն Գրիգորիսին եւ հօրեղբօրն տէր Ներսէս կրաւնաւորին... եւ զմիւս հօրեղբայրն զՅովանէս եւ զիւր կողակիցն զԽանումն...: Զի ես զսա ընծայ եւ նուէր անջինջ յիշատակ ի վանս Գլակայ, ի դուռն սուրբ Կարապետին.. Եւ իմ տեսեալ զփափագ սորա... գրեցի ի լաւ եւ յընտիր ուրինակէ Ծերենց ի դեաւղն Բագ...° (անընթեռնելի) ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ սուրբ Կարապետին... թվականութեանս Հայոց ՌԽ...:

Արդ աղաչեմ յիշել զարհիեպիսկոպոսն տէր Կարապետն, զԹորոս եպիսկոպոսն, զՅոհաննէս եպիսկոպոսն եւ զՄարտիրոս եպիսկոպոսն, զՅոհաննէս եպիսկոպոսն:

Այլ եւ զմխաբանքն զտէր Թումայ վարդապետն եւ զտէր Աւետիսն եւ զտէր Մելքիսեդն, որ Բարկոցն ասի, զտէր Սրապիոն, զտէր Յովանէս, զտէր Կարապետն, որ է Ասմարենց եւ զտէր Յովանէսն Տէր Կարապետենց... Այլ եւ յիշել ի Տէր զգծաւղ սորա զՓիլիպպոս սարկաւագն եւ զծնաւղսն իւր զՂազար, զՄարտէն... Այլ եւ միւսով Աստուած ողորմին յիշել զիմ հաւրեղբարքն զտէր Աստուածատուր արհեպիսկոպոսն, որ բազում ամաւք է յԵրուսաղէմ, ի ծառայութիւն Քրիստոսի սուրբ գերեզմանին[57], այլ եւ յիշել զտէր Կարապետ երէցն, որ է հմուտ գրոց եւ արուեստիս, այլ եւ յիշել զտէր Կուլվարդն...» (Ոսկեան Հ. Հ.՝ Մայր ցուց. հայ. Ձեռ. Մխիթ. Մատ. ի Վիեննա, Թ. 701, Թղ. 659a—60ա, էջ 231, անտիպ):

Գաւազանագիրքը Կարապետ Բ. ի յաջորդներու կարգը կը դնէ այսպէս Առիստակէս Ա. (1601), Առիստակէս Բ. (1654), Յովհաննէս ԺԲ. (1680), Ներսէս Բ. (1695), Կարապետ Գ. (1698), Յովհաննէս ԺԳ. Կոլոտ (1705), Գրիգոր Շղթայա-

---

57 Աստուածատուր շատ երկարակեաց եղած է (Հմմտ. վերը կամ դարձեալ՝ Ալպօյաճեանի, Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի, էջ 30—31):

կիր (1712, Հմմտ. անդ., էջ 84—85), որ ինչպէս կը տեսնուի, պակասաւոր է։

Ասոնց կառավարութեան 'շրջաններու կարեւոր անցքերն են՝

Մարտիրոս վարդապետը, որ 1614ին Առաքելոց վանքը կը նորոգէ, Ս. Կարապետի յիշատակ կու տայ Պատմագիրք մը՝ «Յիշատակ է Պատմագիրքս Մարտիրոս վարդապետին ի դուռն սուրբ Կարապետին» (Հմմտ. Քնն. Հրտ. Մովս. Խորենացւոյ պատմութեան, Թիֆլիս 1913, էջ ԻԲ)։ Անկէ յառաջ 1601ին Կարապետ երէց հոն կը գրէ Աւետարան մը (Հայկունի, Բադրեւանդ, էջ 145)։

1627ին Խորձեանի Ս. Աստուածածնի վանքին առաջնորդը (Մարտիրոս վարդապետը) Ս. Կարապետի մէջ կը մեռնի (Քէչիշեան Հ. Մ., Ցուց. Հայ. Ձեռ. Զմմառի, Թ. 127, անտիպ)։

Սահակ Դ. Գառնեցի կաթողիկոսին համակիրները՝ «Սահմանեալ էին ի մէջ իւրեանց թէ Սահակ կաթողիկոսն առցէ զիշխանութիւն կաթողիկոսութեան ի վեզիրէն եւ գնացեալ ի Մշու Ս. Կարապետն իւր աթոռ կալեալ անդ նստցի» (Առ. Դաւրիժեցի, Պատմ., էջ 242—243. Հմմտ. Սիոն, 1930, էջ 21)։

*Սահակ Բաղիշեցին* 1625*ին ուխտի կու գայ Ս. Կարապետ (Հայաստան,* 1851, *Թ.* 51) *եւ անոր միաբաններէն՝ Կարապետ Տարօնցին Երուսաղէմ կ՚անցնի (Ազանունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի (էջ* 198)։

*Արխատակէս Բ. շինարար եւ գործօն առաջնորդ է «Յիշեցէք զԱրխատակէս եպիսկոպոսն, որ ի Թուին Հայոց ՌՃԳ* (1654) *սկսաւ նորոգել մեծ զմբէթ կաթուղիկէին սրբոյն Ստեփաննոսի բարձրաբերձ եւ սրբատաշ յօրինուածով, այլ եւ զսադեր Բ. զմբէթաց եւ զպարիսպն շըրջապատ եւ զաղբիւրն բարեհամ եւ զմեծ դարկան* (դուռ) *կամարակապ եւ երկաթապատ դռներովն եւ զտնտեսատունն խցերովն, այլ եւ զտեղի Խոտաճարակ ճգնաւորացն խոյակապ եկեղեցի եւ զայլ խախտեալ տեղիսն նորոգեաց» (Արարատ,* 1905, *էջ* 718, *Ս. Կարապետի եւ Ս. Ստեփաննոսի սադերը ուրիշ տեղեն ալ նորոգուած են. Համմտ. անդ, էջ* 719)։

*Արխատակէս Բ. առաջնորդը կ՚ազատէ նաեւ վանքին «գրաւ եղեալ գրեանքն եւ անօթքն ի ձեռաց անօրինաց», (անդ, էջ* 719 *եւ Գուսազանագիրք, էջ* 84), *իսկ Կարապետ կը փրկանաւորէ Յայսմաւուրք*

մը (1635ին, համմտ. Ոսկեան Հ. Հ.՝ Մայր ցուց. հայ. Ձեռ. Մատ. Մխիթ. Վիեննա, թ. 701, անտիպ)։

Անոր յաջորդներէն Ներսէս[58] Մաշտոցի մը յիշատակարանին մէջ կը կոչուի «բարունեաց պետ» (Գաւազանագիրք, էջ 84)։ Յիշատակագրութեան մը մէջ կայ՝ «Յիշեցէք եւ ողորմի տացէք Յովհաննէսին... եւ հաւատար Ս. Աստուածածնայ ժողովրդեան զքահանայքն զտէր Հէրապետն եւ զտէր Յովհաննէսն եւ նուաստ զտէր Մարկոսն եւ զաշակերտ Պաղտասար եւ զդպիրքն որ մխարանեցան եւ ձեռնարկեալ շինեցին Աստուածածնայ ժամատունն ի հիմանց կամարակապ եւ սրբատաշ քարամբք, երկու խորան մի յաջ եւ մին յահեակ, յաջն Ս. Յակոբ, յահեակ սուրբ Գէորգ, ի դառն եւ չար ժամանակին՝ յիշխանութեան Սահաթխանին եւ Մշու Միւսէլիմին եւ յառաջնորդութեան Ներսէս վարդապետին ի թվ. ՌՃԽԳ» (1694, Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Հայ. Ձեռ. Գեղամէն)։

---

[58] Անոր պաշտօնավարութենէն յառաջ 1676ին Տաթեւէն Ս. Կարապետ կու գայ եւ կը նահատակուի Գրիգոր արեղան, որ եւ Ս. Կարապետի մէջ կը թաղուի (Ալիշան, Սիսական, էջ 241)։

Այն Ներսէս[59]՝ Յակոբ Վ. Հալէպցիին կոնդակ մը կու տայ ժողովարարութեան, որ իր ըրած շատ մը նորոգութիւնները կարենայ վճարել եւ դրամական նեղ կացութենէ ազատի (Tisserant E., Cat. Cod. Bibl. Vatic., էջ 104, հմմտ. նաեւ Գալէմքեարեան Հ. Գր., Ցուց. հայ. Ձեռ. Հռոմայ, թ. 65, անտիպ)։

Նիւթական պակասութենէ եւ պարտատէրներու պահանջքներէ շատ կը նեղուի անոր յաջորդն ալ Կարապետ Գ., բայց ասոր յաջորդները՝ Յովհ. Կոլոտ եւ Գր. Շղթայակեր Ս. Կարապետի վիճակը կրնան բարւոքել (Գաւազանագիրք, էջ 84—85)։

Ս. Կարապետի ԺԷ. դարու պատմութիւնը կ'ուզեմ փակել Սիմէոն դպիր Լեհացիին այցելութեամբն ու տեղեկութիւններովը. (Թէեւ քիչ մը երկար)

«Եւ անտի եկաք Թօզլու տաղն եւ նայ էր յոյժ բարձր եւ միւս կողմն սուրբ Կարապետն էր, կէս աւուր ճանապարհ։ Եւ ասին թէ յորժամ Տրդատ եւ Լուսաւորիչ անդ էին, Կուարտու մինչ ի Մուշ հեծէլ էր։

59 Առաջնորդ եղած է նաեւ Բղլի Ալպաշի վանքին (հմմտ. Տարեգիրք Բղլի Հայրենակցական Միութեան, 1937, էջ 40)։

Եւ իբրեւ տեսաք զխուպայքն Մշու սուլթան սուրբ Կարապետու՝ անկաք ի վերայ երեսաց մերոց եւ բազում խնդութեամբ լցեալ գոհացաք զԱստուծոյ, որ արժանի արար զմեզ տեսոյն սուրբ Կարապետին. փա՛ռք Աստուծոյ: Զոր էր մեծ եւ փառաւոր վիմաշէն կամակապ մեծ եկեղեցի երկու գմպէթով եւ վերեւն արճիճ, որպէս մէջքիդնուն վրայ եւ մտեալ ի ներս տեսաք լայնանիստ բակն պարսպով: Բազում խցերով եւ օթեւանօք: Կայր վարդապետ մի ընտիր եւ աստուածահաճոյ Պօղոս անուն, չորս եպիսկոպոս. ԺԵ. հաբեղայ, տնտեսք, սարկաւագք: Եւ մշակքն ամէն քուրդ էին եւ հայերէն ջրի պէս կու խօսէին եւ ոչ թէ վանքն միայն այլ եւ ամենայն Մշու օվան եւ գաւառն հայնակ զրուցեն Քուրդերն եւ սուրբ Կարապետի անունն կ'երդնուն:

Փոքր բան տարաք, ժամ առնելով տվաք եւ աղաչեցաք որ մուծին զմեզ ուր տապանն է: Եւ եկեղեցւոյ մէջն սինքն գեղեցիկ մարմէրէ եւ կայ աջ կողմն մատուռ մի եւ գերեզման սուրբ Կարապետին եւ միւսն Աթանագինէի...: Եւ տվին մեզ ճուհար հողուն, որ ի սուրբ գերեզմանէն կ'ելնէ:

Եւ վարդապետն կոչեաց զմեզ ի ճաշ. զի էր երկկուղած եւ աստուածասէր, քաղցր եւ համեղախօս, կերաք կերակուր վանաց եւ արբաք ջուր: Սկսաւ խօսել վարդապետն եւ ասել. «Ի՞նչ առնեմ, որդեակ, նոր եմ շինել եւ նորոգել վանքս, զի յոյժ աւեր եւ ամայի էր, զի ամէն տարի խզըլպաշն կ՚այրէ, կ՚աւերէ, ահա երկու տարի է որ խաղաղ եմք»: Ունէին Ժ. գօմէշ, Ճ. ոչխար, ԺԵ. եզն: Անտի գնացաք մեծ արնտեսատունն, տեսաք մեծ թօնախր մի, որ եղ մի կու մէկնէր եւ ասին թէ «որչափ աղբ եւ փոշի լինի աստ եւ թօներս՝ մեք բնաւ չեմք աւելել, վաղվ՛նէ կելնեմք աւելած պատնեմք»: Եւ ասին թէ կաղ դեւ մի կայ, որ սուրբ Կարապետն անդ թողել է սպասաւոր վանաց:

Եւ ի ձախ կողմն մատուռ մի այլ տեսաք եւ ասին. Կին մի իշխանի շինել է զայս. կամէր մտանել ի ներս եւ չթողուին. զի կնոջ հրաման չկար եւ նա բռնութեամբ եմուտ ի ներս եւ ել սուրբ գերեզմանէն զօրութիւն, զի որպէս այր մի զրեհաւոր եհար գեղարդեամբ եւ սպան զնա եւ թաղեցաւ աստ: Եւ ի դուրս ելեալ յարեւելից կողմն ընդդէմ դռան էր ղուպա մի փոքրիկ որպէս աշտարակ, զոր Յարութիւն կոչեն

եւ մտեալ ի ներս տեսաք սեղան եւ երկըր-պագեալ եղաք անդ: Եւ ասին թէ զուպին ներքեւն դեւք են արգիլած եւ մեք եդեալ ունկն ի գետնի՝ այլ եւ այլ ձայնս լսեցաք ահարկու: Եւ հուպ նմին Իննակեան այ-բերն մերձ միմեանց, աղնիւ եւ գեղեցիկ ջուրք: Եւ էր գուռն մի մեծ քան զայլսն, ուր ասին թէ Լուսաւորիչն մկրտութիւն է արել եւ իբրեւ ըմպէաք չկարացաք երեք կում առնուլ ի սաստիկ սառնութենէն: Եւ այլ առաջ տեսաք հազար եւ աւելի թօներս եւ օձախս վասն ուխտաւորաց, որ անդ խարու եւ պիրեան կեփեն, զի ամենայն ախեղերաց գան առ նա ի հեռու եւ օտար աշխարհաց Ուռումէլու եւ Լեհաց ԲՌ.—ԳՌ. հոգի կու լինի եւ ուխտն է Վարդավառին օրն:

Եւ եկեղեցւոյ ետոյքն տեսաք մեծամեծ վիմաց խաչեր կանգնեցուցած եւ ազգի ազգի արվեստ եւ կապք ի վրայ հանած: Եւ սակաւ մի այլ վայր էր վանք մի այլ. Զորէհանդիսա կոչեն, աւեր է եւ ասեն թէ ջորիքն որ բարձեալ էին զաւրը մարմինն՝ անդ կանկ առին եւ ոչ կարացին շարժել ի տեղոյն եւ իբրեւ տարակուեցան՝ եկն հրեշտակ Տեառն եւ ասէ. Աստ հաձեցաւ Տէր բնակել սրբոց. զայն տեղն եկեղեցի շինած էր:

Եւ յաջ կողմն անցեալ եկեղեցուն՝ տեսաք՝ զԱռաջուն գերեզմանն, բայց երկու կտոր եղած· եւ սալն· Ով քարրիս վրայ պառկի, մէջքն չի ցուի: Բայց վասն գող Թրքաց՝ բարձր պարիսպ քաշած էր:

Եւ սուրբ Կարապետն մէջ մէշի է եւ լեռնային եւ յոյժ գեղեցիկ եւ ի ճանապարհ սաֆի անթառամ ծաղիկ է եւ եապանի ամպօյ եւ այլ հառ ծաղկնի: Իսկ մորին ամէնն եէմիշ է՝ խնծոր, սանծ եւ սալօռ, ընկուզն շատ: Եւ ազգ մի պտուղ կու լինի՝ կարմիր սալխակ գունով· փոքր եւ կլոր քան զկեռաս՝ մէյխօշ համ ունի· ալուճ կոչեն: Եւ ընկզնից ծառի ճղերն առջքն կարբել էին եւ լանելով, զի բազումք կան յանապատնին եւ յուժ սիրեն զընկուզն...» (Ակինեան Հ. Ն., Սիմէոն դպրի Լեհացւոյ Ուղեգրութիւն, Վիեննա 1936, էջ 197—201):

1704—1705ին Յովհաննէս Կոլոտ եւ Գրիգոր Շղթայակիր Բաղէշի Ամլորդւոյ վանքէն կ՚անցնին Մուշ: Կ՚անդամակցին Ս. Կարապետի վանքին եւ մասնաւորապէս քարոզչական գործունէութեան կը նուիրուին: Գրիգոր կարճ ժամանակի մէջ շատ մեծ համակրութիւն կը վաստկի եւ առաջնորդ կ՚ընտրուի: Ժողովածուի մը

մէջ գրուած է՝ «Մեծ վարդապետին ծնըն-դեան թվին ՌՃԺԹ (1670), իսկ յորժամ եղեւ առաջնորդ Ս. Կարապետի վանացն ՌՃԾԳ (1704) թվին» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ., էջմ. 737):

Դժբախտաբար 1709ին աւերիչ երկրաշարժ մը Ս. Կարապետի շէնքերէն բաւական մեծ մաս մը կը քանդէ, բայց Գրիգորի ձեռներէց ընկերը Յովհ. Կոլոտ՝ Բաղէշ անցնելով՝ անոնց վերանորոգութեան արտօնագիրը ձեռք կը ձգէ եւ շինութիւնները կը սկսին՝ «զկաթուղիկէն գեղեցկաքանդակ յօրինմամբ, նմանապէս զաւիթ կամարակապ քարեայ սեամբք եւ զանդակատուն կաթուղիկեայ խաչին պսակեալ եւ սուրբ Հոգւոյն սեղանին զարդարեալ եւ այլ շինուածք եւս ըստ չափու թանալիք եւ խրճիթք» (Կիւլէսէրեան Բ. Վ., Յովհ. Կոլոտ, էջ 4 եւ 162. հմմտ. Բիւզանդիոն, 1907, թ. 3128):

Յովհաննէս Կոլոտ յետագային ալ Ս. Կարապետի համար Պոլիս եւս նուիրահաւաքումի կը ձեռնարկէ եւ ժողուած դրամներովը «այնչափ շքեղացաւ, պայծառացաւ Ս. Կարապետ, որ չէր յառաջ ընաւին (անդ., էջ 6 եւ 163):

Բնական է՝ որ Ս. Կարապետի միաբաններր ցաւով կը թողուն որ Կոլոտ եւ Գրիգոր Պոլիս ու Երուսաղէմ երթան՝ անոնց հայկական պատրիարքական աթոռները գրաւելու համար (հմմտ. ի մէջ այլոց՝ Լուսարարեան, Գաւազանագիրք, էջ 85 եւ 127—132. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ. Երուսաղէմ, էջ 84 եւ 369 եւ Հանդ. Ամս. 1952, էջ 187):

Գ. Տղթայակիրի ժամանակէն է այս բաւական կարեւոր յիշատակարանը՝ «Յանկացող եղեւ գերերջանիկ վարդապետն Աբրահամ...: Արդ գրեցաւ սա ի Մուշ քաղաք ընդ հովանեաւ սուրբ Յարութեան տաճարին առ ոտս մեծ րաբունապետին ի Թուականիս Հայոց ՌՃԾ եւ ի ամին ձեռամբ... Յակոբ երիցու ծառայ եւ աշակերտ հոգեւոր հօրս մերոյ Վարդան վարդապետի հանգուցելոյ առ Քրիստոս...: Դարձեալ աղաչեմ յիշել ի Տէր... զՅակոբ սուտանուն երէցս... ուսուցանողն իմ զտէր Ալեքսանն եւ զՇահպազն եւ զեղբայրն իմ զՍահակն... այլ եւ զտէր Մելիտոն աւագ Էրէց Մշոյ քաղաքիս, ...որ բազում սէր եւ եղբայրական գթով խնամարկեալ մխիթարեաց կերակրով եւ այլ ամենայն բարութեամբ... զի մինչ եւ որ



ԳԵՂԱՄ ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ

Մշոյ Առաջնորդարանի Քարտուղար, ապա Մշոյ Երեսփոխան Օսմանեան Խորհրդարանի (1908—1914). Բանահաւաք եւ գրող Տարօնի վանքերու մասին:

զայս ս. գիրքս ատորանցի գ. անգ փոխեցայ վասն դառն ժամանակին եւ հարկապահանջութեան չար բռնաւորին Սահատ խանին: Նախ ի Բաղէշ քաղաք եւ անտի ի Պոռայ սուրբ Նարեկայոյ վանքն եւ անտի ի Մուշ քաղաք եւ այս բազում նեղութեամբ եւ չարչարանօք ի ձեռն նախանձոտ, կոշտ եւ բիրտ քահանայից այլոց վասն պաշտման փողից խոցեալ խորամէկին գլխ, չուզէին զկենայն իմ անդ, ոլոր աչօք յիս հայէին եւ կրճտէին զատամունս եւ ասէին՝ յել գնա՝ զմեր հացն կերեցիր, այս վասն ահի առաջնորդին եւ խաձս Յոհանին ոչ կարէին մօտիլ...» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. էջմ. 2075, Քարոզգիրք Տաթեւացւոյ):

Գր. Շղթայակիրի անմիջական յաջորդը կ՚ըլլայ Յովհան Ա. (Գաւազանագիրք, էջ 86) եւ անոր՝ Աբրահամ Խոշաբցի, որ էր «Վանմարան եւ քաջաշնորհ» (Կոյսա, էջ 7 եւ 184), որ՝ 1716—1730 կը պաշտօնավարէ եւ որ՝ էջմիածնի կաթողիկոսութեան կոչուելով Ս. Կարապետէն կը հեռանայ: Անկէ՝ կանխաւ — Երուսաղէմ ուխտի երթալու համար — երբեմն առժամապէս հեռացած էր (Ագաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի, էջ 4):

Ժողովածուի մը մէջ կայ՝ «Աբրահամ ծառայ Քրիստոսի եւ ողորմութեամբ նորին սպասաւոր սրբոյ Կարապետին լուսափայլին շիրմին...: Իմ ծնունդն թվին ՌՃԻԶ...: Այսչափ գրեանք կան հետ ինձ Աբրահամ ստրուկ վարդապետիս, ա. Աստուածաշունչ...» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. էջմ. 737): Անոր օրով Տիրացու Դանիէլ գրել կու տայ եւ կը նուիրէ «Ս. Կարապետի Մուրատատուր վանիցն» Աւետարան մը (հմմտ. Գաւազանագիրք, էջ 87—88):

Աբրահամին կը յաջորդեն Ներսէս Գ. Տարօնցի (1730, Գաւազանագիրք, էջ 88) եւ ապա Մինաս Ակնցի, որուն առաջնորդութեան միջոցին Ս. Կարապետի վանքը 50 «զօլաթայ սալեանի» պարտքի տակ կ'իյնայ եւ պարտատէրը — Ալատին պէկ — զայն անդադար կը պահանջէ: Մինաս վճարումի ինքզինքը անատակ զգալով փախուստի կը դիմէ: Բայց Ալատին պէկի սիրտը բարերախտօրէն կը կակղի եւ զինքը վճարումէն ազատ կը կացուցանէ: Մինաս[60] խնդութեամբ կը վերադառնայ եւ

---

[60] Անոր օրով՝ 1737ին Մկրտիչ Նախիջեւանցին Ս. Կարապետի մէջ Ժողովածոյ մը կ'աւարտէ (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. էջմ. 597):

«Կ'սկսի Խաչքակի կողմի պարիսպը ծայրէ ի ծայր հիմնարկել եւ շինել. նոյնպէս եւ վերի փակայի պարիսպներն եւ եկեղեցին» (Դիւան, Ժ., էջ 509. հմմտ. Մինասի մասին, Ազաւնունի, Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի: էջ 286)[61]:

Մինաս Ակնցին իր նախորդին — Աբրահամի — նման էջմիածնի հայրապետական գահը կը բարձրանայ (Գաւազանագիրք, էջ 89) եւ անոր յաջորդ կ'ըլլան Յունան կամ Յովհան Գ. Տարօնցին (753)[62], ապա Պօղոս (1759), որ յետոյ Ակն կը փոխադրուի եւ հոն ալ Ս. Կարապետի մասունքներէն կը փոխադրէ, Յովհաննէս ԺԴ. Մոկացի (1767), որ վանքին հայոց քանի մը հարցերու համար Կեսարիա կ'երթայ, Յովհաննէս ԺԵ. (1772), Կարապետ Գ. Եւդոկիացի (1774), Յովհան Գ. Համ-

[61] Մինաս Ս. Կարապետի մէջ կը պաշտօնավարէ՝ 1730—1749 (Ազաւնունի, Հայ Երուսաղէմ, էջ 288): Անոր նօտարն եղած է Ս. Կարապետի մէջ Մարտիրոս, որ յետագային եպիսկոպոսութեան հասած է (անդ, էջ 265):

[62] Այս շրջաններուն անուանի կը հանդիսանայ Եաղուպ ամիրայ Ակնցին, որ շատ մը նորոգութիւններ կ'ընէ Ս. Կարապետի մէջ, ուր 1761ին «ի դիտապետութեան Տեառն Յովհաննու... եւ նորին օգնական Պետրոս արքեպիսկոպոսի» կը գրուի Պրոկղի Լուծմունքը (Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 186. Բիւզանդիոն, 1899, Թ. 941. Թօփճեան, Ցուց. հայ. Ձեռ. Դաղեսն Վ.ի, Բ., էջ 49):

Թեցի (1774), Յակոբ Գ. (1781), Յովակիմ Գ. (1786, Գաւազանագիրք, էջ 90—94)։ Անոնցմէ Յունան կամ Յովնան Գ. 1766ին Կ. Պոլիս կ'անցնի[63] եւ Սարգիս Դպիրէն մեծապէս կը գրուատուի իբրեւ «շնորհալի» եւ բարեմասնութիւններով օժտուած վարդապետ (Հմմտ. Թորգոմեան Վ., Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ պատմութիւն, Վիեննա 1913, էջ 326), յետոյ կը մեկնի Էջմիածին, ուր եպիսկոպոս կը ձեռնադրուի եւ յետագային խնդիրներ կ'ունենայ Սիմէոն կաթողիկոսի հետ (Գաւազանագիրք, էջ 89. Դիւան, Ը., էջ 286, Ժ., 509—510, Գ., 180, 226—233, 778, 695 եւն)։ Յովհան քաղաքական հար–

---

[63] Տօքթ. Վ. Թորգոմեան կը գրէ՝ «(Յարութիւն) Բաանցիէն վերջը Ս. Հրեշտակապետի եկեղեցին քարոզիչ կը յիշէ Սարգիս դպիր Մշոյ Ս. Կարապետի առաջնորդ. Շնորհալի կոչուած Յօնան վարդապետ մը՝ «... ի ամին Տն. 1766ին: ՌՄԺԵ յամսեանն Նոյեմբերի 13, եկն ի Կոստանդնուպօլիս եւ յեկեղեցին Հրեշտակապետու Յօնան վարդապետն Շնորհալի, առաջնորդ շնորհատիպեա պահի Մշու սրբոյ Կարապետի եւ էր ամենեւին հոգիացեալ իբրեւ գհրեշտակ Աստուծոյ հեզ ըստ ամենայնի եւ խոնարհ, սուրբ կենօք եւ վարուք առաքինի եւ ճգնազգեաց եւ մաքուր անձն, գերիմաստ եւ շնորհալիերճ իմաստուն, տեղեակ գրոց սրբոց եւ արտաքնոց գիտութեանց...»:

Զգիտենք թէ ո՞վ է այդ Յօնան վարդապետ, այդ չքնաղ եկեղեցականը...» (Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ պատմութիւն, Ա., Վիեննա 1913, էջ 326—327)։

ցերու մէջ կը մխրճուի (հմմտ. Հովհաննիսեան Ա., Հովսէփ Էմին (ռուսերէն), Երեւան 1945, ամբողջ գիրքը եւ Տարօնի Արծիւ, 1952, ԺԱ. տ., էջ 58—71)։ Կ'ունենայ եռուն գործունէութիւն։

Յովակիմ Գ.ին[64] կը յաջորդէ Աստուածատուր Տարօնցին կամ Սասունցի (1787), թէեւ միաբաններու եւ Մախսուտ փաշային հաճելի էր Յարութիւն Վ. Արաբկերցին ունենալ վանահայր (Դիւան, Դ., էջ 286)։ Անոր օրով զօրաւոր երկրաշարժ մը ծանր աւեր կը գործէ Ս. Կարապետի մէջ՝ «Վերջապէս կազմեալ նորոգեցաւ սուրբ Աւետարանս ի թուոյս ՌՄԼԶ եւ Օգոստոսի՝ ԻԴ.ին ձեռամբ Պօղոս սրբակրօն Սասնցւոյ ի սուրբ Կարապետի վանքն, որ ի Մուշ, ի խնդրոյ տէր Յովհաննէս քահանայի Աւրանցւոյ ի վայելումն անձին իւրոյ։ Ի նոյն ամին ձեռնադրեցաւ նոյն տէր Յովհաննէս քահանայ ի մեծի պահոց Դ. կիրակէին յԱստուածատուր բազմերախտ վարդապետէ արքեպիսկոպոսէ, որ էր առաջնորդ ի սուրբ Կարապետի վանքն

[64] Դիւան Ժ.ի համաձայն Յունան Տարօնցիին կամ «Ներքին գաւառի Կիւլնէ գիւղացի Յունան» վարդապետին անմիջական յաջորդն է Աստուածատուր (անդ, էջ 510). Հմմտ. Աստուածատուրի մասին նաեւ Հովհաննիսեան Ա. Հովսէփ Էմին, Երեւան 1945, էջ 293, ռուսերէն)։

եւ նորոգեաց վերստին զնոյն գերահռչակ աթոռն Յովհաննու Կարապետին, որ ընկղմեցաւ ի մեծի շարժին իւրով ժամանակաւ, Թվ. ՌՄԼԳ. Վարդավառի կիրակէին զկնի գալ Բշ. օրն յերրորդ ժամուն, յորում պատարագն մատուցանիւր, եղեւ կարի ահագնատեսիլ շարժումն գետնի եւ անկան կաթուղիկէն Ս. Ստեփաննոսի տաճարին, սեղանատունն հանդերձ ի վերայ եղեալ միաբանից խցիւքն, խաչքանկի խուցքն ուխտաւորաց, օտայքն, չորս պուրճքն, հարաւակողման պարիսպն ծագէ ի ծագ, փուռ, հացատուն եւ այլ տեղիք եւ յաջողութեամբ Աստուծոյ շինեցան վերստին փլեալքն գեղեցիկ կերտուածովք, եօթնապատիկ լաւագոյն քան զառաջին շինուածսն ի նոյն Աստուածատուր վարդապետէ, նաեւ քակեաց զգաւիթն եկեղեցւոյն հանդերձ զանգակատամբն եւ զմիջնորմն, որ ի մէջ գաւիթին եւ եկեղեցւոյն էր, երարձ եւ արար զերկոսեան մի եւ Ը. սիւն աւելացոյց եւ զանգակատուն յառաջ տարեալ շքեղացոյց շինմամբ. փլեալն ՌՄԼԳին եւ նորոգութիւն լրացաւ ՌՄԼԶին» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ., Գեղամէն. հմմտ. եւ Գաւազանագիրք, էջ 95—96) :

*Սոյն երկրաշարժին մասին Հ. Ինճիճեան կը գրէ՝*

*«Յամին 1784 եղեւ երկրաշարժութիւն ի սուրբն Կարապետ, որպէս եւ յԵրզնկա եւ կործանեցան, բայց յոյլ շինուածոց պարիսպք Հարաւակողման, սենեակք, սեղանատունն (զոր նորոգեալ էր անուանին Եաղուպն Ակնցի...), կողմն ինչ զանգակատան (զոր քարակերտ սեամբք զարդարեալ նորոգեալ էր նոյն Եաղուպն եւ խաչ եդեալ ի գլուխն), կաթուղիկէն սրբոյն Ստեփաննոսի, խաչն որ ի վերայ կաթուղիկէին սրբոյն Յովհաննու եւ ի ներքոյ աւերակաց մնացին քանի ինչ անձինք, ընդ որս եւ երէց մի, այլ պէյն Մշոյ Հրաման ետ առաջնորդին շինել զայս ամենայն, զոր կատարեցին* 1788, *եւ ի շինելն ի ներքս առեալ զգաւիթն ընդարձակեցին զեկեղեցին յաւելմամբ* 8 *սեանց, զզանգակատունն նորոգեցին բարձրագոյն եւ վայելուչ քան զառաջինն, զսուրբ Հոգի խորանն, որ յառաջն էր ի գաւթի ի ներքոյ զանգակատանն փոխադրեցին ի մէջն անդ զանգակատանն...»* (*Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ* 196. *հմմտ. եւ Դիւան, Ժ., էջ* 110—112)։

*Աստուածատուր՝ Սասունցիներու ձեռն-*

տուութեամբ եւ Կորիկ Արգօն եւ Ղազար «ուստա»ներով է որ Ս. Կարապետի վանքն ու եկեղեցին կը վերաշինէ եւ սակայն իր աթոռէն կը զրկուի: Բայց կը յաջողի զայն վերստին գրաւել: Յետոյ խոհեմական եւ յաւագոյն կը դատէ Ս. Կարապետէն հեռանալ եւ քաշուելով Ս. Յովհաննէսի վանքը հոն կը մեռնի (Դիւան, Ժ., էջ 510—512): Անոր բացակայութեանը վանքին վերատեսչութիւնը կը յանձնուի Մատթէոսի, որմէ ունինք հետեւեալ թուղթը՝

«Է: Յիսուսի Քրիստոսի ծառայ եւ սրբոյն Յովհաննու Կարապետի հրաշակառոյց վանիցն անարժան վերատեսուչ տէր Մատթէոս վարդապետ: Յորմէ ժամանեալ հասցէ գիր սիրոյ եւ օրհնութեան, շնորհք եւ աղօթք առաքելական եւ աստուածային յոգնատեսակ օրհնութիւնն եւ նախախնամական գթութիւնն եկեսցէ եւ հանգիցէ, իջցէ եւ ծաւալեսցի առ ի վերայ մեծայարգ եւ հանճարայերձ եւ եւս զարդացեալ ամենայն բարեպաշտութեամբ բարեբարոյ եւ վաղեմի հարազատ բարեկամին իմոյ մահտեսի Յակոբի քրիստոսասէր եւ բարեջան օրհնեալ ամիրայիդ եւ այլ ամենայն քոյոյնոց ընտանեացդ, տանցդ եւ բնակութեանցդ, որդւոցդ եւ դստերացդ...»:

Այս կը յայտնէ իր անկեղծ շնորհակալութիւնը առաքուած՝ «երկեակ ոսկւոյն... բաղձալի բատ մարմնականին սփոփեաց գոլով մեծագոյն շինութեանց սորայ վանուց բազմագոյն ծախիցն օգնիչ... մեծապէս գոհունակ եմ եւ եղէ ընկալեալ եւ զգիրդ սիրապարար ի ձեռանէ մեծահաւատ եւ քրիստոսատէր... եւ մեր Աւետիք ամիրային... Թէպէտ կամէի դոյզն վիպումն զշինութեանց սորայ վանիցս առնել, այլ մինչ անկարութիւն գրով ծանուցմանն եղեւ մատծեցեալ, զանց արարեալ լինի աստանօր եւ յանձնարարութիւն լիովին առ սիրելի Աւետիք ամիրայն եղեւ ճառել բատ կարի. այսպէս գիտացեալ կրկնակի ողջ լեր: — Ի ՌՄԼԲ. Թւն Հայոց Մայիսի ԻԵ. օրն ի հրաշակառոյց վանս մեծի սրբոյն Կարապետի» (Այս Թուղթը կը գըտնուի Վիեննի. Մխիթարեաններու Մատենադարանին Թ. 694 Ձեռ. հատակոտոր հաւաքածոյին մէջ):

Այս առաջնորդ կը կարգուի Յակոբ Աղբեղ, որ վանքին պարտքերը վճարելու հետամուտ կ'ըլլայ (Դիւան, Ժ., էջ 512. Գաւառականագիրք, էջ 97): Անոր գրչէն է հետեւեալ Թուղթը՝

«Ի սուրբ եւ ի փառաւորեալ աստուա-

ծաղարդ եւ մեծապայծառ, հրաշալի եւ հրաշափառ, ի լուսաւորչաշէն դրանէ ի Մըշու սրբոյ Կարապետի ըղձապարգեւ գերեզմանէ եւ յԱթանագինեայ սուրբ Հայրապետի շնորհաբեր շիրմէ եւ ի սրբոյ Հարցն Անտօնի եւ Կրօնիդեայ եւ յեօթանց Խոտաճարակաց սրբոց դամբարանաց եւ ի սուրբ Յարութեան տաճարէ եւ ի սուրբ Աստուածածնի տաճարէ եւ ի սուրբ Յակոբայ տաճարէ եւ ի սուրբ Գէորգայ եւ սուրբ Սարգսի քաջամարտիկ զօրավարացն մատրանէ եւ ի սուրբ Ստեփաննոսի տաճարէ եւ ի սուրբ Լուսաւորչի տաճարացս եւ յայլ ամենայն սրբութեանց տաճարացս եւ սրբոց մատանց, որ աստ կան զետեղեալք եւ հաստատեալք եւ սոցունց անարժան սպասաւոր եւ առաջնորդ ի տէր Յակոբ վարդապետէ: Յորմէ ժամանեալ հասցէ գիր օրհնութեան եւ նամակ պահպանութեան, շնորհք առաքելական եւ աստուածային, բազմապատիկ գթութիւն եւ ողորմութիւն ծաւալեսցի առ ի վերայ Աստուծոյ օրհնեալ ի Սրշօվ քաղաքի կառուցեալ յանուն սրբոյ Աստուածածնին եկեղեցւոյ բարեպաշտօն հաւատացելոյդ, աստուածասէր ազատաց իշխանացդ, մաքրակենցաղ եկեղեցական անձանցդ եւ առ հա-

սարակ ամենայն ժողովրդոց, արանց եւ կանանց, մեծաց եւ փոքունց եւ ամենայն զողորմութիւն տուողացդ հանապազ զուարթ երեսօք խնդալ ի Տէր Յիսուս, ամէն: Շնորհք, սէր եւ բազմազեղ ողորմութիւն յԱստուծոյ, յամենասուրբ յԵրրորդութենէ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ եւ շնորհք սրբոյ Կարապետին մարտասու գերեզմանի եկեսցէ եւ հանգիցէ ի վերայ հոգւոց եւ մարմնոց ձերոց, տանց եւ բնակութեանց, զարմից եւ զաւակաց ձերոց եւ զարդարեսցէ զձեզ ամենայն պարգեւօք եւ աստուածահաճոյ առաքինութեամբ, զուարճ դիմօք, ուրախ մտօք, եւ լցուսցէ զձեզ զանազան բարութեամբ եւ արգասալիր ճոխութեամբ, այգեստանօք, յաջող տօք եւ արօք, առողջ անձամբ եւ խաղաղ կենօք կալ եւ մնալ միշտ ամէն: Եւ ընդ աստուածապարգեւ օրհնութեան գրոյս գիտութիւն լիցի Աստուածասիրութեան ձերում, զի Տէր մեր Յիսուս Քրիստոս երանէ զողորմածն ասելով՝ Երանի ողորմածաց, զի նոքա զողորմութիւնս գտցեն· այս երանութիւնս կրկնապէս ժառանգեն ողորմածք, մին աստ ստացմամբ շնորհաց եւ միւսն անդ վայելմամբ փառաց եւ այս երկնաձիր

պարգեւացս արժանանայն պատճառ լինի ապարմութիւնն եւ են ոմանք որք քարասրտութեամբ զայս գերազանց երանութիւնս յինքեանց անարգեալ փախուցանեն, խնայեն ժամանակաւորօք վշտախառնակսնն աստէն սատանայ եւ անդէն վայելել, նոքա են հնատատանու մրջիւնքն, որք ցամաքին երկրէ բարբոջեալն դառնեն եւ հապալ ծածկեն, ինքեանք ոչ կարեն վայելել եւ խնայեն մարդկանց վայելոց․ իսկ որք ապարմածախրաք են եւ Հօր Աստուծոյ նման եւ մարդասէր, նոքա ոչ միայն աստէն զապարմութիւնս Աստուծոյ դառնեն, այլ եւ անդէն, որ խնայօղքն եւ քարասիրտքն, անպարտն եւ անգութն չարալին ոչ դառնեն եւ ոչ առնուն յԱստուծոյ փոխարէնն:

Արդ զայս այսպէս գիտելով նախնի հարքն ձեր ի փառս Աստուծոյ եւ ի պատիւ սրբոց նորա յամենայն տեղիս գանձանակք առհմանեալ են, որով վանորայք, աթոռք եւ եկեղեցիք ի շինութիւն եւ ի պայծառութիւն հիմնացեն, որպէս եւ ահա հարազատ որդիքդ մինչեւ ցայսօր զգանձանակն սրբոյ Աթոռոյս հաստատուն պահեալ քառասուն երեք դաւ եւ կէս հաւաքեալ ձեռամբ մերս հաւատարիմ դան-

ձապետ պարոն Յարութիւն եւ տալով մերս սիրելի հոգեւորն զաւակ սրբոյ տանս Մկրտիչ վարդապետին ընդ նմին եւ այլ ամենայն եմաարիայի ողորմութիւնք, կտակք, քառասունք, յիշատակք եւ խոստմունք, որք ամենեքեան ամբողջապէս եկին առ մեզ հասին եւ մեք առեալ մեծաւ շնորհակալութեամբ մատուցաք ի պէտս շինութեան եւ պայծառութեան սրբոյ տանս եւ զձեզ հանդերձ կենդանեօք եւ ննջեցելովք յիշատակեցաք եւ օրհնեցաք ի մէջ սրբոյ պատարագին, յոր եւ բարեգութն Աստուած հաճեալ ընկալցի զտուրս ձեր, փոխարէն հազարապատիկ հատուսցէ, բանից եւ գործոց ձերոց յաջողումն տացէ, ձեզ կեանս երկարս շնորհեսցէ, յամենայն չարեաց եւ ի փորձութեանց ազատ պահեսցէ եւ զամենայն խնդիրս ձեր ի բարին կատարեսցէ· ամէն:

Գրեցաւ օրհնութեան եւ շնորհակալութեան կոնդակս առ դրան Մշու սրբոյ Կարապետի, ի Թու. ՌՄԽՋ. Դեկ. ԻԵ»: Կոնդակս կը գտնուի Kapri ընտանիքի մօտ, որ զայն շատ փոքրադիր լուսանկարած դրկած է Մխիթարեան Մատենադարանին (Վիեննա): Լուսանկարը, որուն վրայէն այս տողերը կարդացուած են, կը

պահուի այժմ նոյն Մատենադարանին Թ. 694 Ձեռագրաց հաւաքածոյին մէջ։

Յակոբի վախճանը յաւալի է եւ աղէխարշ[65]։ Նա կը սպաննուի (անդ., էջ 514 եւ 560)։ Հանգանակութեան տոմարի մը մէջ եւս — գրուած 1807ին[66] — կայ՝ «Սրբոյ Կարապետի տաճարդ Յակոբ եպիսկոպոսն եւս ի ճանապարհին Մշու սպաննեցին» (Քոսեան Հ. Յ., Ցուց. Հայ. Ձեռ. Արծնեան Վարժարանի, անտիպ, Թ. 842)։

Անոր տապանագիրն է՝
«Այս գամբարան մարմնոյ տեղի
Տեառն Յակոբայ արհոյ դխոի
Սրբոյ դահլիս տաճարդի
Նաեւ Կարնոյ մեծ քաղաքի.
Սա էր տեղեաւ Սամաթիացի
Եւ աշակերտ պատրիարքի
Զաքարեայ վարդապետի
Զորեքտասան ամս հովեալ
Զբազում պարտս վճարեալ,

---

[65] Յակոբ Պոլիս գացած է (Դիւան, Զ., էջ 212. հմմտ. եւ անդ, 609)։ Վճարած է Ս. Կարապետի 300 քիսայ պարտքը (Դիւան, Ժ., էջ 512)։

[66] Մուրատ Ս. Կարապետի մէջ 1806ին կը դրէ Ապաշխարութեան շարականները (Ոսկեան, Մայր Ցուց. Հայ. Ձեռ. Մխիթ. Մատ. ի Վիեննա, Բ., հին Թ. 863, Թղ. 162բ, անտիպ)։

*Որ սուրբ ասնս վերայ դիզեալ,*
*Յարգելանաց բանտս մատնի,*
*Ի կապանաց զերծեալ լինի,*
*Բայց սուրբ տեղիս չհասանի,*
*Մինչ Սահակայ ձորակ մտեալ,*
*Սրախողողս մարմնով լեալ,*
*Կսկծալի մահուամբ մեռեալ,*
*Կոծով մեծաւ բերեալ,*
*Ի գերեզման մահու եդեալ,*
*Հանդիպողայ խուրս չիրմի,*
*Հայցէ ի ձէնջ աղետալի,*
*Ասել զհողոց եւ զողորմի,*
*Թվին Հայոց* 1256, *Մայիս* 7 *եւ յամի*
*Տեառն* 1870»:

(*Գաւազանագիրք*, *էջ* 97—98. *հմմտ. եւ Ոսկեան Հ. Յ.*, *Բարձր Հայք*, *Ա.*, *Կարին քաղաքը*, *Վիեննա* 1925, *էջ* 115—116. *նոյն գրքին մէջ հմմտ. Ս. Կարապետի ուրիշ առաջնորդներու մասին*, *էջ* 117, 138 *եւն*):

*Յակոբի առաջնորդութեան ատեն Ս. Կարապետի մէջ*[67] *կ'ապրէր եւ կը գործէր Ստեփանոս եպ. Խաժակեան Ջախալեանց, որ անոր մահուան վրայ շատ կը յուզուի*

---

[67] 1802*ին Ս. Կարապետի միաբաններէն կը յիշուին Յովհաննէս եպիսկոպոս եւ Մարտիրոս վարդապետ (հմմտ. Պէրպէրեան, Պատմ. Հայոց, Կ. Պ.* 1871, *էջ* 44—46):

եւ յանցաւորներու պատիժ կը պահանջէ (Կրպէ, Կարս քաղաքը, Մոսկուա 1894, էջ 277—279)։

Յակոբի յաջորդը Աճէմ Մինաս վարդապետը շատ կարճ ժամանակ իր պաշտօնին գլուխը կը մնայ։ Խէյլեան գիւղին մէջ կը մեռնի, բայց մարմինը Ս. Կարապետի վանքը կը փոխադրուի (Դիւան, Ժ., էջ 514—515)։

Այս առաջնորդ կ՚ըլլան Պօղոս Բ. Կարնեցի (1808), Մկրտիչ Խանամիրեան՝ վեց ամիս[68], Մկրտիչ եպ. Վանցի՝ երեք տարի (անդ, էջ 515. Գաւազանագիրք, էջ 98—99), որոնցմէ յետոյ առաջնորդութեան կը հասնի Վարդան Բ. Ակնցին, զոր Գաւազանագիրքը (անդ, էջ 99) Բաղիշեցի կը յորջորջէ։ Նա էջմիածին երթալով եպիսկոպոս կը ձեռնադրուի։ Անոր օրով միաբաններուն մէջ անուանի էր Պետրոս Վ. Կուրաւցին, որ քանի մը տարի յառաջ Խրիմ նուիրակ գացած էր։ «Այն տեղէն Ս. Կարապետի պատկերը եւ մէկ մեծ սահաթ» հետը բերած էր (Դիւան, Ժ., էջ 517)։ Սէլիմ փաշան այս ժամացոյցը հանելով զայն Վարդան առաջնորդէն

---

68 Մ. Խանամիրեան այցելած է Երուսաղէմ (Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի, էջ 305)։



ՆԵՐՍԷՍ ԵՊ. ԽԱՐԱԽԱՆԵԱՆ

Միաբան Ս. Կարապետի եւ Առաջնորդ Տարօնի։

*կ'առնու եւ Մուշ կը տանի: Այս եւ ուրիշ դէպքեր Պետրոսի անհաճոյ ըլլալով՝ կը ձգտի առաջնորդութեան դեկն իր ձեռքին մէջ ունենալ եւ կը յաջողի՝ «ԶՎարդան վարդապետն քշեց Մատնավանք եւ ինքն սկսեց վանքիս հիւսիսային եւ արեւմտեան կողմի սենեակներ շինել տալ Սրտաձորցի–Կարնեցի–Աղապապ եւ Սարհատ Բաղիշեցի ուստաներու ձեռամբ» (Դիւան, Ժ., էջ* 517)*: Վարդան կրկին իր աթոռը կը դառնայ*[69]*, բայց նորէն հեռանալու կը ստիպուի: Կուրաւցին ալ կը հեռացուի եւ փոխանորդ կը կարգուի Զխալ օղլի Ստեփան եպ. Կարնեցի, որ քիչ ետք կը մերժուի եւ Պ. Կուրաւցին նորէն պաշտօնի գլուխ կ'անցնի:*

*Նա ձեռներէց էր. «Խաչվառք կամ թէ ասել խորանք կրկին մատրանցս եւ աւագ խորանին ոսկեզօծք եւ փառահեղք են, զոր շինեաց Պետրոս եպիսկոպոս Կուրավցի կոչեցեալ առաջնորդ վանացն» (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ* 229*. Հմմտ. Արարատ*, 1888, *էջ* 560)*:*

69 1822*ին Վարդան վարդապետը «ի լուսաւորչակերտ դրանէ ի Մուրատատու Մշու Ս. Կարապետի լուսափիւռ դերեզմանէն...» կը գրէ «զիր սիրոյ՝ մին պաճախ չի ոսկի» առաքուած ըլլալուն համար. Հմմտ.* Conyheare, Cat. Mus. Brit., *էջ* 268):

Ծանր դժբախտութիւն մը անոր գործունէութիւնը կը կասեցնէ:

Քրտական՝ սպառազինուած ուժեղ հրոսակախումբ մը 1827 Յունիս 27ին Ս. Կարապետի վրայ գրոհ կու տայ եւ Թալանումի կը սկսի: Վանահայրը իր բազմանդամ հասարակութեան հետ սրէն ու մահէն մազապուրծ կը ճողոպրի։ Երկու օր լի բովանդակ Քիւրտերը անդադրում կը Թալանեն ու կը քանդեն բազմադարեան վանքն ու տաճարը: Գանձերով ակաղձուն՝ կը դառնան իրենց տունն ու տեղը. «Եկեղեցւոյ խաչերն որ հազարի չափ էին սուրբ Գէորգ եկեղեցւոյ դարանին մէջ, զանոնք ալ գտան, որոնք մեծ մասամբ ակունքներով էին եւ չափերն կու գային մինչեւ երեք հոխայ, երկու հոխայ, մէկ նուկի եւ աւելի պակաս, զորոնք կ'լեցնէին եւ կը ջարդէին: Երեք չորս չիչայ մեռան կար պահուած՝ Յօհան վարդապետէն մնացած, զանոնք ալ ջարդեր էին: Դուրս եղած պղինձներ, որոնցմէ չորսը հարիւր լիտր ջուր կը տանէին, որոնք բակի մէջ բուխերիների վրայ դրած էին միաբանները եւ փախած էին եւ Թանով լեցուած էին, անոնց մէջ եկեղեցւոյ աւետարաններ եւ ուրիշ հին արծաթապատ

գրեանք կ՚լեցնէին եւ կ՚խառնէին: Թողունք ասել այն գրքերը, որ կտրտած եկեղեցւոյ տախտ լցուցեր էին...: Եկեղեցւոյ սուրբ Գէորգայ մէջի ուրիշ պահարան մը, որոյ դուռը տանիքէն լինելով քակեր էին եւ գտեր եւ անոր մէջ ալ հին ժամանակէն — ծերունի լուսարար Բարսեղ վարդապետի տանէն — մնացած 50 խալիչ արծաթ, որ եօթ կամ ութ լիտր կը կշռէր, եւ զոր պահած է եղեր այն մտքով, որ ժամանակին եթէ վանքը քանդուի, անոնցմով շինեն, այս ամէնքը կը յափշտակեն կը տանին:

Մնացած էին միայն Աստուածածնայ խորանի դարան պահուածները, որ մասունքներով խաչերով էին...:

Վանքի մէջ էր Տրդատայ պաղպատէ զրահ շապիկը... անօրինաց ձեռքով կորսուաւ...:

Կային շատ պատկերներ ալ եկեղեցին կախուած, անոնք ալ կտրտեր էին, նոյնպէս Դաստատանի մուշամպայ պատկերն, որոյ երկայնութիւնն կը լինէր 15 արշին եւ 7 ալ լայնութիւն, զարմանալի գեղեցկութեամբ եւ հնութեամբ շինուած, որ գրեթէ 50 քեսայի արժողութիւն ունէր,

այդ պատկերն ալ Սահակցի Քիւրտերն տարած էին...:

Վերջապէս վանքին թէ եկեղեցւոյ եւ թէ դուրս եղած, տարածները դրեթէ կը հանէր երկու խազինայի արժողութիւն եւ այդպէս վեց ամիս ժամանակ եկեղեցին, վանքը անտէր մնացին եւ անտէր տեղը երբ թշնամւոյ ձեռք անցնի ինչ վիճակ կը հանի, կարդացող թող իմանայ» (Դիւան, Ժ., 523—525· Գաւառականագիրք, էջ 99—105· Արարատ, 1888, էջ 558—565[70]· Արեւելք, 1887, Թ. 1114):

Լսենք նաեւ Հ. Սարգիսեան՝

«Ամաւ յառաջ քան զպատերազմն Ռուսաց մեծամեծք ի Քրդաց միաբանեալ անօրէն խորհրդովք թէ դադարելոց է ի սպառ աւազակութիւն նոցա յետ անկանելոյ երկրիս Մշոյ ի ձեռս Ռուսաց, յարձակեցան ի վերայ վանաց սրբոյ Կարապետին եւ կողոպտեցին զամենայն առ հասարակ զոսկի եւ զարծաթի սպաս եւ զպղնձի կարասիս, բացին զամենայն գաղանի դարանս

[70] Ուր եւ Ս. Կարապետի վերջին շրջաններու վանահայրերու մասին: — «Միաբանութենէն այդ փախչելու ժամանակ Յանամիրեան Մկրտիչ եպիսկոպոս, որ չէր կարողացեր փախչել, ծերութենէն աչքեր վատցած լինելով, կերպ կերպ չարչարանքներով տանջեր էին...» (Դիւան, Ժ., էջ 525):



Ս. Կարապետի վանահայր

ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ ՅԱԿՈԲԵԱՆ

Սասնոյ Ախարոնք գիւղէն:

յոյժ սակաւուց ծանօթս ի միաբանից եւ բարձին անդրէն բեռինս սպասուց անդինս եւ նորատեսիլս՝ զհաւաքեալսն ի սուրբ Լուսաւորչէն եւ այսր ոչ թողին անդ եւ ոչ մի ի կարեւոր անօթոց ոչ աստուածային պաշտամանց եւ ոչ հարկաւորացն կենաց մարդոյ եւ զմիաբանսն որ անդ գտան մեր-կացուցեալ թողին ի բաց: Մատուռն սըր-բոյն Գէորգայ՝ պահարան բազմաթիւ ձեռագիր մատենից դատարկացաւ ի սպա-սու, զի ի մատենիցն էր, զորս ի բաց տա-րան եւ էր զոր ի մէջ չեղջեալ լցին ի կաթ-սայս մեծամեծս եւ ջուր ածեալ ի նոսա ջնջեցին զամենայն: Էր զոր ի ջուր ջրաղա-ցին ամացեալ ընդ մատամբք ճախարակին հերձոտեալ կորուսին եւ էր զորս ձեռօք իւրեանց մանր մանր պատառեալ ցրուեցին ընդ ճանապարհ վանացն: Այսպէս ամե-նայն ցանկալի հնութիւնք վանացն կողոպ-տեալ անհետ եղեն եւ միայն մենաստանն ամայի իբրեւ ամիսս վեց եւ յետ այնորիկ խաղաղացեալ փոքր մի երկրին, եկին դար-ձեալ միաբանքն եւ կալան բնակութիւն իբրեւ զառաջինն: Ընդ կորուստ բազմա-գանձ սպասուցն թէպէտ ելաց ամենայն հայ մարդ, սակայն մխիթարեցան եւ մխիթարեսցին ժամանակաւ իբրեւ տես-

ցեն դարձեալ զմենաստանն լցեալ զարդարեալ նորոք վերստին: Սակայն կորուստ մատենիցն հնոց վէրս անբժշկելիս գործեաց ի սիրտս ամենայն ուսումնասիրաց, որում չիք այլեւս դարման տանիլ...» (Տեղագրութիւնք, էջ 230):

Մահուան վտանգը հեռանալէ վերջ՝ Պետրոս Կուրուցին միաբաններու հետ վերստին կը պատսպարուի իրենց սիրելի վայրին մէջ եւ կը ջանայ զայն վերաշինել ու ճոխացնել: Բայց Ս. Կարապետի մէջ երկար կենալ չի կրնար եւ անցնելով Կարին նոյն քաղաքին եւ Տարօնի առաջնորդութիւնները կը միացնէ եւ անկէ վանքը կը կառավարէ իր փոխանորդին ձեռքով, որ էր Զաքարիա Վ. Դաւօյեան (Դիւան, Ժ., էջ 532): Սակայն կը ստիպուի Տարօնի առաջնորդութենէն հրաժարիլ: Եւ կարճ ժամանակի համար Վանի առաջնորդ կ՚ըլլայ (Հմմտ. Թ. 703 Ձեռագիր Վիենն. Մխիթարեանց Մատենադարանի, էջ 46): Ետքէն Ս. Կարապետի վանահայրութիւնը նորէն կը ստանձնէ եւ գերեզմանի տաճարը շինել կու տայ: Կը մեռնի 1845ին (Դիւան, Ժ., էջ 533—534):

Պետրոսի առաջնորդութենէ հրաժարումէ յետոյ՝ վանահայր կ՚ըլլայ Յարու-

թիւն արքեպիսկոպոս Եդեսիացին (1838[71]), որ Զաքարիա վարդապետը իր պաշտօնին մէջ կը հաստատէ, Ս. Կարապետի մէջ զանազան շինութիւններով եւ նորոգութիւններով կը պատաղի եւ «Նարեկ»ը կը տաղաչափէ (Դիւան, Ժ., էջ 532, Գաւազանագիրք, էջ 104—105 եւ Թիւ 703 Ձեռ. Վիենն. Մխիթ. Մատ.ի, էջ 18, Հմմտ. եւ Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի, էջ 333):

Փոխանորդական պաշտօնին մէջ ցուցուցած իր արդիւնաւոր գործունէութեան շնորհիւ Զաքարիա վարդապետն առաջնորդութեան կը բարձրանայ (1845—1851): Բայց ի զանազան շինութիւններէ վարժարան եւս կը հիմնէ (Դիւան, Ժ., էջ 537, Գաւազանագիրք, էջ 105. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի, էջ 143, Արեւելք, 1902, Թ. 4977 եւ 4982): Սակայն նախանձորդներ կ՚ունենայ եւ Մուշէն կը հեռանայ, թէեւ կը յաջողի կարճ ժամանակի համար վերադառնալ: Ապա Ս. Կարապետ Մատթէոս Գաղատացի, Կարապետ Բագրատունի, Կարա—

---

71 «Յարութիւն... բնիկ երկրէն Տարօնուն, ծառայ սրբոյ Ամլորդուն թվ. ՌՄԿԱ»ին Նարեկայ վանքին գանձատանը շինել կու տայ (Ոսկեան Հ. Հ., Վասպուրական-Վանի վանքերը, Ա., Վիեննա 1940, էջ 193):

պետ Կեսարացի եւ Մատթէոս Եօզկաթցի վարդապետներու ձեռքերուն մէջ կը մնայ՝ եւ մեծապէս կը տուժէ (Դիւան, Ժ., էջ 539 եւ Գաւազանագիրք, էջ 106)։ Կարճ ժամանակէ վերջ Ս. Կարապետի ղեկավարութիւնը կը յանձնուի Գրիգորիս Զօրաբաքէլեանի[72], որ արդէն Կարնոյ առաջնորդ էր եւ փոխ–վանահայրութեան պաշտօնը կը վստահի Կարապետ Վ. Բագրատունիին։ Վերջինս կարող եւ ուսումնասէր էր (Արեւելք, 1902, Թ. 4977) եւ Զօրաբաքէլեանի առաջարկով՝ Ս. Կարապետի առաջնորդ կը կարգուի։ Կ'ունենայ արդիւնալից գործունէութիւն։

Անոր մահէն յետոյ Ս. Կարապետի վանահայր կ'ըլլան Կարապետ Վ. Կեսարացի եւ (նորէն) Զաքարիա Վ. Դաւոյեան, որոնք անկարող կ'ըլլան վանքին մէջ տիրող երկպառակութիւնները բուժելու։ Զաքարիա առաջնորդութենէ հրաժարելով կ'երթայ «ի սուրբ Յոհաննու վանք 12 քեսայ սուրբ Յովհաննու պարտք տուեց եւ այդ տեղ վախճանեցաւ» (Դիւան, Ժ., էջ 540)։ Անոր ձեռքէն վանահայրութեան

---

72 Հմմտ. Բօսեան Հ. Յ., Բարձր Հայք, Ա., Վիեննա 1925, էջ 133—135։

պաշտօնը կորզել կը փորձէ Մկրտիչ վարդապետը (Բիւզանդիոն, 1907, Թ. 3128)։

Կ. Պոլսոյ Պատրիարքարանը յարմար կը դատէ Ս. Կարապետի առաջնորդութիւնը յանձնել Մկրտիչ Վ. Խրիմեանի, որ թէեւ ջանք չի խնայեր անոր բարեկարգութեան ու զարգացումին սատարելու — կը բանայ տպարան, կը հրատարակէ «Արծուիկ Տարօնոյ» — բայց մանաւանդ այն պարագան, որ Վանցի էր եւ միանգամայն Վարագի վանահայր, աննպաստ ազդեցութիւն կ'ընէ անոր անձին ու գործին վրայ[73]։ Սակայն եւ այնպէս Պոլսոյ պատրիարք ընտրուելէն վերջ ալ Ս. Կարապետի առաջնորդութիւնը իր ձեռքին մէջ կը պահէ եւ զայն կը վարէ Գարեգին Սրուանձտեանց[74] փոխ վանահօր ձեռքով։ Վերջինս վանքին միաբաններուն հաճելի չըլլալով քանի մը տարիէն պաշտօնէն կը հրաժարի եւ յա-

---

[73] Գուսպաննագիրք, էջ 106—107. Արեւելք, 1885, Թ. 301. Սիոն, 1867, էջ 14—15. Արշալոյս Արարատեան, ԺԶ., 1886, Թ. 714. Ժամանակ, 1866 եւ 1867 ստէպ. Արծուի Վասպ., 1861, էջ 321. Փունջ, 1873, Թ. 1343, 1373, 1400, 1403. Փունջ, 1872, Թ. 71. Բազմավէպ, 1897, էջ 466. 1907, էջ 56. Հանդէս Ամս. 1907, Թ. 12, յաւելուած. Մեղու, 1862—1864, ստէպ։

[74] Ս. Կարապետի առաջնորդական տեղապահ կ'ըլլայ նաեւ Գրիգ. (արքեպ.) Աղուանեան (Հմմտ. Արարատ, 1893, էջ 997—998)։

ջորդ կ'ունենայ Յրօնցի Մխիթար Վ. Մահ-պազեան (Արեւելք, 1902, Թ. 5044)։ Այս ալ՝ հրաժարական կու տայ եւ 1874ին վանահայր կ'ընտրուի Մամբրէ եպ. Մամիկոնեան, որ 8 տարի կը պաշտօնավարէ եւ շատ մեծ ծախսերով վարժարան մը կը կառուցանէ (Արեւելք, 1902, Թ. 5045, Արարատ, 1905, էջ 714, Փունջ, 1879, Թիւ 1385—1388, Սուրհանդակ, 1902, Թ. 1100, Նոր Դար, 1893, Թ. 147)։ Թրքական-ռուսական պատերազմի հետեւանքով Ս. Կարապետի վանքը[75] ծանր օրեր կը տեսնէ. բայց Մամբրէ կը ջանայ զայն վերականգնել ու վերաշինել (Գաւազանագիրք, էջ 109)։ Երբ պատասխանատուութեան համար Պոլիս կը կանչուի իր բացակայութեանը փոխանահայր կ'ըլլայ Յովհաննէս Վ. Խեծեմ, իսկ մահէն վերջ (1882ին, հմմտ. Արեւելք, 1902, Թ. 5047. Սուրհանդակ, 1902, Թ. 1100) 1883ին վանքին առաջնորդ կ'ընտրուի Մաղաքիա Վ. Օրմանեան, որ պարագաներու բերումով ան-

---

[75] Անոր մէջ 1838ին քահանայ կը ձեռնադրուի Մկրտիչ արքեպ. Տիգրանեան, Տիգրանակերտցին (Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի, էջ 298։ — Տիգրանակերտի Աթախ քաղաքի Ս. Առաքելոց կամ Մակարայեցւոց վանքի մասին այլուր պիտի խօսիմ. բայց հմմտ. Հանդ. Ամս. 1951, էջ 499)։

կարող կ'ըլլայ իր պաշտօնին գլուխն անցնելու եւ առժամանակեայ տեղապահ կը գրուի Յակոբ Վ. Քաջունի լուսարարապետը, մինչեւ որ պատրիարքարանի կողմէն վանահայր կը կարգուի Արիստակէս վարդապետը: Բայց նա Տիգրանակերտ եւ Պաղտատ փոխադրուելով (Գաւազանագիրք, էջ 110—111), Գարեգին եպ. Սրուանձտեանց Մուշի եւ Ս. Կարապետի առաջնորդութիւնը կը ստանձնէ եւ բաւական ընտիր գործունէութեամբ կը փայլի (Արարատ, 1905, էջ 711, 1888, էջ 558—565, Մասիս, 1886, էջ 953—954, Արեւելք, 1886, Թ. 865): Անկէ վերջ վանահայրութեան եւ փոխառաջնորդութեան պաշտօնները կը հանեն՝ Բարգէն եպ. Կիւլէսէրեան, Ներսէս եպ. Խարախանեան, 1889—1893, Վարդան Ծ. Վ. Յակոբեան, Յովհաննէս վարդապետ եւ ուրիշներ[76], մինչ-

[76] Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի, էջ 397—398. Արեւելք, 1902. Թ. 5049. Բիւզանդիոն, 1899, Թ. 917—918. 1903. Թ. 1033. 2065. Սուրհանդակ, 1901, Թ. 680, 1902, Թ. 1100. Արարատ, 1903, էջ 331—335, 1909, էջ 810. Լումայ, 1903. Դ., էջ 247—249. Տարօնոյ ինքնապաշտպանութիւնն ու ջարդը 1914—1915, պատմից Եղիշէ քհ. Պարսամեան, գրեց Նալբանդեան Սիսակ, Ֆրէզնօ 1920, էջ 161. Թէոդիկի ամէնուն Տարեցոյցը, 1916—1920. էջ 125 եւ 1921, էջ 199:

եւ որ հայաջինջ տարագրութիւնը հայ աշխարհը անտէր ու աւերակ կը դարձնէ:

### գ. Զանազան տեղեկութիւններ

*Ահա ա՛յս է հակիրճ եւ դժբախտաբար պակասաւոր պատմութիւնը Ս. Կարապետի հռչակաւոր վանքին եւ անոր վանահայրերուն, որոնք սակայն նաեւ Տարօնի եւ Մուշի առաջնորդ էին[77] (Հմմտ. Բիւզանդիոն, 1890, էջ 1819): Երկար դարերու կեանք ունեցած է, բայց հայ մշակոյթի եւ դպրութեան տեսակէտով չէ կրցած իր գոյութիւնը լիապէս արդարացնել: Հայ ազգին չէ տուած անուանի ղեկավար եւ գրչի հոյակապ մշակ, թէպէտ Գեղամ կը գրէ՝ «Չեմ կարծեր որ Ս. Կարապետի վանքը ի հնումն հայ դպրութեան անշան օթեւան եղած է» (Արեւելք, 1902, թիւ 4976, հմմտ. դեռ անդ թ. 4977—4988 եւ 5043—5049): Սակայն եղած է վայր մը, ուր պաշտօնավարած են բաւական թուով մեծ դէմքեր եւ ուր հաստատուած՝ հիմնուած ու զարգացած են վարժոց, վարժարան, որբանոց պարագաներու եւ կարիք-*

---

[77] Գաղափար յայտնուած է Ս. Կարապետը Տիգրանակերտի առաջնորդութեան հետ միացնելու. (Մասիս, 1886, թ. 3824. էջ 953):



Սասունէն վարդապետ մը եւ երէց մը:

ներու համաձայն[78]։ Եւ նաեւ՝ ճոխ մատենադարան, ուր հաւաքուած են բազմաթիւ ձեռագիրներ (40 է աւելի մարդահասակ սնտուկներ լեցուն), որոնք յափշտակութեան եւ ջնջումի կ'ենթարկուին (Արեւելք, 1902, թ. 4977 եւ Գաւառանագիրք, էջ 135)։

Ցաւալի է որ Ս. Կարապետի մէջ — վերջին շրջաններուն — շատ մը խռովութիւններ, անկարգութիւններ եւ զեղծումներ տեղի կ'ունենան եւ խաղաղութեան հոգին չէ չնչած հեզաճեմիկ։ Հետեւանքները կ'ըլլան՝ անկածութիւն ու նեղ կացութիւն. նաեւ՝ փլուզումներու պատճառով[79]։ Սակայն պակաս չեն ըլլար ձեռ-

---

[78] Կոհակ, 1913, էջ 515, 523, 531· Արեւելք, 1888, թ. 1271, 1902, թ. 4976, 4977, 4978, 4979, 4982, 4987, եւ թ. 5043—5045. Հմմտ. վերը, Արշալոյս Արարատեան, 1851, թ. 396· Բիւզանդիոն, 1902, թ. 1867, 1903. թ. 2095· Սուրհանդակ, 1901, թ. 680 եւ Փունջ, 1891, թ. 2274· Մկրտիչ եպ. Տիգրանեան, Զէյթունի գործերը, Քիւրտիստանի եւ Մուշի վանօրէից վարժարաններու վիճակը, Կ. Պ. 1869։

[79] Սիօն, 1867, էջ 14—15· Արշ. Արարատեան, 1866, թ. 774· Մեղու, 1863, էջ 129, 137, 145, 168, 193, 200, 221, 231, 1864, էջ 91, 137, 154, 181, 201, 203· Արարատ, 1903, էջ 332, 1905, էջ 715· Փունջ, 1881, թ. 1629· Բիւզանդիոն, 1903, թ. 2095· Արեւելք, 1896, թ. 3697, 3734, 1901, թ. 4637, 4698, 1902, թ. 4929—4930, 5151, 1903, թ. 5303, 5370, 5404· Լումայ, 1903, Դ., էջ 248։

նարկներ կարգ ու կանոն եւ հաստատելու եւ չինութիւններ ու նորոգութիւններ ընելու[80]:

Ս. Կարապետի մէջ հինէն — աւանդաբար — արգիլուած էր կիներու եւ հեծեալներու — ձիաւորներու մուտքը (հմմտ. Յովհ. Մամիկոնեան, Պատմ. Տարօնոյ, էջ 10—13, 40—41, Rohrbach, Vom Kaukasus zum Mittelmeer, էջ 130): Ս. Կարապետի լուսարարարներն իբրեւ յաջորդները Ի. Խոստաճարակներու մեծ ճոխութիւն ունէին եւ յարգանք կը վայելէին: Ինքզինքնին կը պարտաւորէին խիստ պահեցողութեան եւ անոնց բերանը միս չէր մտներ (Բիւզանդիոն, 1902, Թ. 1825):

Տարօնի ամէնէն հարուստ վանքերէն եղած է Գլակայ վանքը: Ժողովուրդը սովոր էր ըսելու «Ս .Կարապետի վանքը երկու աղբիւր կը վազի, մէկը՝ արծաթ եւ միւսը՝ ոսկի» (Ժամանակ, 1865, Թ. 70): Հին ատեններէն արդէն անոր շատ մը հողեր ու կալուածներ կը տրուէին՝ «Իբրեւ հիմնարկեաց սուրբն Գրիգոր զեկեղեցին

80 Կանոնք սահմանեալք վասն կառավարութեան Տարօնոյ վիճակին պաշտօնական իշխանութեան եւ արքեպիսկոպոսարանի նորա մեծի տաճարին սրբոյ Կարապետին Մշոյ» (Արշ. Արարատ, 1851, Թ. 396. Երիմեան, Ծրագիր Նոր կանոնադրութեան Տարօնոյ Գլակայ վանքին, տպագրութեան տեղն ու տարին նշանակուած չէ):

եւ եդ անդ զնշխարան... եւ երկոտասան դասատակերտս ետ նմա...: Յորոց մինն Կուառս եւ Մեղտի եւ Բրեխ եւ Մուշ եւ Խորնի եւ Կեղք եւ Բազու(մ): Քանզի աւանք են սոքա մեծամեծք, որպէս կայ ի գրի Իշխանացն Մամիկոնենից: Քանզի Կուառս ունէր երդահամարս երեք հազար եւ երկոտասան եւ հեծեալս հազար եւ հինգ հարիւր: Եւ Տում ծուխս ինն հարիւր եւ հեծեալս չորեքհարիւր: Եւ Խոռնի ունի ծուխս հազար իննհարիւր եւ վեց, հեծեալս եւթն հարեւր եւ հետեւակս հազար եւ եւթն: Իսկ Բարեխ ծուխս հազար վեց հարեւր եւ ութսուն, հեծեալս հազար երեսուն եւ հետեւակս չորեքհարեւր... Եւ ընդարձակեալ ունէին սոքա իւրեանց խաչանց արօտականս զգաւառն Հաշտենից...» (Զենոբ Գլակ, Պատմ. Տարօնոյ, էջ 37—38[81]):

«Թեմ սրբոյ Կարապետին են գիւղօրէք Մշոյ, որք անկանին ի հիւսիսակողմն Եփրատայ եւ Մեղրագետոյ՝ յարեւմտից մինչեւ ի յարեւելեան ծայրն Մշոյ, նաեւ Պուլանըգ Մշոյ, Խնուս հանդերձ Կեօք սույխ

81 Հմմտ. Սարգիսեան Հ. Բ., Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքը, էջ 220. Վան-Տոսպ, 1913, էջ 341—342):

*եւ Թէգման գաւառք էրզեռումայ»* (*Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ* 198, *Հմմտ. Բիւզանդիոն,* 1890, *Թ.* 1819)։ *Ուստի եւ անոր կը վերաբերէին Մուշ, Զուխուր, Դաշտ, Վարդօ, Ծապաղջուր, Խնուս, Պուլանըխ, Կեղի եւ նոյն իսկ ժամանակ մը՝ Տիարպէքիր ու անոնց գիւղերու մեծագոյն մասը եւ ուրիշ շատ մը հողեր, ինչպէս եւ Բղլի վանքերը*[82]։

*Ս. Կարապետի վանքը տրամադրութիւն կ'ընէր շատ մը անշարժ ու շարժական կալուածներու եւ գոյքերու վրայ եւ ունէր արժէքաւոր ձեռագիրներ եւ իրեր, Հմմտ. վերը եւ* (*Բիւզանդիոն,* 1897, *Թիւ* 154, 260, *Մասիս,* 1863, *Թ.* 58. *Սարգիսեան Հ. Ն., Տեղագրութիւնք, էջ* 230)։ *Եւ ի՞նչպէս նուէրներ ու յիշատակներ*[83] *չընդունէր վանք մը, որ աւանդու-*

---

[82] *Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ* 110, 105, 107. *Միրախորեան, Նկարագր. Ուղեւորութիւն, Գ., էջ* 128. *Բիւզանդիոն,* 1905, *Թ.* 2802—2803 *եւն. Ժամանակ,* 1865, *Թ.* 70. *Արաքս,* 1890, *էջ* 25. *Արեւելք,* 1884, *Թ.* 147, 1888, *Թ.* 1271. *Հայաստան,* 1851, *Թ.* 51. *Տաճար,* 1912, *էջ* 354—355. *Ցառաջ,* 1911, *Թ.* 68—70. *Հմմտ. դեռ Մեղու,* 1863, *էջ* 115. *Տարեգիրք Բղլի Հայրեն. Միութեան,* 1937. *Տիթրոյիտ, էջ* 25—26 *եւն եւն*։

[83] *Պետրոս Ոսկան — ԺԸ. դարուն մեռած —* 30.000 *ոսկի կը կտակէ Մշոյ Ս. Կարապետի* (*Ալիշան, Սիսական, էջ* 474), *իսկ Ռուսահայ մը* 1000 *րուբլի կը նուիրէ* (*Բազմավէպ,* 1899, *էջ* 439)։



Մուշ քաղաքէն հայ ընտանիք մը:

թեան համաձայն էր «լուսաւորչաշէն» եւ «անդրանկահիմն», որ «մուրատատուր» էր եւ «տէրտոլի դեղ» (Հանդ. Ամս., 1937, էջ 353)։ «Հասայթ վանացն Թաղ զսեփականն կայուածն իւր, գիւղօրէք պաշտամայրքն են մեծաւ մասամբ թեմ նորա, թող եւ զոր նուիրակքն բերեն ի հեռաւոր աշխարհացն։ Մենաստանս կերակրէ զօր ամենայն աղխ աւելի քան զհարիւր յիսուն, թող զորս ի բազմութեան ուխտաւորաց որք ոչ միայն ի Վարդավառին, այլ եւ ի Վերափոխման հաւաքին, եւս եւ յայլ եղանակս տարւոյն չպակասեն։ Յիւրաքանչիւր յուխտաւորաց, որ չէ ի դաշտէն Մշոյ, պարտի հասուցանել զարպաս վանացն, այն է ձեռաձիրս, զի Մշեցիք եւեթ ազատ են յայսմ պարտուց»» (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 230։

Հին ժամանակներէն Ս. Կարապետ Հայուն սիրած ուխտավայրերէն եղած է։ Հոն կը համախմբուէին հեռաւոր գաւառներէն եւ մերձաւոր վայրերէն ուխտաւորներ, մանաւանդ Վարդավառի եւ Վերափոխումի տօներուն։ Յօրինուած էին զանազան տաղեր[84] ու երգեր, որոնք անոնց բե-

[84] Այսպէս՝ «Տաղ ի սուրբ Կարապետն». հմմտ. Սիւրմէեան Արտ. արքեպ. Ցուցակ հայ. Ձեռ. Հալէպի Ս. Քա-

բանն էին, նաեւ իրենց տան մէջ ու ճամբուն վրայ:

Ամէնէն սիրով երգուած է՝

«Սուրբ Կարապետ չայիր չիման,
Բոլոր բարձր մէրմէր դիւան,
Վանքերն հեռուէն կ'երեւան,
Մշու սուլթան սուրբ Կարապետ:
Ս. Կարապետ գեղին մօտիկ,
Երեք օր վազեցի բոպիկ,
Ինքն կ'անէ մարդու մտիկ,
Մեծ զօրաւոր սուրբ Կարապետ:
Սուրբ Կարապետ աղբիւր եւ ջուր,
Ոտքդ կու գայ շատ կաղ ու կոյր,
Դու ամէնուն մուրազը տուր
Մուրազատուր սուրբ Կարապետ...:
Սուրբ Կարապետ բարձր բոլոր
Ճամբէք ունի ոլոր մոլոր
Որ դուռդ կ'երթայ շատ ուխտաւոր,
Որ ոտաւոր, որ ձիաւոր...:

(Հմմտ. Նոր քնար, երգարան, Սելանիկ, 1937, էջ 115—116):

---

տեսուն Մանկունք եկեղեցւոյ եւ ժամանաւորաց, Ա., Երուսաղէմ 1935, էջ 147. Հմմտ. դեռ Տաշեան, Մայր Ցուց., Ա., էջ 968. 1008. Հմմտ. նաեւ՝ Տարօն, տարեգիրք, Հալէպ 1951, էջ 171):

Վանքին մէջ ու շրջակայքը տեղի կ'ունենային եկեղեցական եւ աշխարհիկ հանդէսներ եւ զուարճութիւններ — լարախաղացութիւն — եւ իւրաքանչիւր ուխտաւոր կը հեռանար նուէր մը թողուցած[85]:

Սակայն եւ այնպէս՝ Ս. Կարապետի վանքը պարտքերու տակ ստէպ կը տառապէր անհոգ մատակարարութիւններու — բայց կ'ունենար եւ խղճամիտ մատակարար — եւ ուրիշ պարագաներու, մանաւանդ յափշտակութեան եւ փլուզումի հետեւանքներով եւ կարօտ կը մնար նորոգութիւններու եւ բարեբարներու[86]:

---

[85] Արարատ, 1890. Ա., էջ 24—25. Rohrbach, Vom Kaukasus zum Mittelmeer, Աբրահամ Կրետացի, Պատմ., էջ 3. Հանդէս Ամս. 1939., էջ 353. հմմտ. վերը Սիմէոն Լեհացիի վկայութիւնը, Փունջ, 1892. Թ. 2334. Սոխակ, 1884, էջ 230. 1888., էջ 223. Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Բ., էջ 288. Հայրենիք, ամսագիր, 1926. Թ. 8. էջ 112. Յառաջ, 1911. Թ. 68—70. Մշակ, 1890. Թ. 72. Բիւզանդիոն, 1902, Թ. 1750—1751. 1905. Թ. 2802—2803. Նոր Դար, 1893. Թ. 148. Խաչատուրեան Գար. եպ., Տարօնաշունչ, էջ 26—32 եւն եւն: — Ս. Կարապետ եւ ուրիշ վանքեր այցելած է Գր. Օշականցին (Ոսկեան Հ. Հ., Մայր Ցուց. Հայ. Ձեռ. Մխիթ. Մատ. ի Վիեննա, Թ. 884. Թղ. 58ա, անտիպ):

[86] Արեւելք, 1890. Թ. 1956., 1963. Բիւզանդիոն, 1897, Թ. 220. 1902. Թ. 2002. 2033. 2065. 2095. Մեղու, 1862, էջ 34. 39. Մուրհանդակ, 1902. Թ. 100. 1901. 680. 684, Սիոն, 1877. էջ 65. հմմտ. եւ վերը:

Դարերու դէմ աննուաճելի կռուով ոգորող ու պայքարող Ս. Կարապետի վանքը այսօր աւերակ է: Հոն բուերը կը հեծեն: «Քարքէ լերան լանջերն ի վեր, այն տեղ, ուր երբեմն բարձրանում էր հոյակապ եւ հռչակաւոր վանք—տաճարը Մշու Սուլթան Ս. Կարապետի, այժմ (մեծ Եղեռնէ յետոյ) սրբատաշ ջարդուած քարերի եւ կիր ու հողի ահագին կոյտեր միմեանց են խառնուել եւ այդ խառնուրդներից գոյացել է բարձր ու հսկայ, անձեւ եւ աննպատակ մի բլուր, որի գագաթին եւ ստորոտներում եւ կողերի վրայ գարնան ծիլ ու ծաղիկ են բուսնում, կարմիր կակաչը Հայոց անմեղ արեան նշանակ...[87]» (Հայրենիք, ամսագիր, 1926, թ. 8, էջ 117):

---

[87] Մեծ Եղեռնի ատեն Ս. Կարապետի միաբաններէն ալ հայրենազուրկ եւ կենսազուրկ եղան (Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը, 1921, էջ 198—199): «Ս. Կարապետ վանքի անտառները եւ հովիտները, հոն ապաստանող ժողովուրդը երկու ամիս կատաղի վագրերու պէս՝ մօտ չթողուցին թշնամին» (Տարօն, Տարեգիրք, Հալէպ, 1949, էջ 96):

## 24. Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՆՔ

*Սասունի վանքերէն: Աւերակ (Գաւազանագիրք, էջ 138):*

## 25. ԿԱՐՄԻՐ ԿԱՄ ԿԱՐՄՐՕ ՎԱՆՔԵՐԸ

*Կարմիր կամ Կարմրօ վանքերէն մէկը կը գտնուի՝ Վարդօ գաւառակին մէջ, Կինտաէմիր գիւղի մերձ. Գլակայ վանքի հիւսիսային կողմը, բայց անկէ հինգ ժամ հեռու, ամայի: Իսկ միւսը՝ կանգնուած էր Մանիկ գիւղի հարաւ–արեւելեան կողմը: Երբեմն ունեցած է բազմաթիւ միաբաններ, բարգաւաճ վիճակ: Աւերակներէն գտնելով օժտուած է գմբէթաւոր տաճարով եւ պարիսպով*[88] (*Մասիս*, 1903, *էջ* 424, *Բիւզանդիոն*, 1900, *Թ.* 1127):

---

[88] *Մշոյ աշխարհի մէջ կան շատ մը աւերակ վանքեր՝ «... Կարմիր վանք Ոսկաւզայ մօտեր... Կարմիր վանք մըն ալ Առնուալիճ գիւղի մօտերը կայ, Քրդերէն աւրուած» (Լումայ*, 1898. *Բ.*, *էջ* 132): — *Մանազկերտի հարաւ–արեւմտեան կողմը մէկ ժամ հեռու կը տեսնուին երեք եկեղեցիներու աւերակները, որոնք ըստ աւանդութեան վանք եղած ըլլալու են (Միրախորեան, Ուղեւորութիւն, Գ.*, *էջ* 54. *Բիւզանդիոն*, 1900, *Թ.* 1127): — *Կարմրօ եկեղեցի մը եւ թերեւս վանք մը կար Մշոյ Ս. Կարապետէն երկու ժամ հեռու (Մասիս*, 1903, *էջ* 424—4259:

## 26. ԿԱՐՄՐԱԿ ՎԱՆՔԸ

*Մուշի Շենքի գիւղի մերձ (Մասիս,* 1903, *էջ* 443)։ *Մանրամասնութիւններ չեն աւանդուած*։

## 27. Ս. ԿԻՐԱԿՈՍԻ ՎԱՆՔԸ

*Մուշի Բերդակ գիւղին արեւելեան կողմը. աւերակ, սիրուած ուխտավայր (Մասիս,* 1903, *էջ* 424)։

## 28. ԿՈՐՎՈՒ Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍԻ ՎԱՆՔԸ

*Կորվու գիւղը ունէր* 12 *ուխտատեղի եւ Ս. Յովհաննէս անուն վանք մը եւ Ս. Յակոբի նուիրուած եկեղեցի մը (Լումայ,* 1900, *Ա., էջ* 211, *Բիւզանդիոն,* 1898, *Թ.* 508, *Արեւելք,* 1901, *Թ.* 4692)։

## 29. ԶՈՐՈՅ ՎԱՆՔԸ

*Գանձատետր մը կը գրուի՝ «Ի Մուշ յամի ՋԾԳ.* (1504) *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի Զորոյ վանաց ի հայրապետութեան տէր Ներսէսի...»։ Գրիչն է Յա–*

կոր (Ակինեան Հ. Ն.՝ Հաւաք. Յիշատ. Ձեռ. Գեղամէն)։ Այսքան է այս վանքին մասին մեր ունեցած ծանօթութիւնը։

## 30. ՄԱՄԿԱՅ ԿԱՄ ՄԱՆԳՈՒՆԻ ՎԱՆՔԸ

Եղրդուտի Ս. Յովհաննէսի վանքէն մէկ ժամ հեռու, բարձր դիրքի վրայ, աւերակ (Մասիս, 1903, էջ 424, Բիւզանդիոն, 1900, Թ. 1158 եւ 1908, Թ. 3533)։

## 31. Ս. ՄԱՏԹԷՈՍԻ ՎԱՆՔԸ

Մուշի Ստուկուտան գիւղի մօտերը, շատոնց աւերակ (Մասիս, 1903, էջ 440)։

## 32. ՄԱՏԻՆ ԱՌԱՔԵԼՈՑ ԿԱՄ ՄԱՏՆԷՎԱՆՔ ԿԱՄ Ս. ՊԵՏՐՈՍ (ԱՌԱՔԵԱԼԻ) ՎԱՆՔԸ

Սասունի Գոմք եւ Մջգեղ գիւղերու մօտ Մարաթուք լերան ստորոտը կոնաձեւ բլուրի մը քարոտ կողքին շինուած է Ս. Պետրոսի վանքը, կոչուած նաեւ Ծկու-թի Ս. Պետրոսի կամ Մատին առաքելոց վանք։ Սիմէոն դպ. Լեհացին կը գրէ՝

«Մին՝ Մատնէվանք, ուր կայ Պետրոս առաքելոյն մատն եւ այլ բազում նշխարք, զոր երբ Սասնցի առնուաէրն ի Հռոմայ եւ շինեաց ի վերայ եկեղեցին եւ կոչեաց Մատնէվանք[89]» (Ուղեւորութիւն, էջ 201)։ Մինչ տարածուած ուրիշ աւանդութեան մը համաձայն Պետրոս առաքեալը Գոմք գիւղի մեղաւոր գիւղապետին երեւնալով իր ճկոյթը կու տայ պատուիրելով Սասունի մէջ վանք մը շինել եւ զայն հոն դնել[90] (Հայկ, 1948, էջ 160—161)։

Տաճարը վաղեմի շէնք մըն է։ Շատ գեղեցիկ, այնպէս որ Քիւրտերէն կոչուած՝ Պուքէ ճէննէթէ (Դրախտի հարս, հմմտ. Հայկ, 1948, էջ 161)։ Կառուցուած Թ. կամ Ժ. դարուն։ Անուանի՝ Ս. Պետրոսի ճկոյթի մասունքով։ Նուիրուած՝ Ս. Աստուածածնի։ Պատմութիւնը կը մնայ մութ (Մասիս, 1903, էջ 423· Տաճար, 1901, էջ 419)։ Ինճիճեան կ'անուանէ՝ «մենաս-

---

89 Սրուանձտեանց կը գրէ՝ «Խոյթայ եւ Մոտկանու վերաբերող վանք մ'ալ ունինք այդ լերանց մէջ՝ Ս. Աղբերիկ կամ Մատին առաքեալ անուամբ» (Համով Հոտով, էջ 115)։ Ինչպէս կանխաւ Սիմ. Լեհացին (հմմտ. վերը) այնպէս եւ Սրուանձտեանց շփոթութեան մէջ են։

90 Հմմտ. «Պատմութիւն յաղագս մատին սրբոյ առաքելոյն Պետրոսի եւ բերմանն ի Հռոմէ ի Հայս» (Յովսէփեան Գար. կաթ., Յիշատակարանք Ձեռագրաց, Ա., էջ 118)։

տան երեւելի» (Նոր Հայաստան, էջ 201—202)։ Անշուշտ այդ արտայայտութիւնն եղած է պատմական տուեալներու վրայ — զորոնք դժբախտաբար չէ աւանդած։

Ս. Ղազարու վանքի առաջնորդը եւ միաբանները նկատի ունենալով Յարութիւն եւ Գրիգոր իշխաններու խնդրանքները Մատին առաքելոյ վանքին թէմ կը յատկացնեն՝ «ի Պչէրի երեքտասան գիւղս նոցա թէմ եւ ի Սասուն երկոտասան գիւղս նոցա թէմ վասն շինութեան սրբոյ Մատին առաքելոց...» (Սարգիսեան, Մայր Ցուց., Բ., էջ 480)։

Սասունի Յարութիւն առաջնորդէն Սիմէոն կաթողիկոսին յարգալիր դիտողութիւն կ'ըլլայ, թէ Կոնոնոսի եւ Աստովմեանց վանքերը Մատին առաքելոց վանքին առաջնորդութեան ենթակայ են եւ նա այժմ Աստովմեանց վանքի ուրոյն առաջնորդ նշանակած է, ինչպէս Ղազար կաթողիկոսն ալ Կոնոնոսի[91] վանքի համար կանխաւ համաձայն կարգադրութիւն ըրած էր եւ կը խնդրուի նախնական կարգն ու վիճակը

---

[91] Երկուքն ալ Աղձնեաց Հզու գաւառակին մէջ (Համառ. անոնց մասին, Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 232. Բիւրակն, 1898, էջ 561—562. Միրախորեան, Նկար. Ուղեւորութիւն, Ա., էջ 73—75 եւն եւն)։ (Անոնց մասին այլուր։)

վերահաստատել (Դիւան, Գ., էջ 26 եւ 65—66)։

Մասին առաքելոյ վանքին վերջին շըրջաններու վանահայրներէն են Պետրոս Վ. Աստուածատուրեան եւ Ստ. Բաղտասարեան (Տաճար, 1911, էջ 419—420· Բիւզանդիոն, 1908, Թ. 3507)։ Ժամանակ մը նոյն իսկ ժառանգական առաջնորդութիւն ունէր (Բիւզանդիոն, 1904, Թ. 2258)։ Հոն նստած են Սասունի առաջնորդները (Ինճիճեան Հ. Ղ., Նոր Հայաստան, էջ 202)։

«Խափիր»ներու տուրք կը վճարէր (Սրուանձտեանց Գ. Վ., Հնոց եւ Նորոց, Կ. Պ. 1874, էջ 157)։

Հարուստ էր Ձեռագիրներով (Հայրենիք, օրաթերթ, 1951, Թ. 12·020)։

«Ունէր աւելի քան 200 թեմական գիւղեր, մշակելի ընդարձակ հողեր, այգիներ, հատաններ եւ խոտհունձեր, զորոնք կը մշակէր եւ հարիւրաւոր ոչխարներ եւ տաւարներ կը պահէր· ունէր նաեւ շարժուն հարստութիւններ, մանաւանդ Վարդան Մամիկոնեանի պողպատէ Վահանը, որ մեծ խնամքով կը պահուէր գանձարանին մէջ իր պատեանով...» (Հասկ, 1948, էջ 161)։ Մինչեւ իսկ Տիգրանակերտի գաւառին մէջ հող, կալուած եւ թէմ ունէր

(*Թորոս Աղբար*, Բ., էջ 230. *Բիւզանդիոն*, 1908, Թ. 3507, հմմտ. եւ վերը)։

*Կարեւոր ուխտավայր էր* (*Հայրենիք*, օրաթերթ, 1951, Թ. 12.019)։

## 33. ՄԱՏՆԱՎԱՆՔ ԿԱՄ ՄԱՏՌԱՎԱՆՔ ԿԱՄ ՄԱՆՐԱՎԱՆՔ

*Մուշ քաղաքին հիւսիսային կողմը*[92] *եւ Ս. Կարապետի վանքին արեւելեան դին ու անկէ հինգ ժամ հեռու փոքր գետի մը ափին Ցխտու գիւղին դիմացը շինուած է Մատնավանքը, կոչուած նաեւ Մատռավանք եւ Մանրավանք։ «Մատնավանք կ՚անուանուի՝ «սակս ճկոյթ մատին Յովհաննու Կարապետին»* (*Ինճիճեան, Նոր Հայաստան*, էջ 193), *Մատռավանք, զի մատուռի չափ պզտիկ է եւ Մանրավանք, վասն զի՝ «Ի վանս յայս ամփոփեաց սուրբ Լուսաւորիչն զմանրարդս ոսկերաց սրբոյն Կարապետին եւ Աթանագինեայ»* (*Սարգիսեան, Տեղագրութիւնք*, էջ 230—231.

---

92 *Գր. Դարանաղցին կը գրէ՝ «Եւ սուրբ Աստուածընկալ գերեզմանքս... կարծեմ թէ որպէս զՄատնավանքն սուրբ Կարապետին ի պաշտին լինելով»* (*Ժամանակագրութիւն*, էջ 517. հմմտ. եւ *Արաքս*, 1890, էջ 28)։ *Հմմտ. Մատին Առաքելոյ վանքը՝ Սիմէոն դպրի խօսքերը*։

Բիւզանդիոն, 1908, Թ. 3533 եւ Թուրխկեան, Եփրատեան Հայաստան, Քղի եւ շրջ. գաւառները, Ա., էջ 116) եւ կամ վառն ղի փոքր է։ Իբրեւ թէ մատնութեան պատճառով անուանուած է նաեւ Մատնավանք[93]։

Տաճարը գմբէթաւոր է եւ քառաչէն (Ինճիճեան, Նոր Հայաստան, 193. Մասիս, 1903, էջ 423 եւ Սուրհանդակ, 1901, Թ. 689)։ Ունի ընդարձակ բակ ու շրջապարիսպ (Արեւելք, 1901, Թ. 4694)։

Գրաւոր եւ բերանացի աւանդութեան համաձայն լուսաւորչաչէն է։ Արծրունեաց իշխանը Ս. Աստուածածին եկեղեցիով զայն կ'օժտէ։ Յետագային «քակլի» (Յովհ. Մամիկոնեան, Պատմ. Տարօնոյ, էջ 12, 54, 56, 62)։

Գրիգոր Մագիստրոս իր թղթերէն մէկուն մէջ կ'ըսէ՝ «Յաստուածատուր յայտնի հաստատութիւն որոյ վկայարա-

---

93 Սասունի կ. Յովհ. եպ. Մամիկոնեանի Տարօնի պատերազմը, Պէյրութ 1949,, էջ 84։

94 Մասիս, 1903. էջ 423. Գաւառականագիրք, էջ 135. Սարգսեան, Տեղագրութիւնք, էջ 228—230. Արեւելք, 1901, Թ. 4694. Սարգսեան Հ. Բ., Ագաթանգեղոս եւ իր բազմադարեան գաղտնիքը, էջ 180 եւ Չամչեան, Պատմ. Հայոց, Ա., էջ 393 եւ Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ 96—98, ուր եւ մատենագրական տեղիքներ։

նին մեծի Կարապետին Յովհաննու եւ Աթանագինի, զոր վանս Մատրանն կոչեն» (Գր. Մագիստրոսի Թղթերը, էջ 222)։ Յովսէփ Վ. Դունեցիի վկայաբանութեան մէկ խմբագրութեան մէջ կայ թէ նա գացած ըլլայ «ի Մատրավանս», մինչ ուրիշ օրինակ մը ունի «ի Մակարավանս» որ աւելի ճիշդ կը թուի (Հայ Նոր Վկաներ, էջ 68)։

Պետրոս Կուրաւցին «զՎարդան վարդապետ քշեց Մատնավանք» (Դիւան, Ժ., էջ 517)։

Վահան Տէր Երէցեան փոխվանահայրը (Վարդան քհ. Վարդանեանէ յետոյ) վանքին խարխլած շէնքերը նորոգելով հոն որբեր կը պահէ (Արեւելք, 1901, Թ. 4690, 4694. Բիւզանդիոն, 1901, Թ. 1461, 1902, Թ. 1852, 1904, Թ. 2258)։ Վանքին մատակարարութիւնը Ս. Կարապետի յանձնուած էր (Արեւելք, 1888, Թ. 1271 — անդ 1888ին վանահայր էր Մկրտ. Վ. Գրիկեան)։

Մուշի Մատնավանքը ունեցած է բաւական շատ կալուածք (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 231 եւ հմմտ. վարը)։ Անոր թէմերն էին Տէրիկ կամ Դերիկ (Ս. Սահակ), Զխաւու, Սուլուխ, Ախճակ,

Արտերթ, Այրճան, Ծեխիւսուփ (Արեւելք, 1901, Թ. 4694· Արարատ, 1896, էջ 423· Արձագանք, 1882, էջ 375· Բիւզանդիոն, 1902, Թ. 1852· Արաքս, 1890, Ա., էջ 28· Սարգիսեան Հ. Բ., Մայր Ցուց., Բ., էջ 480)։ Անուանի էր անոր Լոյսադրիչը (Արեւելք, 1901, Թ. 4694)։

Մուշի Մատնավանքի մասին խօսած ատենս անոր կը կցեմ Ախլաթի կամ Խլաթի Մատնավանքի մասին հետեւեալ կարեւոր տեղեկութիւնները։ Այժմ կը խորհիմ թէ լաւագոյն կ'ըլլար եթէ անոր մասին Բաղէշի վանքերու մասին գրած միջոցիս (Հմմտ. Ոսկեան Հ. Հ., Վասպուրական-Վանի վանքերը, Վիեննա 1947, էջ 895) արտայայտուած ըլլայի (սակայն պէտք եմ շեշտել որ՝ ծրագրի մը հետեւելով այդ եղած է)։

Արդ՝ Խլաթի Մատնավանքը կամ Մատնէվանքը քաղաքէն ժամ մը հեռու է, Խարաշատ գիւղին մերձ «ընդ ախափայս լերանց եւ ձորոց, առ կողիւք միոյ ի լերանց, առ որով ընդ ձորն ընթանայ գետ, կայ մենաստան Մատնէվանք կոչեցեալ[95]. չինեալ

---

95 «Նօտարք»ի մէջ էջ 131 կայ սա ծանօթութիւնը՝ «Մատնավանք անուամբ կրկին են՝ մին ի Տարօն... իսկ միւսն ի Խլաթ յարեւմտեան կուսէ ծովուն Բզնունեաց»։ — Խլաթի

ի խորշս բարձրաբերձ քարաժայռից, իբրեւ զմենաստան Յուսկան որդւոյ ի Բերկրի» (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 272)։

Վանքին կոնդակին համաձայն շինուած է Թադէոս առաքեալէն եւ այն՝ այն տեղը, ուր մատնցոյց եղած։ Այս պատճառով կոչուած Մատնէվանք (Սարգիսեան, Տեղագրութիւնք, էջ 272 եւ Բիւզանդիոն, 1898, Թ. 508)։

Գրիգոր 1402ին «ընդ հովանեաւ ամենամաքուր Ս. Աստուածածնի ի վանս Մատնեվանից մերձ Խլաթայ Բզնունեաց գաւառի» կը գրէ Աւետարան մը (Բանասէր, 1905, էջ 98)։ Աւետարան մը անկէ առաջ (1348ին) կազմել կու տայ «երջանիկ եւ բնարեալ կրօնաւորն Ստեփաննոս հայր եւ առաջնորդ սուրբ ուխտին Մատներոյ վանիցն» (Խաչիկեան Լ., ԺԴ. դարի Հայերէն Ձեռագրների յիշատակարաններ, էջ 372)։

Հաւանօրէն հոս գրուած է 1443ին ճաշոց մը (Առ. Դաւրիժեցի, Պատմ. Հայոց, էջ 418. Հմմտ. եւ Նօտարք, էջ 131)։ Նաեւ հաւանական կը գտնեմ որ Մուշի համանուն վանքին մասին վերոյիշեալ կամ յա-

---

Խարաղէշիր Թաղին մէջ կը տեսնուին անունը անծանօթ վանքի մը հետքերը (Բիւզանդիոն, 1900. Թ. 1103)։

ռաջ բերուած տեղեկութիւններէն ոմանք այս վանքին կը հային եւ հակառակէն:

Ապա՝ «Գրեցաւ սուրբ Աւետարան ի Խլաթ քաղաքի ընդ հովանեաւ Մասնէվանից սուրբ Աստուածածնին, սուրբ Սարգսին եւ սուրբ Գէորգուն ձեռամբ յոգնամեղ եւ անիմաստ գրչի Մկրտչին սուտանուն քահանայիս յամի ՋԺԵ (1466)...: Եւ արդ ես Մկրտիչ եւ կողակիցն իմ Սաղդաթ Խաթունն տուինք զԱւետարանն սուրբ Աստուածածնին ի դուռն, որ կենայ ի ձեռն տէր Կիրակոս Հերպետին եւ տէր Վարդանին եւ տէր Սարգսին եւ Յովսէփին եւ տէր Յոհանին...» (Փօսեան Հ. Յ., Յուց. հայ. Ձեռ. Կարնոյ գիւղերու Թ. 7, անտիպ):

«Ի Խլաթ ի վանս Մասնեվանից Ս. Աստուածածնի ԺԱ. խորանաց» 1490ին Վարդան արքեպ. առաջնորդի օրով Յակոբ գրիչ Տօնական մը կը գրէ ու կը մաղթէ յիշել՝ «զտէր Յոհան վանից հայր եւ զմեծ փիլիսոփայն Խաչատուր» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Հ. Պոտուրեանէ):

Քանի մը տարի յետոյ Կարապետ «ի Խլաթ ի վանս Մասնավանից» Շարակնոց մը կը գրէ (Կարենեանց, Մայր Յուց. Էջմ. Թ. 1549):



Խմբանկար մը Ֆրէզնոյի մշեցիներու 1920ի դաշտահանդիսէն:
Նստողները, ձախէն աջ՝ Եղիշէ Ա. Ք. Տէր–Կարապետեան,
Զօր. Անդրանիկ, Բէփրէյն Հ. Կօնտակարը:

Աւետարան մը 1507ին յիշատակ կը տրուի «ի սուրբ ուխտն Մամնեվանք կոչեցեալ... ի վայելումն քաջ դպրապետին մեր Վարդան եպիսկոպոսին» (Արարատ, 1889, էջ 169—170)։

Թումայ քահանան 1587ին Ղուկասի աւետարանը կը գրէ «ի յայգին Մամնեվանից Աստուածածնին» եւ զայն Մամնավանքի Ս. Պօղոսի եկեղեցւոյն կը նուիրեն Մխիթար, Դաւիթ ու Յովհաննէս (Արարատ, 1910, էջ 626)։

Վարդան Բալուեցին 1688ին կը կազմէ Աւետարան մը, որ «վերստին նորոգեցաւ ի վանս Մամնավանից Ս. Աստուածածնին» (Ծանիկեան, Հնութիւնք Ակնայ, էջ 78)։

Սահմանաց մեկնութեան համար կ՚ըսուի՝ «Սկսեալ եղեւ ի վանս Մեծոփայ եւ աւարտեցաւ ի վանս Մամնավանից, առ ոտս արքեպիսկոպոսի Ստեփանոսի, որ յոյժ սէր եւ հայրութիւն եցոյց մեզ» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Ձեռ. ԺԷ. 1849)։

Սիմէոն կաթողիկոս Խլաթի ժողովրդեան բողոքներին վրայ Մամնավանքի առաջնորդ կը կարգէ Սուքիաս վարդապետը եւ Սիմոն «սեւագլուխ»ը կը յորդորէ

«սուտ» եպիսկոպոսութիւն չընել (Դիւան, Գ., էջ 452, Ը., էջ 286)։

## 34. ՄԱՐԱԹՈՒԿԻ ԿԱՄ ՄԱՐՈՒԹԱՅ ՎԱՆՔԸ

*Համանուն լերան վրայ։ Փոքրիկ մենաստան մը՝ մատուռ մը։ Սիրուած ուխտավայր։ Ամայի (Մասիս*, 1903, *էջ* 441· *Բազմավէպ*, 1934, *էջ* 65· *Տարօն, Տարեգիրք, Հալէպ*, 1949, *էջ* 158—162· *Կ. Սասունի, Սասունցի Դաւիթ, Պէյրութ* 1947, *էջ* 72, 197, 199, 205 *եւն*)։

## 35. Ս. ՄԱՐԻԱՄԻ ՎԱՆՔԸ ԿԱՄ ՏԷՐ ՄԱՅՐԱՄԻ ՎԱՆՔԸ

*Մուշի համանուն գիւղի մերձ, անշան*· (*Մասիս*, 1903, *էջ* 441)։

## 36. Ս. ՄԵՍՐՈՊԻ ՎԱՆՔԸ

*Հ. Սարգիսեանի հետ մեզ ալ ցանկալի էր Տարօնի մէջ — մասնաւորաբար — տեսնել Ս. Մեսրոպի ձօնուած վանք մը կամ վանքեր — այն մեծ Մարդուն, որուն՝*

Հայը իր գոյութեան ամէնէն մեծ ազդակը (գիր ու գրականութիւն) կը պարտի եւ սակայն հնութեան մէջ ո՛րքան ցանցառ յիշուած է անոր անունը:

Հ. Սարգիսեան կը գրէ՝ «Ընդ մենաստանս Մշոյ համարելի էր արդեօք եւ եկեղեցին սրբոյն Մեսրոպայ ի գիւղն Հացիկ ի հիւսիսակողմն Մեղրագետոյ ի մէջ դաշտին, թէպէտ չիք այժմ կանգուն ոչ եկեղեցի եւ ոչ մատուռն մի փոքրիկ, այլ երեւի աւերակ նորա եւ առ նմա քարընկէց մի հեռի այլ տեղի շրջապատեալ ի վարկպարագի քարանց եւ ի միջի կտորք գերեզմանաքարի բացօթեայ ի սպառ եւ պատուեալ ի բնակչաց: Թերեւս մասն մի ի նշխարաց սրբոյն ամփոփեալ իցէ ի տեղւոջն կամ նախ սակէն թաղեալ իբրեւ ի հայրենի գիւղն իւր, յորում ծնեալն էր եւ ապա փոխադրեալ յՕշական գիւղ յԱրագածոտն գաւառ» (Տեղագրութիւնք, էջ 237):

«... Փոքրիկ վկայարան մը միայն մնացեր է յանուն սրբոյն Մեսրոպայ իր հայրենի Հացիկ գիւղին մէջ՝ գիւղէն բաւական բարձր դէպի լեռը, որ թուի թէ ան ալ վանք եղած է» (Լումայ, 1898, Բ., էջ 132):

## 37. Ս. ՅԱԿՈԲԻ ՎԱՆՔԵՐԸ

*Մծբինի այս մեծ հայրապետին յարգանքը Տարօնի մէջ բաւական շատ տարածուած էր: Անոր նուիրուած եւ անուանը կնքուած են քանի մը վանքեր:*

ա. *Ս. Յակոբի վանքը.* — *Մուշի վանքերէն, կոչուած է նմանապէս Տարագի վանք: Այցելուած ուխտատեղի (Մասիս,* 1903, *էջ* 424):

բ. *Ս. Յակոբի վանքը.* — *Մուշի Տօտան գիւղի մերձ (անդ, էջ* 440):

գ. *Ս. Յակոբի վանքը.* — *Խիան գաւառակի Սագգան գիւղի մերձ, Կեփին սարին վրայ (անդ, էջ* 441): *Լաւագոյն է դասել Բաղէշի վանքերու շարքին մէջ:*

## 38. ՅԱՇՏԻՑ ԵՒ Ս. ՍԱՀԱԿԻ ՎԱՆՔԵՐԸ

*Յաշտից վանքը կամ տեղիքը Աշտիշատի մէջ է: Անոր եկեղեցին Հայաստանի անդրանիկ եկեղեցին կը համարուի (Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ* 95—98, *ուր եւ մատենագրական տեղիքներ [Սոփերք, Բ., էջ* 44]. *Հմմտ. Ղ. Փարպեցի, Պատմութիւն, քն. հրտ., էջ* 38):

*Սարգիսեան Յաշտից եւ Ս. Սահակի*

վանքերը կը նոյնացնէ եւ այնպէս կը համարի՝ թէ առաջինին կործանումէն յետոյ, երկրորդը շինուած ըլլայ (Տեղագրութիւնք, էջ 231) եւ անունը առած այն պարագայէն, որ՝ հոն թաղուած է Ս. Սահակ (ինչպէս եւ Ս. Շուշան): Հեռու է Մասնէվանքէն կէս ժամ եւ Ս. Կարապետէն մէկ ժամ, Դերիկի մօտ[96]: Լէնկթիմուր անոր եկեղեցին քանդել կը հրամայէ (Ինճիճեան, Աշխարհագրութիւն, էջ 95—98. Նոր Հայաստան, էջ 195. Բիւզանդիոն, 1900, թ. 1027. Միրախորեան, Նկ. Ուղեւորութիւն, Ա., էջ 31): Ս. Սահակի վանքը աւերակի կոյտ է[97], բայց վկայարանը վերանորոգուած, թէեւ շատ վնասներու ենթարկուած — յետագային (Լումայ, 1898, Բ., էջ 132. Հայրենիք 1896, թ. 1388. Սուրհանդակ, 1901, թ. 689. Արարատ, 1916, էջ 581. Հմմտ. եւ Արեւելք, 1901, թ. 4665—4666, 4690—4694, 1899, թ. 4061. Բիւզանդիոն, 1908, թ. 3533):

---

[96] Տարօնի Ծխաւոր գիւղի մօտ կայ Ս. Սահակայ վանք մը (Միրախորեան, Նկրգր. Ուղեւորութիւն, Ա., էջ 31):

[97] «Ի սոյն ամի քակի եկեղեցին, որ յԱշտից վանին» (Յովհ. Մամիկոնեան, Պատմ. Տարօնոյ, էջ 61):

## 39. ՅՈՎՀԱՆ ՕՁՆԵՑԻԻ ՎԱՆՔԸ

Մանազկերտի Նորաւին գիւղի մօտ, բլուրի վրայ։ Եկեղեցին քանդուած ու կործանուած է, բայց անոր փոխան մատուռ մը բարձրացուած։ — Աւանդութեան համաձայն այս այն վայրն է, ուր 728ին Օձնեցի Հայրապետը ժողով գումարած ըլլայ։ Ունէր լայնածաւալ գերեզմանոց մը, ուր 1204 թուականագիր արձանագրութիւն մը գտնուած է (Մասիս, 1903, էջ 441)։

## 40. Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍԻ ՎԱՆՔԸ

Մանազկերտի Թոնդրակ գիւղին մերձ է Ս. Յովհաննէսի վանքը, որ վաղուց աւերակի վերածուած է (Լուսարարեան, Գաւազանագիրք, էջ 138)։

## 41. Ս. ՆԵՐՍԷՍԻ ՎԱՆՔԵՐԸ

Զոյգ վանքեր, մին՝ Մուշի Թիլ գիւղի արեւելեան կողմը եւ միւսը՝ Մանազկերտ աւանի շրջակայքը։ Անոնց պատմութիւնը խաւարին մէջ թաքուն է (Մասիս, 1903, էջ 424 եւ 441)։

## 42· Ս· ՆԻԿՈՂԱՅՈՍԻ ՎԱՆՔԸ

*Տե՛ս վերը Ապահունեաց վանքը, էջ* 21:

## 43· ՁՈՐԵՀԱՆԳԻՍՏԻ ՎԱՆՔԸ

*Գլակայ Ս· Կարապետի մօտ կազմած: «Եւ սակաւ մի այլ վայր էր վանք մի, այլ Զօրեհանգիստ կոչեն, բայց աւեր է եւ ասեն թէ Ջորիքն որ բարձրեալ էին զսուրբ մարմինն (Յովհ· Մկրտչի) անդ կանգ առին եւ ոչ կարացին շարժել ի տեղւոյն եւ իբրեւ տարակուսեցան եկն հրեշտակ Տեառն եւ ասէ· Աստ հանգեաւ Տէր բնակել սրբոց· զայն տեղն եկեղեցի շինած էր» (Ակինեան Հ· Ն·, Սիմ· դպ· Լեհացւոյ Ուղեգրութիւն, էջ* 200· *Հայրենիք, Ամսագիր*, 1949, *էջ* 88· *հմմտ· Էփրիկեան Հ· Ս·, Բնաշխ· Բառարան, Բ·, էջ* 289—290): *Նոյն աւանդութիւնը Գր· Դարանաղցին կը մերձեցնէ Սեպուհ լերան վանքերէն մէկուն (Ժամանակագրութիւն, էջ* 512—513): *Կը յիշուի Ղազար վարդապետ՝ առաջնորդ Զօրեհանգստի (Նօտարք, էջ* 91—92· *հմմտ· Ոսկեան, Բարձր Հայքի վանքերը, Վիեննա* 1951, *էջ* 49):

### 44. Ս. ՍԱՀԱԿԻ ՎԱՆՔԸ

*Տե՛ս վերը Յաշտից վանքը, էջ 260։*

### 45. Ս. ՍԱՐԳՍԻ ՎԱՆՔԵՐԸ

*Ս. Սարգսի նուիրուած զոյգ վանքերը չինուած են Մանազկերտի Տիւկնիւկ գիւղի շրջակայքը (Մասիս, 1903, էջ 441)։*

### 46. Ս. ՍԻՈՆԻ ՎԱՆՔԸ

*Մուշի Աւզուա գիւղի մերձ, Գրզուսի մօտ, ուխտավայր (Մասիս, 1903, էջ 425)։*

### 47. ՎԱՐԴ ԽԱՉԻ ՎԱՆՔԸ

*Մշոյ դաշտին արեւել–Հարաւային կողմը։ Համանուն գիւղին մերձ։ Երբեմն՝ նիրուած ուխտատեղի եւ ապա՝ լքուած ու ամայացած (Մասիս, 1903, էջ 440)։*

## 48. Ս. ՓՐԿԻՉ ԿԱՄ ՄԻՋՆԱՂԲԻՒՐԻ ՎԱՆՔԸ

Հիմնուած է «Ի լերինն Տաւրոսի, ի սահմանս Սասնոյ» եւ է Զորատանէքեան գերդաստանի վանքը։

Սասնոյ Աւետարանին յիշատակագրութեան մէջ կայ՝ «Այս հրաման ետ սարագրել զսա Արիստակէսի յողնամեղ գրչի ... եւ գրեցաւ աւետարանս ի լերինն Տաւրոսի, ի Սահմանս Սասնոյ, ուխտիս որ կոչի Միջնաղբիւր... ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս. եւ սրբոյ Աստուածածնին, յառաջնորդութեան Տեառն Ստեփանոսի երջանիկ եւ ընտրեալ եպիսկոպոսի...։ Եւ ետ զսուրբ Աւետարանս ի սուրբ Փրկիչն, յորում է գերեզման զաւեր իւրոյ»։ Վերջին խօսքերով կ'ակնարկուի շիրիմը Կատայի, որ չարակալով երկուորեակներու երկուքին կը մեռնի եւ «Այս առեալ զպատուական մարմինն (Կատայի) պատեալ պայծառ հանդերձիւք եդեալ ի տապանի եւ բարձեալ զատուք քահանայից եւ բազմամբոխ ժողովրդովք տարեալ յիւր նեփական վանն, որ կոչի Ս. Փրկիչ, յորում միաբանեալ են կրօնաւորք միաբանակեացք, հրեշտակակրօնք, սուրբք եւ ընտրեալք. փոխեն զնա ի հանգիստ» (Այի–

չան, Հայապատում, Բ., էջ 362—364. Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Բ., էջ 316—317, Յովսէփեան Գ. Կաթ., Յիշատակարանք Ձեռագրաց, Ա., էջ 404 եւ հմմտ. Աղբերկայ վանքը): Սասունի ծաղկած մենաստան մը, որուն մասին դժբախտաբար զուրկ են մեր ծանօթութիւնները: Վերյիշուած աւետարանին գրութենէն (1169—1170) քառասուն տարի վերջ կը յիշուի Յովհաննէս Միջնաղբիւրցի մը (Ալիշան, Հայապատում, Բ., էջ 480):

Սրուանձտեանցի համեմատ այս վանքը նաեւ Երեւման վանք կը կոչուէր (Թորոս Աղբար, Ա., էջ 256. հմմտ. Բ., էջ 317)[95]:

---

95 Տուրուբերանի (Սասունի) Դղակայ, Հոթնի, Կանանոփ (հմմտ. Հայրենիքի, օրաթերթ, 1951, Թ. 12·019), Խարձի (հմմտ. Յովսէփեան Գ., Խաղբակեանք կամ Պռօշեանք, Ա., Վաղարշապատ 1928, էջ 92—93) եւ ուրիշ քանի մը վանքերու մասին այլուր պիտի խօսիմ:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Էջ

# Հ. Հ. ՈՍԿԵԱՆԻ

## ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ԳՈՐԾԵՐԸ

1· *Յովհաննէս վանական եւ իր դպրոցը*· 1922, էջ 129։ (Ազգ. Մատ. ՂԳ։) Ֆր· 1·50
2· *Երգ երգոցի առաջին եւ երկրորդ թարգմանութիւնը*· 1924, էջ 80։ (Ազգ· Մատ. ՃԷ։) Ֆր· 1·—
3· *Մատենագրական քննութիւններ*· 1926. էջ 192։ (Ազգ· Մատ. ՃԺԲ։) Ֆր· 2·—
4· *Եղիա Աստուածատուրեան-Մուշեղեան եւ իր գրական արտադրութիւնները*· 1927, էջ 90։ (Ազգ. Մատ. ՃԺԷ։) Ֆր· 1·—
5· *Վասպուրական-Վանի վանքերը*, Հտ. Ա· 1940. էջ 384։ (Ազգ. Մատ. ՃԽԹ։) Ֆր. 5·—
6· Նոյնը· Հտ· Բ. 1942, էջ 360։ (Ազգ· Մատ. ՃԾԱ։) Ֆր· 5·—
7· Նոյնը· Հտ· Գ· 1948, էջ 394։ (Ազգ· Մատ. ՃԾԵ։) Ֆր· 7·—
8· *Սարդիկէի ժողովի հայերէն կանոնները*· 1945, էջ 70 + 132։ (Ազգ· Մատ. ՃԾԳ։) Ֆր· 4·—
9· *Սեբաստիայի վանքերը*, Ա· Մաս, *Սեբաստիոյ քաղաքի վանքերը*· 1946, էջ 90։ (Ազգ· Մատ. ՃԾԴ։) Ֆր· 2·—
10· *Բարձր Հայքի վանքերը*· 1951, էջ 242։ (Ազգ. Մատ. ՃԿԷ։) Ֆր· 4·—
11· *Գնունեաց եւ Ռշտունեաց նախարարութիւնները*· 1952, էջ 164։ (Ազգ· Մատ. ՃՀԱ։) Ֆր· 3·—
12· *Կարին եւ Կարնեցին եւ Կարնոյ վանքերը*· 1950, էջ 56։ Ֆր· 1·—
13· *Տարօն-Տուրուբերանի վանքերը*· 1953, էջ 272։ (Ազգ· Մատ. ՃՀԴ։) Ֆր· 5·—
14· *Արցախի վանքերը* (*ընդ մամլով*)

Ստանալու համար դիմել՝

**LIBRAIRIE DES P. P. MECHITHARISTES**

VIENNE VII/62, MECHITARISTENGASSE 4 (AUTRICHE)

